### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 — ՀՈԿՏԵՄԲԵՐ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание






**Ս.Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՎԵՐԵԼՔԸ

Մոսկվայում կայացած (հունիս 1969 թ.) կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունն ընդհանրացրեց արդիականության արմատական պրոբլեմները, նոր ավանդ մտցրեց մարքս-լենինյան հեղափոխական ուսմունքի մեջ։ Խորհրդակցության փաստաթղթերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի ելույթում տրված է ժամանակակից աշխարհի սոցիալ-քաղաքական նկարագիրը, բացահայտված է արդի իմպերիալիզմի էությունը։ Դրանցում իմպերիալիզմը պարզորոշ բնութագրվում է որպես այնպիսի հասարակական սիստեմ, որը «եղել է և մնում է գլխավոր խոչընդոտը դեպի ազատության, խաղաղության և դեմոկրատիայի հաղթանակը մարդկության պատմականորեն անխուսափելի առաջընթացի ճանապարհին» («Սովետական Հայաստան», 8 հունիսի, 1969 թ.)։ Միաժամանակ ցույց է տրված, որ մեր օրերում կոմունիստական շարժումը, միջազգային բանվոր դասակարգը, հակաիմպերիալիստական բոլոր ուժերը կոչված են խափանելու համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքը։

Այսօր աշխարհի 90 երկրներում գործում են կոմունիստական ու բանվորական կուսակցություններ, որոնց շարքերում միավորված են 50 միլիոն կոմունիստներ։ Համաշխարհային կոմունիստական շարժումը դարձել է մեր դարաշրջանի վճռական գործոնը։ Այժմ աշխարհի բնակչության մեկ երրորդը կառուցում է սոցիալիզմ ու կոմունիզմ։ Միայն տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող սոցիալիստական երկրները վերջին տասը տարում իրենց ազգային եկամուտն ավելացրել են 93 տոկոսով և ներկայումս արտադրում են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտավորապես մեկ երրորդը։

Սոցիալիզմի երկրների հաջողությունները խոշոր ազդեցություն են գործում համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա, ցուցադրում սոցիալիզմի անվիճելի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։

Արդի պայմաններում, չհանդգնելով ճակատ առ ճակատ դուեմարտելու

սոցիալիզմի հիմնական ուժերի հետ, իմպերիալիզմը փորձում է սոցիալիստական համագործակցության միասնությունը խարխլել ներսից։

Միջազգային իմպերիալիզմը նման խնդիրներ էր հետամտում սոցիալիստական Չեխոսլովակիայի նկատմամբ։ Այդպիսի ստրատեգիայով իմպերիալիստական ուժերը հույս ունեին ճեղք առաջացնել սոցիալիստական համագործակցության մեջ, փոխել ուժերի հարաբերակցությունը Եվրոպայում և ամբողջ աշխարհում։ Իմպերիալիզմի, հակահեղափոխական ուժերի պլանավորած դավադրության նպատակն էր Չեխոսլովակիան շեղել սոցիալիստական ուղուց, այնտեղ վերականգնել բուրժուական կարգեր, երկիրը անջատել սոցիալիստական համագործակցությունից։ Սակայն հակահեղափոխության և միջազգային իմպերիալիզմի ագրեսիվ պլանները ձախողվեցին։ Վարշավայի պակտի անդամ-երկրները օգնության ձեռք մեկնեցին չեխոսլովակյան ժողովրդին, կանխեցին սպառնացող վտանգը, պաշտպանեցին դաշնակից երկրի սոցիալիստական նվաճումները։

Համաշխարհային հեղափոխական պրոցեսի կարևոր օղակներից է դասակարգային պայքարը կապիտալի երկրներում։ Այստեղ աշխատավորների շահագործման ինտենսիֆիկացումը զուգակցվում է դասակարգային պայքարի անընդհատ սրմամբ։ Պետության աջակցությամբ խոշոր կապիտալն իր ձեռքում է կենտրոնացնում արտադրության հիմնական մասը, տեղի է ունենում կապիտալի համակենտրոնացում. ստեղծվում են միջազգային հսկա կորպորացիաներ ու մոնոպոլիաների միություններ, որոնք ավելի ինտենսիվ են դարձնում միլիոնավոր աշխատավորների շահագործումը։ ԱՄՆ-ում գործող մի շարք կոմպանիաներ, որոնք կազմում են արդյունաբերական ֆիրմաների մեկ տոկոսը, թողարկում են ամերիկյան ինդուստրիայի ամբողջ արտադրանքի 70—80 տոկոսը։ Արևմտյան Գերմանիայի 1.350 ֆիրմա վերահսկում է երկրի ամբողջ կապիտալի երկու երրորդի վրա։ ԳՖՀ-ում հաշվվում է 1.500 միլիոնատեր, որոնց ունեցվածքը գնահատվում է 50 միլիարդ մարկ։ Ինչպես հայտնի է, Ճապոնիան արդյունաբերական զարգացման մեծ քայլեր է կատարում։ 1968 թ. արտադրության ծավալով կապիտալիստական աշխարհում նա գրավեց երկրորդ տեղը։ Սակայն բնակչության մեկ շնչին ընկնող եկամտի չափերով աշխարհում հազիվ մնաց քսաներորդ տեղում։ Պաշտոնական տվյալներով Իտալիայում ապրող 3.600 հազար ընտանիք ստանում է այնքան եկամուտ, որը չի բավարարում նույնիսկ տարրական կարիքները։

Կապիտալիզմի պայմաններում տեխնիկական առաջընթացը, արտադրության ավտոմատացումը նպաստում են բանվորական ուժի կրճատմանը։ 1968 թ. կապիտալիստական երկրների գործազուրկների ամսական միջին թիվը կազմում էր 11 միլիոն 154 հազար հոգի, այդ թվում ԱՄՆ-ում՝ 2 միլիոն 922 հազար, Իտալիայում՝ 726, Ճապոնիայում՝ 587, ԳՖՀ-ում՝ 450, Կանադայում՝ 439, Ֆրանսիայում՝ 256, Բելգիայում՝ 112 հազար։ Կապիտալի աշխարհում բանվոր դասակարգի դրության անընդհատ վատթարացումը բնականորեն հանգեցնում է նրա տնտեսական, քաղաքական ու գաղափարական պայքարի ուժեղացմանը։ Գործադուլային շարժման մեջ մշտապես ավելանում է քաղաքական գործադուլների տեսակարար կշիռը։ Եթե 1968 թ. տեղի ունեցած քաղաքական գործադուլներին մասնակցել է բոլոր գործադուլավորների 46 տոկոսը, ապա 1960—1966 թթ.՝ 72 տոկոսը։ Միայն զարգացած կապիտալիստական երկրներում գործադուլային պայքարին 1960—1968 թթ. մասնակցել է ավելի քան 300 մլն մարդ։



Գործադուլային շարժումը ցնցել է կապիտալիզմի միջնաբերդը՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները։ Եթե 1920—1939 թթ. ԱՄՆ-ում տեղի ունեցած 35.500 գործադուլին մասնակցել է 15 միլիոն 400 հազար մարդ, ապա 1947—1966 թթ. ընթացքում տեղի է ունեցել 78.700 գործադուլ, իսկ գործադուլավորների թիվը կազմել է 39 միլիոն 250 հազար։ Ներկայումս ամբողջ կապիտալիստական աշխարհի գործադուլային մարտերի 21 տոկոսը բաժին է ընկնում ԱՄՆ-ին։ Սկսած 1959 թվականից ԱՄՆ-ում տարեկան, միջին հաշվով, տեղի է ունենում չորս հազար գործադուլ, որին մասնակցում է մոտ 2 միլիոն աշխատավոր։ Վերջին տարիներին ԱՄՆ-ում տեղի ունեցած գործադուլի միջին տևողությունը 22 օր է։

1968 թ. ԱՄՆ-ում տեղի է ունեցել 4.950 գործադուլ, որի մասնակիցների թիվը ամենամեծն է եղել վերջին 15 տարվա ընթացքում։ ԱՄՆ-ում գործադուլային շարժմանը մասնակցում է ո՛չ միայն բանվոր դասակարգը, այլև մտավորականությունը։ 1969 թ. մարտի 4-ին ԱՄՆ-ում տեղի ունեցավ գիտնականների համազգային գործադուլ։ Երկրի ավելի քան 30 համալսարանի և ինստիտուտի հազարավոր գիտնականներ ու ասպիրանտներ միտինգներում, բանավեճերում առաջ էին քաշում զինաթափման, գիտահետազոտական աշխատանքները խաղաղ նպատակների համար ծառայեցնելու բազմաթիվ պրոբլեմներ։

Գործադուլային հզոր շարժում է ծավալվում Ֆրանսիայում։ Այնտեղ 1968 թ. գարնանը համազգային հզոր գործադուլ տեղի ունեցավ։ Բանվոր դասակարգի այդ ցնցող ելույթին նախորդեցին ուսանողական հուզումները։ Համաֆրանսիական գործադուլի նպատակները գլխավորապես կրում էին տնտեսական բնույթ։ Խնդիր էր դրվում ավելացնել աշխատավարձը, կրճատել բանվորական օրը, երաշխիքներ սահմանել գործազրկության դեմ, ապահովել արհմիությունների իրավունքների իրականացումը ձեռնարկություններում և այլն։ Այդ ամենի հետ միաժամանակ ֆրանսիական բանվոր դասակարգի պայքարը բովանդակում էր քաղաքական վերափոխումներ իրագործելու խնդիրներ։ Պետք է ասել, որ Ֆրանսիայի պրոլետարիատի անցյալ տարվա գարնանային պայքարը տվեց իր պտուղները։ Աշխատավարձը միջին հաշվով բարձրացավ 14 տոկոսով, բանվորական շաբաթը կրճատվեց երկու—երեք ժամով, ձեռք առնվեցին կոնկրետ միջոցներ աշխատանքային զբաղվածության ուղղությամբ, մեկ շաբաթով ավելացավ վարձատրվող արձակուրդը, նոր իրավունքներ նվաճվեցին կանանց ու երիտասարդության համար, երաշխավորվեց արհմիությունների իրավունքների իրականացումը ձեռնարկություններում։

Ֆրանսիայի աշխատավորների դասակարգային պայքարում ձեռք բերված նվաճումներից են 1969 թ. ապրիլի ռեֆերենդումի արդյունքները։ Դրանք ցույց տվեցին, որ Ֆրանսիայի աշխատավորական մասսաները վճռականորեն մերժում են անձի իշխանությունը, պաշտպանում երկրի հասարակական-քաղաքական կյանքի վերափոխման, հեղափոխության գործը։ Ընթացիկ տարվա փետրվարի 12-ին Ֆրանսիայում տեղի ունեցավ 24-ժամյա համազգային գործադուլ, որը 1968 թ. մայիս-հունիսյան իրադարձությունների շարունակությունն էր։ Այդ գործադուլի ժամանակ աշխատավորները պայքարում էին այն պահանջների համար, որոնք չէին լուծվել նախորդ տարվա գործադուլների ժամանակ։ Չանցավ երկար ժամանակ և մարտի 11-ին Ֆրանսիայի արհմիությունների բոլոր միավորումները միասնական ճակատով համազգային

ընդհանուր գործադուլ կազմակերպեցին, որի նպատակն էր պաշտպանել 1968 թ. աշխատավորների ձեռք բերած նվաճումները։ Բնորոշ է, որ մարտյան դասակարգային մարտերին մասնակցում էին մետաղագործներ, շինարարարներ, տրանսպորտայիններ, երկաթուղայիններ, քիմիկներ, էլեկտրիկներ, նավահանգստային բանվորներ, ավիացիայի, կապի բնագավառների աշխատողներ, մասնավոր ֆիրմաներ, պետական հիմնարկությունների, բանկերի, խանութների ծառայողներ, ժուռնալիստներ, ռադիոյի և հեռուստատեսության աշխատողներ և ուրիշներ։

Գործադուլային շարժումը լայն ծավալ է ընդունել նաև Արևմտյան Եվրոպայի մյուս երկրներում։ 1968 թ. նոյեմբերին Իտալիայում գործադուլ արեց 12, իսկ 1969 թ. փետրվարին 18 միլիոն մարդ։ Այդ ընդհանուր ազգային գործադուլները ստիպեցին մինիստրների խորհրդին, որպեսզի սոցիալական ապահովության ռեֆորմի մասին օրինագիծ ընդունվի։ Դասակարգային այդ սուր ճակատամարտերը ձեռնարկատերերին ստիպեցին բավարարել աշխատանքի վարձատրության զոնալ տարբերությունները վերացնելու պահանջը։ Ընթացիկ տարվա փետրվարյան համազգային գործադուլը Իտալիայի պատմության վերջին 25 տարվա ընթացքում խոշորագույն գործադուլն էր։ Գործադուլավորների պահանջներն արտահայտվում էին հետևյալ լոզունգների մեջ. «Սովի կենսաթոշակներին՝ ոչ», «Անհապաղ ռեֆորմ անցկացնել կենսաթոշակների ապահովման գործում», «Կենսաթոշակներ կենդանի մարդկանց և ոչ մեռածներին»։ Արհմիությունները պահանջում էին սահմանել կենսաթոշակի ամսական մինիմում՝ 25 հազար լիրայի սահմաններում և իջեցնել թոշակավորման տարիքը։ Բացի դրանից, գործադուլավորները պահանջում էին վերացնել երկրի տարբեր շրջաններում միևնույն աշխատանքի համար աշխատավարձի չափերի միջև գոյություն ունեցող տարբերությունը, կոնկրետ միջոցներ ձեռք առնել գործազրկության դեմ, անցկացնել դպրոցական դեմոկրատական ռեֆորմ, բարելավել գյուղատնտեսական բանվորների և աշխատավոր գյուղացիության դրությունը։

1969 թ. մարտին Անգլիայում «Ֆորդի» գործարանների 40 հազար բանվոր ու ծառայող գործադուլ արեց։ Դրա շնորհիվ նրանց աշխատավարձը ավելացավ 7—10 տոկոսով։

Դասակարգային պայքարը նոր թափ է ստացել Ճապոնիայում։ Այնտեղ տեղի ունեցող տարեկան «գարնանային» և «աշնանային» աշխատավորական ելույթներին մասնակցում է 10—11 միլիոն մարդ։ 1968 թ. աշնանը երկրում ծավալվեց ամերիկա-ճապոնական «անվտանգության պայմանագրի» վերաստորագրման դեմ շարժումը։ Մասսայական-քաղաքական ցույցերը սկիզբ դրեցին ամերիկա-ճապոնական «անվտանգության պայմանագրի» դեմ 35 միլիոն ստորագրություն հավաքելու կամպանիային։

1969 թ. մայիսին Ավստրալիայում մոտ մեկ միլիոն մարդ, այսինքն՝ երկրի բոլոր արդյունաբերական բանվորների կեսը, գործադուլ արեց։ Գործադուլավորները պահանջում էին վերացնել հակաարհմիութենական օրենսդրությունը, որը քսան տարի շարունակ կաշկանդում է աշխատավորների իրավունքները դասակարգային պայքարում։ Արդի պայմաններում աճում ու ամրապնդվում է արհմիութենական համաշխարհային շարժումը։ Հայտնի է, որ ամբողջ աշխարհում վարձու աշխատանքով զբաղված մարդկանց թիվը կազմում է 540 միլիոն, որից 43 տոկոսը, այսինքն՝ 231 միլիոնը, արհմիության անդամ են։ Սոցիալիստական երկրներում հաշվվում է արհմիությունների 134,



իմպերիալիստական երկրներում՝ 65, զարգացող երկրներում՝ 31 միլիոն անդամ։

Համաշխարհային արհմիութենական շարժման մեջ գոյություն ունի երեք հիմնական հոսանք։ Այն արհմիությունները, որոնք հետևողականորեն կանգնած են դասակարգային պայքարի դիրքերում, որտեղ ակտիվ դեր են խաղում կոմունիստները, միավորված են Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի մեջ։ Ռեֆորմիստական արհմիությունները, որոնք սերտորեն կապված են սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների հետ, միավորված են Ազատ արհմիությունների միջազգային կոնֆեդերացիայի մեջ։ Քրիստոնեական թեքում ունեցող արհմիությունները, որոնք միավորված էին Քրիստոնեական արհմիությունների միջազգային կոնֆեդերացիայում, 1968 թ. իրենց վերանվանեցին Աշխատանքի համաշխարհային կոնֆեդերացիա։ Բացի այս երեք հիմնական հոսանքներից, մի շարք երկրներում գործում են, այսպես կոչված՝ ինքնավար կամ անկախ արհմիություններ, որոնք չեն միավորվում միջազգային կազմակերպությունների մեջ։

Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայում ընդգրկված է 138 միլիոն 500 հազար մարդ։ Ազատ արհմիությունների միջազգային կոնֆեդերացիայում՝ 63, Աշխատանքի համաշխարհային կոնֆեդերացիայում՝ 12 միլիոն 200 հազար մարդ։ Աշխարհում գործող առաջադիմական արհմիությունները կարևոր դեր են խաղում բանվորական շարժման առջև կանգնած խնդիրները լուծելու գործում։

Վերլուծելով կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և նրա դաշնակիցների՝ գյուղացիության, մտավորականության և երիտասարդության պայքարը, Լ. Ի. Բրեժնևը մոսկովյան միջազգային խորհրդակցությունում ունեցած ելույթում ընդգծեց, որ ներկայումս բարենպաստ պայմաններ կան դեմոկրատական բոլոր շարժումները միավորելու այնպիսի քաղաքական դաշինքի մեջ, որն ընդունակ լինի ճանապարհ հարթելու դեպի սոցիալիզմ։

Ներկայումս համաշխարհային հակաիմպերիալիստական ճակատի կարևոր և ակտիվ գործոններից է Ասիայի և Աֆրիկայի երկրներում ազգային ու սոցիալական ազատագրության շարժումը։ Միայն վերջին տասնամյակում 44 նախկին գաղութներ անկախություն նվաճեցին։ Այժմ գաղութային ստրկության լծի տակ է գտնվում 35 միլիոն մարդ։ Իմպերիալիզմի լուրջ պարտության և հեղափոխական ուժերի կարևոր նվաճում պետք է համարել Ասիայի և Աֆրիկայի մի շարք երիտասարդ պետությունների սոցիալիստական կողմնորոշումը։ Զարգացման ոչ կապիտալիստական ուղին բռնած պետությունները խոշոր ավանդ են ներդնում հակաիմպերիալիստական պայքարի գործում։

Լենինը նշել է. «...սոցիալիստական հեղափոխությունը միայն և գլխավորապես հեղափոխական պրոլետարների պայքարը չի լինի ամեն մի երկրում իր բուրժուազիայի դեմ,— ոչ, նա իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների և երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարը կլինի միջազգային իմպերիալիզմի դեմ» (Երկեր, հ. 30, էջ 185)։ Ազգային-ազատագրական հեղափոխությունների հակաիմպերիալիստական ուղղությունը մերձեցնում է նրանց ո՛չ միայն սոցիալիզմի համաշխարհային սիստեմին, այլև կապիտալիստական երկրների պրոլետարիատի հեղափոխական պայքարին։

Ազգային-ազատագրական պայքարը խորապես դեմոկրատական է, ընդգրկելով աշխատավոր ժողովրդի գրեթե բոլոր խավերը։ Այն հնարավորություն է տալիս բանվոր դասակարգին, գյուղացիությանը և հեղափոխական ինտելիգենցիային առաջ քաշել և լուծել ինչպես ազգային, այնպես և սոցիալական ազատագրության մի շարք պրոբլեմներ։

Համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման համար կարևոր նշանակություն ունի միասնության հարցը։ Այն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, դասակարգային համերաշխության բնորոշ հատկանիշն է, որը նոր բովանդակություն ստացավ պետությունների սոցիալիստական համագործակցության սիստեմում։ Այստեղ զգալիորեն լայնացավ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների գործողության ոլորտը, ընդգրկելով ո՛չ միայն միջկուսակցական (եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջև), այլև սոցիալիստական երկրների միջպետական հարաբերությունները։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո աշխատավորների միջազգային համերաշխության խնդիրը մեր ժամանակի արմատական հարցերից է։ Այն կոմունիստական ու բանվորական կուսակցությունների պայքարի նշանաբանն է։

Ավելի քան 90 տարի առաջ, բանվորների միջազգային ընկերության հիմնադիր Մանիֆեստում Մարքսը նշել է. «Անցյալի փորձը ցույց տվեց, որ արհամարհական վերաբերմունքը դեպի եղբայրական այն դաշինքը, որ պիտի գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանել միմյանց, պատժում է նրանց ցաքուցրիվ ճիգերի ընդհանուր պարտությամբ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950 թ., էջ 456)։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը աշխարհի բոլոր աշխատավորների դրոշն է խաղաղության համար մղվող պայքարում։ Ներկայումս առավել ևս խաղաղության ապահովման համար անհրաժեշտ է բոլոր խաղաղասեր ուժերի համախմբում, նրանց կազմակերպվածության ու ակտիվության բարձրացում։ Այժմ ավելի քան երբեք, խաղաղության պաշտպանության գործը հրամայաբար պահանջում է միավորել աշխատավորների ջանքերը և հանդես գալ միասնական ճակատով։

Կապիտալի դեմ մղվող անզիջում պայքարում յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն չպետք է թույլ տա ֆրակցիոնականություն ոչ միայն իր շարքերում, այլև միջազգային կոմունիստական շարժման մեջ։ Այս նշանաբանով ընթացավ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մոսկովյան խորհրդակցությունը։ Կոմունիստական այդ մեծ ֆորումը ղեկավարվեց Լենինի այն ցուցումով, որ «Քննարկել հարցը, արտահայտել և լսել զանազան կարծիքներ, իմանալ կազմակերպված մարքսիստների մեծամասնության տեսակետը, այդ տեսակետն արտահայտել հնուակա որոշմամբ, բարեխիղճ կատարել այդ որոշումը— ահա թե ինչն է միասնություն կոչվում աշխարհում ամենուրեք՝ բանականության տեր մարդկանց մոտ։ Եվ այդպիսի միասնությունն է, որ անսահման թանկ, անսահման կարևոր է բանվոր դասակարգի համար։ Անջատ բանվորները ոչինչ են։ Միավորված բանվորները ամեն ինչ» (Երկեր, հ. 19, էջ 648—649)։

Գաղտնիք չէ, որ ներկայումս կոմունիստական շարժման մեջ գոյություն ունեն տարաձայնություններ, ռևիզիոնիստական հոսանքներ, որոնք տուրք են



տալիս օպորտունիզմի տարբեր ուղղություններին, հաշտվողական դիրք բռնում բուրժուական գաղափարախոսության հանդեպ։

Այսպես կոչված ձախերը քողարկվում են ուլտրահեղափոխական ֆրազներով, մասսաներին մղում ավանտյուրիստական գործողությունների, իսկ կուսակցությանը՝ դեպի աղանդավորության ուղին։ Հասկանալի է, որ ինչ չափով էլ տարբերվեն միմյանցից աջ կամ ձախ հոսանքները, դրանք միայն վնաս են հասցնում մարքսիզմ-լենինիզմին, միջազգային կոմունիստական շարժմանը։ Թե կոմունիստների ընդհանուր գործին ինչպիսի վտանգ է «ձախ» ռևիզիոնիզմը, բացահայտ ցույց է տալիս չինական ղեկավարության դիրքավորումը։

Չինաստանի կոմունիստական կուսակցության IX համագումարը մեկ անգամ ևս ցույց տվեց, որ Մաո Ցզե-դունի խումբը կապերը խզել է մարքսիզմ-լենինիզմից և իրեն բացահայտորեն հակադրել սոցիալիստական համագործակցությանը, համաշխարհային կոմունիստական շարժմանը։ Այդ շովինիստական, պառակտիչ կուրսը լուրջ վնաս է հասցնում սոցիալիզմի, բոլոր հեղափոխական, հակաիմպերիալիստական ուժերի միասնության գործին։

Չինաստանի կոմկուսի IX համագումարի ընդունած նոր կանոնադրության մեջ Մաո Ցզե-դունի գաղափարները հռչակված են որպես արդի դարաշրջանի մարքսիզմ-լենինիզմ։ Չինական պրոպագանդան ձգտում է «Մաո Ցզե-դունի գաղափարների դրոշը բարձրացնել ամբողջ երկրագնդի վրա»։

Չինական ղեկավարները «ռևիզիոնիզմի» մեջ են մեղադրում այն բոլոր կուսակցություններին, որոնք հերքում են մաոիզմը։ Բացի դրանից, չինական պառակտիչները գրեթե 30 երկրներում քայքայիչ խմբեր են կազմակերպել, որոնց նպատակն է՝ փոխարինել այնտեղ գործող կոմունիստական կուսակցություններին։

Պեկինի ղեկավարների նկրտումների մեջ կարևոր տեղ են գրավում Սովետական Միության նկատմամբ տերիտորիալ անհիմն հավակնությունները և ագրեսիվ տրամադրությունները։ «Սոված մնալ և պատրաստվել պատերազմի», «նախապատրաստվել սովետական ռևիզիոնիզմի դեմ մղելու ինչպես սովորական, այնպես էլ մեծ միջուկային պատերազմ»։ Պեկինի տաք գլուխները այդպես են կողմնորոշում չինական ժողովրդին։ Դրանով նրանք չեն բավարարվում։ Ահաբեկումներով ու շանտաժով հանդես գալով սոցիալիստական պետությունների դեմ, նրանք սիրախաղում են կապիտալիստական տերությունների, այդ թվում ԳՖՀ-ի հետ։

Կոմունիստական կուսակցությունները գործում են խիստ տարբեր պայմաններում, նրանց պայքարն ունի պատմական բազմազան ավանդույթներ, որոշ հարցերում տարբեր խնդիրներ ու մերձավոր նպատակներ։ Եվ դա բնական է. այն պայմանավորված է իրադրության առանձնահատկություններով, երկրների հասարակական-տնտեսական զարգացման մակարդակների տարբերությամբ։ Չանտեսելով այս բոլորը, գերակշռողը կոմունիստական կուսակցությունների ընդհանուր շահերն են, համատեղ պայքարը՝ միջազգային իմպերիալիզմի դեմ։

Խոսելով տարաձայնությունների հաղթահարման ուղիների մասին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը իր ելույթում նշեց. չի կարելի հարցն այնպես դնել, թե սկզբում պետք է լուծել բոլոր տարաձայնությունները, իսկ հետո համաձայնության գալ համատեղ գործողությունների շուրջը։ Անհրաժեշտ է լուծել այն գործնական խնդիրները, որոնք կապված են միասնական գործողությունների ապա-

հովման հետ և դրանից հետո, համատեղ պայքարի ընթացքում պարզ կլինի թե որ հայացքներն են համապատասխանում կոմունիստական շարժման ընդհանուր շահերին։

Այն տարաձայնությունները, որոնք գոյություն ունեն համաշխարհային կոմունիստական շարժման մեջ, անշուշտ, կհաղթահարվեն և այդ բանի համար անհրաժեշտ ուղիներ կան։ «Տարաձայնությունները քաղաքական կուսակցությունների ներսում և քաղաքական կուսակցությունների միջև սովորաբար լուծվում են ո՛չ միայն սկզբունքային բանավեճով, այլ նաև բուն քաղաքական կյանքի զարգացմամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 9, էջ 175)։

Ներկայումս իմպերիալիզմը կոորդինացնելով իր միջազգային գործողությունները, ջանքեր չի խնայում միմյանց հակադրելու սոցիալիստական երկրները, կոմունիստական կուսակցությունները, բոլոր հեղափոխական ուժերը։ Սոցիալիզմի թշնամիները ձգնում են օգտագործել այն բարդությունները ու դժվարությունները, որոնք գոյություն ունեն սոցիալիստական երկրներում։ Իմպերիալիզմի մեքենայությունների դեմ պայքարի գործում կոմունիստական կուսակցությունները ղեկավարվում են Լենինի այն հայտնի ցուցումով, որ «Կապիտալը միջազգային ուժ է։ Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն» (Երկեր, հ. 30, էջ 367)։

Ներկայումս ավելի, քան երբեք, ինտերնացիոնալիզմը ամեն մի կոմունիստական կուսակցության գործունեության կարևորագույն չափանիշն է, որի սկզբունքներից նահանջելը հանգեցնում է բանվոր դասակարգի, սոցիալիզմի ու կոմունիզմի գործի թուլացմանը։

ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունները ջանք չեն խնայում հաղթահարելու գոյություն ունեցող տարաձայնությունները, ամրապնդելու համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունը։ Այդ վեհ գործի իրականացման համար առկա են բոլոր երաշխիքներն ու գործոնները։ «...Ինչքան էլ ծանր լինեն այն փորձությունները,— գրել է Լենինը,— որ դեռ կարող են մեր վրա թափվել, ինչքան էլ մեծ լինեն այն աղետները, որ դեռ կարող է բերել մեզ միջազգային իմպերիալիզմի շունչը փչող գազանը,— այդ գազանը կկործանվի և սոցիալիզմը կհաղթանակի ամբողջ աշխարհում» (Երկեր, հ. 29, էջ 268)։

Մոսկովյան խորհրդակցությունը մեկ անգամ ևս ցույց տվեց, որ համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժումն ընթանում է անշեղ վերելքի ուղիով, այն արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժն է։

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՖՈՐՊՈՍՏԸ ԵՎՐՈՊԱՅԻ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ



Շուրջ քառորդ դար առաջ ջախջախվեց հիտլերյան Գերմանիան, ֆաշիզմից ազատագրվեց գերմանական ժողովուրդը։

Դա բոլոր գերմանացիներին հնարավորություն ընձեռեց խոր կշռադատելու և անհրաժեշտ դասեր քաղելու պատերազմի արդյունքներից և մեկընդմիշտ վերջ դնելու սեփական մոնոպոլիաների և խոշոր հողատերերի կողմից նրանց տասնամյակներ շարունակ պարտադրած ուժի և կողոպուտի, շովինիզմի ու ֆաշիզմի քաղաքականությանը, սկսելու նոր կյանք։ Պատերազմից հետո հենց այդպես վարվեցին Արևելյան Գերմանիայի հայրենասերները, որոնք այրելով բոլոր կամուրջները գերմանական իմպերիալիզմի հետ, հաստատուն կանգնեցին խաղաղության և առաջադիմության ուղու վրա։ 1949 թ. հոկտեմբերի 7-ին կազմավորվեց Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, որը շրջադարձային կետ հանդիսացավ գերմանական ազգի և ամբողջ Եվրոպայի տարեգրության մեջ։

Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունն իր մեջ մարմնավորում է գերմանական ազգի խիղճն ու պատիվը, նրա բանվոր դասակարգի անցյալի հեղափոխական փառավոր ավանդույթները, ստեղծագործական աշխատանքը, կազմակերպվածությունն ու տաղանդը։ «Գերմանական հրաշքը» խորհելու շատ առիթներ է տվել, ճշգրտումներ մտցրել իմ պատկերացումների ու գնահատումների մեջ։

Եվ ահա գերմանական սոցիալիստական առաջին պետության հիմնադրման 20-ամյակի նախօրեին, 1969 թ. գարնանը սովետական մի խումբ լրագրողների պատվիրակության կազմում այցելեցի ԳԴՀ։ Մենք եղանք հանրապետության քաղաքներում ու գյուղերում, գործարաններում ու գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներում, ծանոթացանք տնտեսության ու մշակույթի նվաճումներին, մոտիկից շփվեցինք նոր հոգեբանություն, նոր աշխարհայացք ունեցող մարդկանց հետ։

## ՄԱՐԴԻԿ ՇՏԿԵՑԻՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Մեր պատվիրակությունն այցելեց Պոտսդամ, եղավ Ցիցիլենհոֆ դղյակ-պալատում, «Գերմանական կայսրության» ժառանգական վերջին իշխանի՝ Վիլհելմ ֆոն Գոգենցոլերնի նախկին ռեզիդենցիայում։ Այդ պալատում, որը սերտորեն առնչվում է գերմանական միլիտարիստների ու ֆաշիստների չարագուշակ պատմությանը, 1945 թ. հուլիսի 17-ից մինչև օգոստոսի 2-ը տեղի ունեցավ հակահիտլերյան կոալիցիայի դաշնակից երեք տերությունների՝ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի ղեկավարների կոնֆերանսը, ուր և ստորագրվեց Պոտսդամի համաձայնագիրը (հետագայում դրան միացավ նաև Ֆրանսիան)։ Դաշնակիցները հավաստիացրին, որ կձեռնարկեն բոլոր միջոցները որպեսզի գերմանական հողում արմատախիլ արվեն միլիտարիզմն ու ֆաշիզմը, որ Գերմանիան այլևս երբեք չսպառնա իր հարևաններին և ժողովուրդների անվտանգությանն ամբողջ աշխարհում։ Միաժամանակ նրանք գերմանական ժողովրդին հնարավորություն տվեցին նախապատրաստվելու և խաղաղ, դեմոկրատական հիմքի վրա վերակառուցելու իր քաղաքական ու տնտեսական կյանքը։

Այդ ամենը, ինչ խոսք, լիովին համապատասխանում էր ինչպես եվրոպական երկրների, այնպես էլ հենց իրենց գերմանացիների շահերին։

Սակայն իմպերիալիստները ոտնահարեցին Պոտսդամի համաձայնագիրը և մասնատեցին Գերմանիան։ Դեպքերի բերումով նրա տերիտորիայի վրա կազմավորվեցին հասարակական տարբեր կարգ ունեցող երկու ինքնուրույն պետություններ։

Ահա քսան տարի է, ինչ գոյություն ունի, աճում ու ամրապնդվում է գերմանական աշխատավորների սոցիալիստական պետությունը, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ֆորպոստը Եվրոպայի կենտրոնում։

Մարքսիստական-լենինյան կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը, դաշնակցած գյուղացիության ու մտավորականության, երկրի դեմոկրատական բոլոր ուժերի հետ, կենսագործեց հակաֆաշիստական-դեմոկրատական հեղափոխության խնդիրները և ձեռնամուխ եղավ հասարակական կյանքի սոցիալիստական վերակառուցմանը։

Այդ առումով էլ արժանի է ուշադրության նոր հասարակության կառուցման գերմանացի կոմունիստների ստեղծագործական պրակտիկան, սոցիալիզմի կառուցման նրանց փորձը։ ԳԴՀ-ում անցումը դեպի սոցիալիզմ կատարվեց խաղաղ, դեմոկրատական ճանապարհով, առանց զենքի գործադրման, բայց դա չի նշանակում, թե ամեն ինչ ընթացել է հարթ ու խաղաղ, առանց ցնցումների։ Ընդհակառակը, վերափոխումները ընթացել են դասակարգային սուր պայքարի, ներքին ու արտաքին դիմադրության հաղթահարման պայմաններում։ Բավական մեծ է հեղափոխության բազան, նրանում ներգրավված են բնակչության լայն խավերը։

Երկրում բանվոր դասակարգի ղեկավարությամբ ստեղծվել է դեմոկրատական, սոցիալիստական ուժերի համաժողովրդական համագործակցություն հանձինս Դեմոկրատական Գերմանիայի ազգային ճակատի, որը միավորում է հանրապետության հասարակական-քաղաքական բոլոր ուժերը՝ կուսակցությունները, մասսայական կազմակերպությունները։ Ազգային ճակատում միավորված են հինգ կուսակցություններ, այն է՝ Գերմանիայի սոցիալիստական միասնական և դեմոկրատական գյուղացիական կուսակցությունները,



քրիստոնեա-դեմոկրատական միությունը, լիբերալ-դեմոկրատական և ազգային դեմոկրատական կուսակցությունները, ինչպես նաև Գերմանական ազատ երիտասարդական միությունը, արհմիությունները, կանանց, սպորտային, կոոպերատիվ միությունները և այլն։ Նրանց բոլորին համախմբում է ժողովրդի շահերը, սոցիալիզմը։ Հասարակության ղեկավար ուժը բանվոր դասակարգն է, նրա սոցիալիստական միասնական կուսակցությունը։

Հասարակական զարգացման կարևոր առանձնահատկությունն այն է, որ առաջին անգամ սոցիալիստական հասարակարգ ստեղծվեց արդյունաբերական զարգացած երկրում, ուր բնակչության մեծամասնությունը կազմում է բանվոր դասակարգը։

ԳԴՀ-ում հաղթանակել են սոցիալիստական արտադրական հարաբերությունները, դրվել են սոցիալիզմի հիմքերը, որն իր պետական ամրապնդումն է գտել 1968 թվականի ապրիլին ընդունված Սահմանադրության մեջ։

Սոցիալիզմը հրամանատարական դիրքեր է գրավում հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Սոցիալիստական սեկտորը ներկայացված է ժողովրդական (պետական) և աշխատավորական կոլեկտիվների կոոպերատիվ սեփականությունների ձևով։ Հասարակական ընդհանուր արտադրանքի մեջ սոցիալիստական սեփականությունը 1967 թ. կազմում էր 86,8 տոկոս, ըստ որում ժողովրդական սեփականությունը 72,5, կոոպերատիվինը՝ 14,3 տոկոս. կիսապետական սեփականությունը կազմել է 7,2 և մասնավորը՝ 6 տոկոս։

Սոցիալիզմը հաղթանակել է նաև գյուղում։ Գյուղատնտեսության և անտառային տնտեսության համընդհանուր արտադրանքում սոցիալիստական սեկտորի (ժողովրդական կալվածքներ, ձեռնարկություններ և գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ) բաժինը 1967 թ. կազմում էր 91,6 տոկոս։ Գյուղացիները միավորված են գյուղատնտեսական արտադրական երեք տիպի կոոպերատիվներում, որոնք իրարից տարբերվում են արտադրության միջոցների հանրայնացման աստիճանով։

Արհեստավորների և տնայնագործների մեծ մասը միավորված է ճյուղային արտադրական կոոպերատիվներում։ Վերջին տարիներս մասնավոր ձեռնարկատերերի անձնական ցանկությամբ ու նախաձեռնությամբ իրենց սեփական ձեռնարկությունների գործունեությանը մասնակցում է պետությունը (կիսապետական ձեռնարկություններ)։

Սոցիալ-տնտեսական մեծագույն վերափոխումների շնորհիվ զգալիորեն փոխվել է բնակչության դասակարգային կառուցվածքը։ Հեղափոխության ընթացքում վերացվեցին շահագործողական դասակարգերը, մոնոպոլիաները, խոշոր հողատիրությունը, ֆինանսա-բանկային օլիգարխիան։ Ներկայումս բանվոր դասակարգը (ընտանիքի անդամների հետ միասին) կազմում է ընդհանուր բնակչության 74 տոկոսը, կոոպերացված գյուղացիների դասակարգը՝ 9,6 տոկոսը. մնացածները ծառայողներ են, մտավորականներ, արհեստավորներ ու տնայնագործներ, մասնավոր ձեռնարկատերեր ու առևտրականներ։

— ԳԴՀ-ն,— ասված է Սահմանադրության մեջ,— գերմանական ազգի սոցիալիստական պետությունն է։

Գյոթեի ու Բախի, Մարքսի ու Էնգելսի, Ավգուստ Բեբելի ու Վիլհելմ Լիբկնեխտի, Ռոզա Լյուքսեմբուրգի ու Կարլ Լիբկնեխտի, Էռնստ Թելմանի հայրենիքում իրականանում են գերմանական ժողովրդի լավագույն զավակ-

ների առաջադիմական գաղափարները՝ խաղաղության, սոցիալական արդարության, մարդկային արժանապատվության և եղբայրության մասին։

ԳԴՀ-ն թևակոխել է սոցիալիստական շինարարության զարգացման փուլը։ Սոցիալիզմը գերմանական ժողովրդի ապագան է, նրա միակ հնարավոր ուղին։ ԳԴՀ-ն այդ ապագայի նախատիպն է։

## ՀՐԱ՞ՇՔ։ Ո՛Չ— ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆ

Ինչպես հայտնի է Արևմտյան Գերմանիայի հետպատերազմյան զարգացումը գնաց կապիտալիզմի տրորված ճանապարհով, այդ կացութաձևին բնորոշ բոլոր օրինաչափություններով ու արատներով հանդերձ։ Արևմտյան և, առաջին հերթին ամերիկյան իմպերիալիստների հովանավորությամբ ու օգնությամբ արագ կերպով վերականգնվեցին արևմտագերմանական մոնոպոլիաները, ամերիկյան «օգնության» շնորհիվ («Մարշալի պլան») վերակենդանացավ Հռենոսի ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը։ Ավելին, Արևմտյան Գերմանիայում ԱՄՆ-ի կապիտալ ներդրումները կազմեցին շուրջ 10 միլիարդ մարկ, ամերիկյան մոնոպոլիաների մասնաճյուղերը 1957—1965 թթ. ընթացքում այստեղ եռապատկվեցին։ Նպատակը մեկն էր՝ կորզել ավելի շատ գերշահույթներ և ԳՖՀ-ն վերածել «պատերազմի պոտենցիալի»։

Այստեղից էլ Բոննի կառավարող շրջանների կողմից աշխարհով մեկ իրենց «տնտեսական հրաշքի» և բնակչության բարձր կենսամակարդակի վերաբերյալ պարծենկոտ հայտարարությունները։ Այո՛, ճոխություն ու առատություն մի խումբ մարդկանց համար, տառապանք ու զրկանք՝ աշխատավորական զանգվածների համար։ Դա է ճշմարտությունը արևմտագերմանական «տնտեսական հրաշքի» մասին։

Անցած քսան տարում ակներև է ԳԴՀ-ի առաջընթացը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում. ներկայումս նա հանդիսանում է բարձր զարգացած ինդուստրիալ, ինտենսիվ գյուղատնտեսության երկիր և համարվում է մեր մոլորակի արդյունաբերական ամենաառաջատար տերություններից մեկը։ Չնայած իր տերիտորիայի մեծությամբ նա աշխարհում գրավում է 92-րդ, իսկ բնակչության թվով՝ 31-րդ տեղերը, սակայն արդյունաբերական համախառն արտադրանքի ծավալով Եվրոպայում գտնվում է առաջին հնգյակում և իններորդ տեղն աշխարհում։

— «Արևելյան Գերմանիան,— գրել է «Նյու-Յորք Թայմս» բուրժուական ազդեցիկ թերթը,— գտնվում է աշխարհի ինդուստրիալ առաջին տաս տերությունների շարքում», նա «տնտեսապես հզոր պետություն է» և «կոլեկտիվացված գյուղատնտեսությունը հասել է փայլուն հաջողությունների, ընդ որում բերքատվության որոշ ցուցանիշներով այն հետ չի մնում Հոլանդիայի և Դանիայի լավագույն արդյունքներից»։

Միանգամայն օրինաչափ է սոցիալիզմի հետ իր ճակատագիրն առհավետ կապած երիտասարդ գերմանական պետության զարգացման դինամիկան։

* * *

Դժվարին է եղել ԳԴՀ-ի անցած ճանապարհը, մեծ ջանքեր են պահանջվել հաղթահարելու պատերազմի ծանր հետևանքները տնտեսության մեջ, խափանելու միջազգային իմպերիալիզմի ու արևմտագերմանական միլիտարիստների ստոր դավերը։ Անդադրում պայքար է մղվել ու մղվում ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, հանուն նոր մարդու հոգևոր ու բարոյական կերպարի ձևավորման։



Համաշխարհային երկրորդ պատերազմի հետևանքով ամենից շատ տուժեց Գերմանիայի արևելյան հատվածը. եթե արևմտյան մասում արդյունաբերական պոտենցիալը ավերվել էր 20 տոկոսով, ապա արևելքում այն կազմել է 45 տոկոս։ Երկրի պառակտմամբ խախտվեցին էկոնոմիկայի միասնությունը, արևելյան ու արևմտյան հատվածների միջև պատմականորեն ստեղծված տնտեսական կապերը։

ԳԴՀ-ի ներկայիս տերիտորիայում զարգացած էր մետաղամշակման արդյունաբերությունը, բայց երկրի պառակտումից հետո նա զրկվեց մետաղաձուլական բազաներից կամ համեմատաբար զարգացած քիմիական արդյունաբերությանը պակասում էր ծծմբաթթու և այլն։ Ելակետային ժամանակամիջոցում, 1949 թվականին, ԳԴՀ-ում թողարկվում էր ամբողջ Գերմանիայում արտադրվող պողպատի 7,7, ծծմբաթթվի՝ 20, ցեմենտի՝ 16,5 տոկոսը, արդյունահանվող երկաթի՝ 5, քարածխի՝ 2 տոկոսը և այլն։ Գործող 125 դոմնային վառարաններից միայն հինգն էին գտնվում արևելյան մասում։

Ավելին, ստեղծվել էր ծանր կացություն ԳԴՀ-ի հանդեպ արևմտյան տերությունների և ԳՖՀ-ի կառավարող շրջանների խիստ թշնամական ու քայքայիչ գործունեության հետևանքով։ Անհրաժեշտ էր արագ բուժել պատերազմի պատճառած վերքերը, վերականգնել ավերվածը, կառուցել արդյունաբերական նոր օջախներ, ստեղծել սեփական բազաներ, գիտականորեն ճիշտ պլանավորել տնտեսությունը և համաչափ տեղաբաշխել արտադրաուժերը։

Հենց դրան էլ ձեռնամուխ եղան ԳԴՀ-ի աշխատավորները։ Ժողովրդի հայրենանվեր ստեղծագործական աշխատանքը, Սովետական Միության եղբայրական անշահախնդիր օգնությունը և համագործակցությունը սոցիալիստական մյուս երկրների հետ տվեցին իրենց փայլուն արդյունքները։

Տարեցտարի ավելանում են ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները, 1950 թվականի համեմատությամբ այն աճել է ութ անգամ։ Դա հնարավորություն տվեց կառուցել ու գործարկել արտադրական նոր կարողություններ, ժամանակակից հարյուրավոր նոր ձեռնարկություններ, տեխնիկապես զինել և քիմիացնել գյուղատնտեսությունը, կառուցել բնակարաններ, դպրոցներ, կուլտուրայի օջախներ։

Մեծացել է երկրի ինդուստրիալ պոտենցիալը։ Անցած տարիներին ստեղծվել են արդյունաբերության բոլորովին նոր ճյուղեր (էներգետիկայի մեքենաշինություն, էլեկտրոնիկա, քիմիական մեքենաշինություն, մետաղաձուլություն, նավթաքիմիա և այլն)։ Օդերի վրա կառուցվել է մետաղաձուլական «Օստ» կոմբինատը, Շվեդտում՝ նավթավերամշակման կոմբինատը, արդիական խոշոր նավաշինարաններ Բալթիկայի ափերին, գործարաններ ու ֆաբրիկաներ երկրի տարբեր շրջաններում։

Արդյունաբերությունը զարգանում է բարձր տեմպերով։ Եթե նախապատերազմյան մակարդակը ընդունենք 100, ապա 1950 թվականին այն կազմել է 111, 1968 թվականին՝ 521։ Ներկայումս ԳԴՀ-ի արդյունաբերությունը տասն ամսում թողարկում է այնքան արտադրանք, որքան 1936 թ. տալիս էր ամբողջ Գերմանիան։

Արդյունաբերության միջուկը հանդիսանում է մեքենաշինությունը, որը վճռական դեր է խաղում հանրապետության ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցման ու մոդեռնացման գործում։ Եթե արդյունաբերական արտադրանքի մեջ մեքենաշինության տեսակարար կշիռը 1965 թ.

*կազմել է 37 տոկոս, ապա 1970 թ. այն կհասնի 41,7 տոկոսի (ի դեպ, ԳՖՀ-ում այն կազմում է 24,9 տոկոս)։ ԳԴՀ-ն արտադրում է համաշխարհային մեքենաշինության նոմենկլատուրայի համարյա 90 տոկոսը, մեքենաներն ու սարքավորումները նրա արտածման մեջ կազմում են շուրջ 55—60 տոկոս։*

*Գորշ ածխի հանույթով նա աշխարհում գրավում է առաջին տեղը, ըստ շնչի քիմիական արդյունաբերության արտադրանքի արտադրությամբ՝ երրորդ տեղը։ Գորշ ածխի և «Բարեկամություն» նավթամուղով ստացվող հումքի բազայի վրա արագաթափ զարգանում է մեծ քիմիան (նախապատերազմյան ժամանակաշրջանի մակարդակը գերազանցել է մոտ 8 անգամ)։*

*«Պատրաստված է Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում» մակնիշով այսօր բարդ մեքենաներ ու սարքավորումներ, բազմապիսի բարձրորակ շինվածքներ ու ապրանքներ են առաքվում երկրագնդի բոլոր անկյունները, որոնցից շատերը համապատասխանում են համաշխարհային ստանդարտին և մեծ պահանջարկ ունեն։*

*Գերմանական գյուղի սոցիալիստական վերակառուցումը լայն հնարավորություններ ընձեռեց գյուղատնտեսական արտադրությունը վարելու գիտականորեն, մեքենայացնելու արտադրության համարյա բոլոր պրոցեսները։*

*Անցյալում Գերմանիային երբեք չի բավականացրել սեփական հացը, միշտ ներմուծել է։ Իսկ այժմ ունի իր սեփականը։ 1967 թվականին հեկտարից միջին հաշվով ստացվել է ցորեն՝ 37,8 ցենտներ, կարտոֆիլ՝ 205, շաքարի ճակնդեղ՝ 332,6 ցենտներ։ 1950—1968 թթ. ընթացքում մսի արտադրությունը աճել է 4,3, կաթինը՝ 3,7 և ձվինը՝ 9,7 անգամ։ Երկրում միջին հաշվով ֆուրաժային կովից ստացվել է 3.160 կգ կաթ։*

*Մենք եղանք Շվերինի օկրուգի Պլատեի և Մակդեբուրգի օկրուգի Օրելեբենի առաջավոր գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներում։ Առաջին կոոպերատիվում 750 հեկտար կարտոֆիլի ցանքից միջին հաշվով անցյալ տարի հեկտարից ստացվել է 270 ցենտներ և յուրաքանչյուր կաթնատու կովից 3.400 կգ կաթ։ Երկրորդ տնտեսությունում հեկտարից հավաքվել է 53 ցենտներ ցորեն, 416 ցենտներ շաքարի ճակնդեղ. այստեղ ավելի բարձր է կաթնատվությունը։ Կարևորն այն է, որ երկու կոոպերատիվներում էլ տրնտեսության բոլոր ճյուղերը շահութաբեր են։ «Մեզ համար, մեր հանրապետության համար կատարել խիստ հաշվարկ և տնտեսավարել խնայողաբար»,— Պլատեյի գյուղացի-կոոպերատորների կոչը լայն արձագանք է գտել հանրապետության բոլոր գյուղերում։*

*Մեզ պատմեցին, թե ինչպես գերմանական գյուղում զարգանում են կոոպերատիվային կապերը, ստեղծվում են կոոպերատիվային համագործակցություններ՝ հանձինս կոոպերացիոն միավորումների և միությունների՝ սերտորեն առնչված պարենային ապրանքների արդյունաբերության հետ։*

*Երկրի պառակտումից հետո ԳԴՀ-ում մնացին գերմանական ժողովրդի հոգևոր մշակույթի խոշոր կենտրոնները։ Ծաղկող սոցիալիստական ազգային կուլտուրան, որն իր մեջ ներծծել է ազգի մեծագույն մտածողների, հումանիստների առաջադեմ գաղափարները, օգնում է հասարակության անդամների աշխարհայացքի ձևավորմանը, նրանց դաստիարակությանը։*

*Ստեղծվել է ուսման ու կրթության միասնական սիստեմ, ուսումնական հաստատությունների լայն ցանց (սկսած մսուր-մանկապարտեզներից մինչև համալսարանները)։ Իրականացվում է պարտադիր ընդհանուր միջնակարգ պոլիտեխնիկական ուսուցում, գործում են բազմաթիվ միջնակարգ մասնագիտական և պրոֆտեխնիկական դպրոցներ։ Հանրապետությունում ներկայումս գործում են չորս անգամ ավելի շատ համալսարաններ, քան եղել է մինչ պատերազմը։ Ներկայումս յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է բուհերի 63 ուսանող, իսկ Արևմտյան Գերմանիայում՝ 45,9։ Այստեղ արագ տեմպերով զարգանում է գիտությունը, խոշոր մասշտաբներով կատարվում են գիտահետազոտական աշխատանքներ, որոնցից շատերը սոցիալիստական համագործակցության երկրների մշակած միասնական պլանով, այդ երկրների գիտնականների համատեղ ջանքերով։*

«Ամեն բան ժողովրդի հետ, ամեն բան ժողովրդի մասնակցությամբ, ամեն ինչ ժողովրդի համար»— *այսպիսին է գերմանական սոցիալիստական պետության գործունեության ելակետը, նրա գերազանցությունը իր արևմտյան հարևանի նկատմամբ։*

*Ժողովրդական պետությունը մեծ հոգատարություն և ուշադրություն է ցուցաբերում քաղաքացիների բարեկեցության ու առողջության պահպանման նկատմամբ, սոցիալիզմի բարիքներից հավասարապես օգտվում են բոլորը։ Ի հակակշիռ ԳՖՀ-ի, պետական բյուջեի կեսից ավելին հատկացվում է ժողովրդական կրթությանը, առողջապահությանը և սոցիալական ապահովությանը, սպորտին, գիտության և արվեստի զարգացմանը։ Աշխատավորների տրամադրության տակ են կուլտուրայի ու արվեստի, կուլտուր-լուսավորական հաստատությունների հիմնարկներ։ Առանձնապես մեծ ուշադրություն է հատկացվում մասսայական սպորտի զարգացմանը։ Անվճար է ուսուցումը կրթական բոլոր տիպի հաստատություններում, ինչպես և բուժումը, աշխատավորներին են պատկանում առողջարանները և հանգստի տները, ստեղծված է պետական կենսաթոշակային սիստեմ, յուրաքանչյուր քաղաքացի ապահովված է աշխատանքով։*

*Մենք ականատես եղանք բնակարանային զանգվածային շինարարությանը, ամեն տարի տասնյակ հազար նոր բնակարաններ են հանձնվում բնակիչներին։ Ի դեպ, բնակարանային-կոմունալ ծախսերը կազմում են աշխատավորների վաստակի 8 տոկոսը, Արևմտյան Գերմանիայում՝ 20—25 տոկոսը։*

*1950 թվականի համեմատությամբ ազգային եկամուտն աճել է երեք անգամ, որով հնարավոր է դարձել բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձն ավելացնել 3,5 անգամ։ Աճել է բնակչության գնողունակությունը. եթե մանրածախ ապրանքաշրջանառությունը 1955 թ. եղել է 31,6 միլիարդ մարկ, ապա անցյալ տարի այն կազմեց 57,9 միլիարդ։ ԳԴՀ-ն բնակչության պարենային ապրանքների սպառմամբ հասել է Արևմտյան Գերմանիայի մակարդակին։*

***

*Գերմանական կոմունիստները վիթխարի ջանքեր են գործադրում հասարակության անդամների գաղափարական դաստիարակության, մարդկային անհատի համակողմանի զարգացման ուղղությամբ, նպաստում ինքնուրույն մտածելու և ստեղծագործելու ունակությունների դրսևորմանը։*

*Այդ նպատակով անհրաժեշտ էր ամենից առաջ վերացնել ֆաշիզմի ու նացիոնալիզմի արմատներն ու մնացուկները, հաղթահարել մարդկանց գիտակցության մեջ բուրժուական գաղափարախոսության, ազգայնամոլության ազդեցությունները, դաստիարակել նրանց գերմանական բանվոր դասակարգի հեղափոխական փառավոր ավանդույթների և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ Պայքարը նոր մարդու համար ընթացել է ու ընթանում է միջազգային իմպերիալիզմի ու արևմտագերմանական միլիտարիստների և ռևանշիստների թշնամական, քայքայիչ գործունեության պայմաններում։*

*ԳԴՀ-ի հասարակական կյանքում տեղի ունեցած հեղափոխական վերա-*









փոխումները, սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաստատումը, հեղաշրջեցին մարդկանց մտածելակերպը, կենցաղը։

Մարքսիստական-լենինյան կուսակցությունն առանձնակի ուշադրություն է հատկացնում աճող սերնդի նկատմամբ, ձևավորում նրան որպես պայքարի անվեհեր մարտիկ, սոցիալիզմի ակտիվ կառուցող։

Երիտասարդ մարդիկ խոշոր դեր են խաղում երկրի հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Կուսակցությունը ամեն ինչում վստահում է նրանց և նպատակամղում ստեղծագործական աշխատանքի լայն ճանապարհ։ «Մեր սերը, մեր հավատարմությունը և մեր ուժը սոցիալիստական հայրենիքին»— այս է Գերմանական ազատ երիտասարդության միության նշանաբանը։

Պետք է տեսնել, թե ինչպիսի հեղափոխական պաթոսով ու ջանասիրությամբ են պատանիներն ու աղջիկները աշխատում գործարաններում և գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներում, գիտական և ուսումնական հաստատություններում, թե ինչպես զինվորական համազգեստ հագած նրանք աչալրջությամբ պահպանում են երկրի անվտանգությունը, ժողովրդի անդորրը։

Դեռևս երբեք Գերմանիայում չի եղել պետություն, ուր հնարավոր լիներ այնպիսի լայն մասշտաբներով հենվել միլիոնավոր քաղաքացիների ակտիվության վրա, ինչպես ԳԴՀ-ում։ Ավելի ու ավելի է ամրապնդվում ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ավելի ուժեղ է դրսևորվում աշխատավորական դասակարգերի և շերտերի մերձեցման տենդենցը։

Մեր շրջագայության ընթացքում ամենուրեք ականատես եղանք Սովետական Միության ու նրա ժողովուրդների նկատմամբ գերմանացի բարեկամների տածած ոչ միայն, բայց անկեղծ ու ջերմ սիրո, սոցիալիստական երկրների համագործակցության հանդեպ իրենց պատասխանատվության զգացումի բազմաթիվ դրսևորումներին։ Այստեղ հաճախ էինք լսում հպարտությամբ ասված այն խոսքերը, թե ԳԴՀ-ն մեծ երկիր է, քանի որ նա պատկանում է սոցիալիզմի մեծ ընտանիքին։

## ԳԴՀ-Ի ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԵՐԸ

Եվրոպայի կենտրոնում, համաշխարհային երկու սիստեմների սահմանագծում արդեն քսան տարի է ինչ գոյություն ունեն գերմանական երկու անկախ, սուվերեն պետություններ՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը։ Երկու Գերմանիա, հասարակական-քաղաքական զարգացման երկու սիստեմներ, իրարամերժ արդյունքներ։

Բանվորա-գյուղացիական իշխանության անցած քսան տարիները եղել են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար պայքարի բեղուն տարիներ։ Գերմանիայի տարեգրության մեջ ԳԴՀ-ն բաց է արել սոցիալիզմի դարաշրջանը և իր գոյությամբ, տնտեսական ու քաղաքական մարզերում ձեռք բերած հոյակապ հաջողություններով նախանշել գերմանական ազգի ապագան, ապացուցելով, որ գերմանական հողում կապիտալիզմի ու սոցիալիզմի պատմական մրցության մեջ ապագան սոցիալիզմի կողմն է։ Նա խաղաղության ու դեմոկրատիայի, հումանիզմի ու սոցիալական արդարության առաջին գերմանական պետությունն է։

ԳԴՀ-ն կատարում է պատմական մեծ առաքելություն։ Նա հանդիսանում



է պաշտպանական վստահելի պատնեշ ընդդեմ արևմտագերմանական միլիտարիստների ու ռևանշիստների և անում է ամեն ինչ որպեսզի գերմանական հողում այլևս չսանձազերծվի պատերազմը։ Նա վարում է խաղաղասեր արտաքին քաղաքականություն, որը կապված չի ոչ ուժի քաղաքականության, ոչ էլ ուրիշ ժողովուրդների նկատմամբ տերիտորիալ հավակնությունների ու պահանջների հետ։ Այդ ամենը ԳԴՀ-ին բերել են մեծ հեղինակություն և տարեցտարի ընդլայնել նրա միջազգային կապերը։ Մինչև վերջերս հանրապետությունը դիվանագիտական ներկայացուցչություններ ուներ աշխարհի 15 և առևտրական՝ 26 երկրների հետ։ Միաժամանակ նա առևտրական հարաբերություններ է պահպանում աշխարհի 100 պետությունների հետ։ Վերջերս մի շարք պետություններ (Կամբոջա, Իրաք, ԱՄՀ, Սիրիա, Սուդան, Եմեն և այլն) դիվանագիտական հարաբերություններ հաստատեցին գերմանական սոցիալիստական պետության հետ։ Այդ պրոցեսը ուժեղանում է։

***

Գերմանական իմպերիալիզմի պատմական ուղին դա քաղաքական և ռազմական ավանտյուրաների, ազգային դժբախտության ուղին է։

Արևմտագերմանական պետությունն օգտագործեց իր գոյության քսան տարին այն բանի համար, որպեսզի վերստին հարություն տա գերմանական պատմության ռեակցիոն բոլոր ավանդույթներին, շարունակի և մշտապես սրի, ինչպես երկրի ներսում, այնպես էլ նրա սահմաններից դուրս, գերմանական իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը։

Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի օգնությամբ վերածնվում է արևմտագերմանական իմպերիալիզմը՝ պատերազմական վտանգի հիմնական օջախը Եվրոպայում, գլուխ է բարձրացնում նեոնացիզմը։ Պատերազմի շատ հանցագործներ ոչ միայն չեն պատժվել, այլև նրանցից շատերը հրամանատարական պոստեր են գրավում ԳՖՀ-ի քաղաքական, տնտեսական և ռազմական կյանքում։ Բոննի կառավարող շրջանները, որոնք հարկ եղած դասերը չեն քաղել հիտլերյան Գերմանիայի կործանումից, վարում են երկրի միլիտարիզացիայի և ռևանշի քաղաքականություն, հանդես են գալիս համաշխարհային երկրորդ պատերազմից հետո ստեղծված հարաբերությունների վերանայման պահանջով, դրանով իսկ վերստին սպառնալիք ստեղծում Եվրոպայի և առաջին հերթին՝ սոցիալիստական երկրների ժողովուրդների անվտանգությանը։ Դա իր սուր ծայրով ուղղված է ԳԴՀ-ի դեմ։

Շատ փորձեր են արվել ու շարունակվում են արվել տապալելու ժողովրդական հանրապետությունը, վերացնելու ԳԴՀ-ն և այն միացնելու իմպերիալիզմի սիստեմին։ Այդ առումով քիչ անախորժություններ չի պատճառել Արևմտյան Բեռլինը, որը գտնվում է ԳԴՀ-ի տերիտորիայի կենտրոնում և ունի ինքնուրույն հատուկ քաղաքական միավորի ստատուս։

Բոննը չի հրաժարվում ամբողջ Գերմանիան ներկայացնելու խելացնոր հավակնություններից, չի ճանաչում ԳԴՀ-ն միջազգային իրավունքի տեսանկյունից և չի ուզում նորմալ հարաբերություններ հաստատել իր արևելյան հարևանի հետ։

Սակայն այդ ամենը չեն կարող սասանել Գերմանական Դեմոկրատական Հանրապետության աշխատավորների վճռական կամքը ընթանալու սոցիալիզմի ուղիով։ Նրանք մայր հողում կառուցում են իրենց երջանիկ այսօրը և գերմանական ամբողջ ազգի լուսավոր ապագան։

Հ. Հ. ՍԱՀԱԿՅԱՆ

# ՄԱՏԵՐԻԱ ԿԱՏԵԳՈՐԻԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԱՀՄԱՆՈՒՄԸ

Վլադիմիր Իլյիչ Լենինի փիլիսոփայական ժառանգության մեջ հանգամանորեն լուսաբանված են մատերիալիստական իմացաբանության դիալեկտիկան, ճանաչողության տեսության սկզբունքները։ Ընդհանրացնելով փիլիսոփայության, բնագիտության, հասարակական պրակտիկայի զարգացման արդյունքները, Լենինը հարստացրեց գիտությունը աշխարհայացքային նոր ընդհանրացումներով, տրամաբանական սահմանումներով։ Մատերիայի կատեգորիայի լենինյան սահմանումը փիլիսոփայական մտքի խոշորագույն նվաճումն է, մարդկային բանականության ճշմարտացիության արտահայտությունը։

«Մատերիան փիլիսոփայական կատեգորիա է՝ նշանակելու համար օբյեկտիվ ռեալությունը, որ տրված է մարդուն նրա զգայարանների մեջ, որ պատճենվում է, լուսանկարվում է, արտացոլվում է մեր զգայությունների միջոցով, գոյություն ունենալով նրանից անկախ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 161)։ Տվյալ սահմանման մեջ տրված է այն միտքը, որ չի կարելի շփոթել մատերիայի բնագիտական պատկերացումը մատերիայի փիլիսոփայական հասկացության հետ։

Մատերիայի բնագիտական պատկերացումը պատմական ամեն մի էտապում կախված է վերջինիս նոր տեսակի, վիճակի և հատկությունների հայտնագործումից։ Մատերիայի փիլիսոփայական հասկացությունը անսահման լայն կատեգորիա է, որն իր մեջ է առնում բնության բոլոր հայտնի ու անհայտ օբյեկտիվորեն ռեալ գոյություն ունեցող առարկաները, մարմիններն ու երեվույթները։

Մատերիայի բնագիտական պատկերացումը փոխվում է, երբ երևան են գալիս մատերիայի նոր տեսակներ, վիճակներ, հատկություններ և հարաբերություններ։ Դրանք հեղաշրջում են առաջացնում մատերիայի մեր պատկերացումների մեջ, խորացնում և ընդլայնում են ճանաչողության սահմանը, հարստացնում մատերիայի փիլիսոփայական հասկացությունը։ Ֆիզիկան, քիմիան, աստղագիտությունը և մյուս գիտությունները մատերիայի կառուցվածքում բացահայտում են նրա նոր տեսակներ ու ձևեր։ Բնագիտությունը բացահայտում է մատերիայի ձևերի ֆիզիկական հատկությունները՝ մասսան, էներգիան, լիցքը և այլն, հաստատում մատերիայի անսահմանությունը։

Մատերիայի լենինյան բնորոշումը մեծ արժեք ունի բնագիտության տե-



սական և էքսպերիմենտալ հայտնագործությունների օբյեկտիվ բնույթը ըմբռնելու տեսակետից։

Բնագիտության համար առաջնակարգ նշանակություն ունի իրականության վերաբերյալ ճշմարիտ գիտելիքների օբյեկտիվ հիմքը, որը մատերիայի մասին ուսմունքի մեջ տրված է որպես «օբյեկտիվ ռեալություն»։ Յուրաքանչյուր գիտություն հետազոտում է օբյեկտներ, որոնք անկախ են գիտակցությունից և իմացությունից ու ըմբռնվում են որպես մատերիական։ Մատերիայի՝ որպես գիտելիքների աղբյուրի գիտական ըմբռնումը բնագետների միտքը ուղղում է իրական փաստերի ուսումնասիրության կողմը։ Էնգելսն այդ առթիվ գրում է. գիտական ամեն մի, ինչպես բնության, այնպես էլ պատմության բնագավառում, պետք է ելնել մեզ տրված փաստերից, ուրեմն՝ բնագիտության մեջ— մատերիայի զանազան առարկայական ու նրա շարժման զանազան ձևերից, և որ, հետևաբար, տեսական բնագիտության մեջ ևս չի կարելի կապակցություններ կերտել ու դրանք մտցնել փաստերի մեջ, այլ հարկավոր է դրանք բխեցնել փաստերից և, գտնելով դրանք ըստ հնարավորին ապացուցել փորձնականորեն (տե՛ս Բնության դիալեկտիկա, Երևան, 1957, էջ 35)։ Մատերիա կատեգորիայի մեթոդոլոգիական նշանակությունը Լենինը հիմնավորել է հենվելով XIX դարի վերջում և XX դարի սկզբում բնագիտության մեջ տեղի ունեցած հեղափոխության և ֆիզիկական ճգնաժամի վերլուծության վրա։ Հայտնի է, որ այն ժամանակվա բնագետների մեծ մասը չկարողացավ հասկանալ գիտության մեջ տեղի ունեցող հեղաշրջման դիալեկտիկական բնույթը, որը խորտակեց բնագիտության տրադիցիոն սխեմները և հերքեց անհիմն սկզբունքները։ Ռենտգենյան ճառագայթների հայտնագործմանը հետևեցին ռադիոակտիվության բնագավառի հիանալի հայտնագործությունները։ Պարզվեց, որ ատոմները ոչ միայն բաժանելի են, այլև փոխարկվում են մեկը մյուսի։ Հաստատվեց նյութի և էլեկտրամագնիսական (լույսի) միասնությունը։ Ստեղծվեց հարաբերականության տեսությունը, որը վկայեց ժամանակի և տարածության օբյեկտիվ բնույթն ու միասնությունը։ Մաթեմատիկայի բնագավառում առաջադրվեցին գաղափարներ, որոնք քվանտային տեսության համար հիմք հանդիսացան։

Լենինը խոր ըմբռնելով բնագիտության զարգացման տենդենցները, ցույց տվեց, որ մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը բնագիտության միակ հետևողական գիտական հիմքն է։ Այն ժամանակ, երբ մատերիալիզմը հատուկ դնում էր բնագիտության կողմից դեռևս չլուծված հարցերը և գիտական միտքն ուղղում դրանց լուծման վրա, իդեալիզմը, ընդհակառակը, խոչընդոտում էր բնագիտության զարգացմանը։ Մախը գտնում էր, որ գոյություն չունի օբյեկտիվ ռեալ աշխարհ, «...աշխարհը կազմված է միայն մեր զգայություններից», կամ «...մենք միայն մեր զգայությունները գիտենք»։

Լենինը, քննադատելով Մախին, գրում է, եթե մարմինները «զգայությունների կոմպլեքսներ են, ինչպես ասում է «Մախը», կամ «զգայությունների կոմբինացիաներ», ինչպես Բերկլին էր ասում, ապա դրանցից անխուսափելիորեն հետևում է, որ ամբողջ աշխարհը սոսկ իմ մտածելակերպն է» (Երկեր, հ. 14, էջ 39)։ Այդպես էր մտածում նաև մախիստ Ավենարիուսը։

Մախը և նրա հետևորդները չէին կարող չտեսնել, որ գիտությունը տարերայնորեն խարսխված է աշխարհի մատերիալիստական ըմբռնման վրա։ Չնայած դրան, նրանք փորձում էին բնագիտության տեսություններն ու սկզբունքները կտրել մատերիալիստական փիլիսոփայությունից։ Որքան մարդ-

կային ճանաչողությունն ավելի խոր է թափանցում մեզ շրջապատող աշխարհը, այնքան բարդանում են ուսումնասիրվող առարկաները, այնքան բնագետների համար անհրաժեշտ է դառնում օբյեկտիվ աշխարհի դիալեկտիկական ըմբռնումը։

Իդեալիստները փորձում են ապացուցել, որ հեղաշրջումը ֆիզիկայի մեջ հաստատում է, որ այն ինչպես և ամբողջ բնագիտությունը, չունի օբյեկտիվ հիմք, ճանաչողության օբյեկտիվ արժեք։ Մախը և ուրիշներ համոզում էին, որ բնագիտությունը ամբողջովին տոգորված է մետաֆիզիկայով, իսկ բնապատմական մատերիալիզմը որակում էին որպես «փխոցի մետաֆիզիկա», Լենինը նկատեց, որ մախիզմն անտեսում է մետաֆիզիկական մատերիալիզմի տարբերությունը դիալեկտիկական մատերիալիզմից, բացահայտեց դրա հակագիտական էությունը։

Ելնելով փաստերի գիտական վերլուծությունից, Լենինը եզրակացրեց, որ ֆիզիկայի, ինչպես և ժամանակակից ամբողջ բնագիտության մատերիալիստական ոգին կհաղթի ամեն տեսակ ճգնաժամեր, եթե մետաֆիզիկական մատերիալիզմը փոխարինվի դիալեկտիկականով։ Մատերիայի փիլիսոփայական կատեգորիայի լենինյան սահմանումը օգնում է ըմբռնել ժամանակակից ֆիզիկայի նվաճումները, անվրեպ զենք է նեոպոզիտիվիզմի դեմ մղվող պայքարում։

Ժամանակակից ֆիզիկան վիթխարի արդյունքների է հասել մատերիայի կառուցվածքի ուսումնասիրության ուղղությամբ, բացահայտված են «տարրական» մասնիկների հատկությունները, փոխազդեցությունները, մեկը մյուսով փոխակերպվելու երևույթները։ Այդ կապակցությամբ նորագույն պոզիտիվիստները նորից առաջ են քաշում միկրոմասնիկների օբյեկտիվության բնույթի հարցը։ Միկրոօբյեկտները գոյություն ունեն ճանաչող սուբյեկտից անկախ, թե՞ ծագում են էքսպերիմենտալ գործիքների հետ ունեցած փոխազդեցության ժամանակ։ Նման հարցադրումը նշանակում է վերադարձ վաղուց դատապարտված մախիզմին, նահանջ մատերիալիզմի դիրքերից։ Հետագայում պոզիտիվիստները, խեղաթյուրելով գիտության փաստերը, չփոթ առաջացրին բնագիտական պրոբլեմների փիլիսոփայական ընդհանրացման բնագավառում։

«Տարրական» մասնիկների ալիքային ու կորպուսկուլյար հատկությունների օբյեկտիվ միասնության հարցը ունի ոչ միայն բնագիտական, այլև փիլիսոփայական նշանակություն։ Փիլիսոփայական տեսակետից հարցը այսպես է դրվում. միկրոօբյեկտների հատկություններն արդյոք օբյեկտի՞վ բնույթ ունեն, թե՞ կախված են դիտողից, սուբյեկտից։

Բորը և Հայզենբերգը քվանտային տեսության օբյեկտ ասելով հասկանում են ոչ թե օբյեկտիվորեն գոյություն ունեցող մասնիկը, այլ նրանց գոյությունը դիտում են գործիքի փոխազդեցության հետ մեկտեղ։

Բորը գրում է. «...Քվանտային ֆիզիկայում տարբեր փորձնական սարքավորումների օգնությամբ ատոմային օբյեկտների մասին ստացած տվյալները միմյանց նկատմամբ յուրատեսակ լրացումային հարաբերության մեջ են գտնվում» (Ն. Բոր, Ատոմային ֆիզիկան և մարդկային իմացությունը, Երևան, 1963, էջ 173)։ Նա պնդում է, որ «Ատամոյին ֆիզիկայի պարադոքսների պարզաբանման ժամանակ հայտնաբերվեց այն փաստը, որ օբյեկտների և չափիչ սարքերի միջև անխուսափելի փոխազդեցությունը բացարձակ սահման է դնում ատոմային օբյեկտի, որպես դիտման միջոցներից ինչ-որ



անկախ բանի վարքի մասին խոսելու հնարավորության վրա» (նույն տեղը, էջ 48)։

Համաձայն այս մեկնաբանության, միկրոօբյեկտների հատկությունները ո՛չ թե օբյեկտիվ միասնության մեջ են, այլ սարքի շնորհիվ են ձեռք բերում այն։ Սարքի միջոցով դրանք ո՛չ միայն դրսևորվում, այլ լրացնում են միմյանց։ Պոզիտիվիստական նման տեսակետը ժամանակին քննադատել է Լենինը։

Հետևելով Բորին, Հայզենբերգն ասում է, որ լրացման շնորհիվ ի հայտ է գալիս «դիտողության» ինչ-որ յուրատեսակ անորոշության գաղափար, որի էությունը կամայական է, այսինքն՝ թե ինչպիսի առարկա է հարկավոր դիտվող սիստեմների շարքը դասել և ինչպիսիք դիտել իբրև դիտման միջոցներ (տե՛ս Гейзенберг, физические принципы квантовой теории, М., 1932, стр. 51—52)։ Հայզենբերգը մեկ ուրիշ տեղ նշում է, որ «տարրական» մասնիկները ռեալություն չունեն։ Նա ատոմային ֆիզիկայի տարբերությունը կլասիկ ֆիզիկայից համարում է վերջինի օբյեկտների «օբյեկտիվությունն» ու «ռեալությունը»։ «Օբյեկտիվություն» ասելով հասկանում է «ինքն իր մեջ» փակ սիստեմի անկախությունը գործիքից և արտաքին աշխարհից։ Այսպիսի սիստեմը, ըստ Հայզենբերգի, «օբյեկտիվ» է, բայց ռեալ չէ, քանի որ նրան չի կարելի նկարագրել կլասիկ հասկացություններով։ «Օբյեկտիվը»— անհնար է, քանի որ իմացությունը հնարավոր է միայն սիստեմի և դիտողի կապի շնորհիվ, որը և կործանում է այդ օբյեկտիվը (Развитие интерпрентации квантовой теории, տե՛ս сб. В. Гейзенберг, Н. Бор и развитие физики, И. Л., 1958, стр. 41)։ Այսպիսով, միկրոմասնիկը համարվում է ֆիզիկապես «ռեալ» միայն փորձարկման սարքում։ Մասնիկն ինքն իրեն միայն հնարավորություն է։ Այն միայն մաթեմատիկական մեծություն է, սիմվոլ։ Հայզենբերգը ռեալ է համարում այն, ինչ կարելի է նկարագրել կլասիկ ֆիզիկայի հասկացություններով, իսկ սրանք դրանով չեն նկարագրվում, հետևաբար իրական չեն կամ միայն մաթեմատիկական սիմվոլներ են։ Կլասիկ ֆիզիկայի հասկացությունները բնագիտության համար միշտ էլ հիմք են մնալու (В. Гейзенберг, философские проблемы атомной физики, И. Л., 1958, стр. 38): Նման տարակուսանք օբյեկտիվ մասնիկների մասին մենք տեսնում ենք ժամանակակից որոշ ֆիզիկոսների մոտ։ Կրկնելով ֆիզիկոսների պոզիտիվիստական դատողություններն ու եզրակացությունները, նրանք խորացնում և աղավաղում են քվանտային տեսության օբյեկտիվ բովանդակությունը։ Վ. Շնելը փորձում է հաստատել, որ տարրական մասնիկները մեր սուբյեկտիվ ապրումներն են, նրանց ռեալության մասին խոսք լինել չի կարող։ Ֆիզիկան այլևս չի խոսում նրանց ռեալ հարաբերությունների մասին, այն խոսում է միայն մասնիկների արտահայտման մասին (տե՛ս ф. Т. Архипуев, материя как философская категория, 1963, стр. 251):

Նեոպոզիտիվիզմը միկրոօբյեկտները չի դիտում որպես օբյեկտիվ ռեալություններ, նրանց գոյությունը կամ պայմանավորում է գործիքով, այսինքն՝ սուբյեկտով, կամ համարում մտքի կոնցեպտներ, մաթեմատիկական սիմվոլներ, կամ հայտարարում, որ դրանք գոյություն չունեն։ Այն ժամանակ հարց է առաջանում՝ հապա միկրոաշխարհով զբաղվող ֆիզիկոսներն ի՞նչ են ուսումնասիրում, ո՞րն է նրանց հետազոտման առարկան, ինչպե՞ս են իրենց հետազոտությունների արդյունքներն օգտագործում հասարակության պրակտիկ կյանքում։

Գիտական փաստ է, որ ոչ մի անջրպետ չկա միկրոաշխարհի և մակրո-
աշխարհի միջև, դրանք մատերիայի տարբեր կողմերն են։ Ֆիզիկոսները
միկրոմասնիկներից կազմված մակրոգործիքներով ուսումնասիրում են միկ-
րոօբյեկտները։ Այստեղ խոսքը ոչ թե օբյեկտիվ մասնիկների, այլ միայն
միկրոմասնիկի և փորձարարական գործիքի փոխազդեցության ատրիճանի
մասին է, այն մասին, թե վերջինս ինչ ազդեցություն է գործում օբյեկտիվ,
այդ գործիքից անկախ մասնիկի վրա։ Հասկանալի է, որ այդ փոխազդեցու-
թյան ժամանակ գործիքը կարող է փոխել մասնիկի հատկության որոշ կող-
մեր, արգելակել նրա լրիվ դրսևորմանը։ Սակայն դրանից չպետք է եզրակաց-
նել, որ մասնիկները և նրանց հատկությունները օբյեկտիվ ռեալություն չեն։
Մատերիայի լենինյան սահմանումը ֆիզիկոսներին օգնում է միկրոօբ-
յեկտները դիտել որպես մատերիայի ձևեր, օբյեկտիվ ռեալություն։

Չնայած բնագիտության հսկայական քայլերին, ֆիզիկայի ճգնաժամն
այժմ ավելի է սրվել, նոր ձև ընդունել։ Բուրժուական աշխարհում մեծ թվով
բնագետներ փորձում են կրոնը հաշտեցնել գիտության հետ։ Բացի այդ, գի-
տության բնագավառում հանդես է եկել հակառակ տենդենց։ Բուրժուական աշ-
խարհի շատ բնագետներ համոզվում են, որ բնագիտական նվաճումները ձեռք
են բերվում հակառակ իդեալիզմի։ Գնալով թուլանում է պոզիտիվիզմի ազ-
դեցությունը բնագետների վրա։ Պոզիտիվիզմի քննադատությամբ հանդես են
գալիս և այն բնագետները, որոնք նախկինում բաժանել են այդ տեսակետը։
Դը Բրոյլը, Մ. Բոռնը, Ժ. Վաժելը, Ժ. Վիժեն, Լ. Յանոշին և ուրիշներ ոչ միայն
համաձայն չեն Բորի և Հայզենբերգի բացատրություններին, այլև էական քայ-
լեր են անում հաղթահարելու միջուկային ֆիզիկայի տեսություններում տեղ
գտած դժվարությունները։ Այդ կապակցությամբ Շրենդիգերը իրավացիորեն
գրում է. «Ինչո՞ւ համար է այդ էքսպերիմենտալ անհանգստությունը, եթե
մենք չենք կարող գործ ունենալ իսկական, ռեալ տվյալների և փաստերի
հետ, եթե մենք գործ ունենք միայն երևակայական տվյալների հետ (տե՛ս
Х. М. Фаталиев. Диалектический материализм и вопросы естество-
знания, М., 1958, стр. 24)։ Գիտնականը ճիշտ է ընդգծում, որ ֆիզիկոս-
ները գործ ունեն ո՛չ միայն դիտման արդյունքի, այլև իրականության առար-
կաների ու երևույթների իրական վիճակի և հատկությունների հետ։

Գիտնականների տարերային և գիտակցաբար հեռացումը պոզիտիվիզմից
արդյունք է բնագիտության օբյեկտիվ բովանդակության և նեոպոզիտիվիզմի
մեկնաբանման միջև առաջացած խոր կոնֆլիկտի։ Այստեղ ոչ պակաս դեր է
խաղում նրանց ստեղծագործական կապը սովետական գիտնականների հետ։

Ն. Բորը, ակադեմիկոս Վ. Ա. Ֆոկի հետ ունեցած զրույցներից հետո, հան-
դես եկավ մի հոդվածով, ուր ձևակերպումներով մոտենում է քվանտային մե-
խանիկայի հիմնական դրույթների մատերիալիստական մեկնաբանմանը։ Նա
առաջ է քաշում մատերիալիստական տեսակետը այն մասին, որ մեր դիտողու-
թյան ձևերը կախված են մատերիայի հատկություններից։ Բորը նկատեց, որ
ատոմային երևույթների նկարագրությունն ունի օբյեկտիվ բնույթ և անկախ է
ճանաչող դիտողից (տե՛ս Квантовая физика и философия (причинность
и дополнительность) М., вып. 3, стр. 80)։

Բուրժուական երկրների բնագետները տարերայնորեն կամ գիտակցաբար
կանգնելով մատերիալիզմի դիրքերում, միշտ չէ, որ համաձայնում են նրա
բոլոր դրույթներին։ Այդ անհամաձայնությունը բխում է այն բանից, որ չիմա-



նալով կամ չընդունելով դիալեկտիկական մատերիալիզմը, նրանք այն նույ-
նացնում են մեխանիկական-մետաֆիզիկական մատերիալիզմին։ Լենինը
նկատել է, որ դիալեկտիկան չգիտենալը անխուսափելիորեն տանում է դեպի
իդեալիզմ։

Կապիտալիստական երկրների շատ ֆիզիկոսներ մատերիան խառնում են
նրա առանձին օբյեկտիվ հատկությունների և ձևերի հետ։ Մատերիայի հան-
գեցումն իր կոնկրետ ձևերին դժվարացնում է նոր փաստերի ճիշտ մեկնաբա-
նումը։ Մատերիայի փիլիսոփայական կատեգորիան չի կարելի խառնել նրա
մի ձևի կամ հատկության հետ. «մատերիայի միակ «հատկությունը»,— նշում
է Լենինը,— որի ճանաչման հետ կապված է փիլիսոփայական մատերիալիզ-
մը, օբյեկտիվ ռեալություն լինելու, մեր գիտակցությունից դուրս գոյություն
ունենալու հատկություն է» (Երկեր, հ. 14, էջ 346—347)։

Այն հարցը, թե որպես օբյեկտիվ ռեալություն, գոյություն ունի՞ ատոմ,
էլեկտրոն, պրոտոն, մեզոն և այլն, թե՞ կախված է մեր գիտակցությունից՝
փիլիսոփայական հարց է, որը լուծվում է կոնկրետ գիտությունների տված
փաստերի հիման վրա։ Իսկ այն, թե այդ մասնիկները ինչպիսի հատկություն-
ներ ու կառուցվածք ունեն և այլն, ֆիզիկայի խնդիր է։

Երբ հայտնագործվեց էներգիայի և մասսայի փոխադարձ կապը, էլեկ-
տրոնները և պոզիտրոնները ֆոտոնների փոխակերպվելը և այլն, նորից աշ-
խուժացավ իդեալիզմը։ Իդեալիստները չարախնդում էին, հուսալով, որ վեր-
ջապես ֆիզիկայի նոր հայտնագործություններում «մատերիան չքանում է»,
«ստեղծվում է ոչնչից»։ Անգլիական աստղագետ Ֆ. Խոյլը երկար ժամանակ
հաստատում էր, որ մատերիան ստեղծվում է։ Ատոմները, որոնցից կազմ-
ված է մատերիան, որոշ ժամանակ գոյություն չի ունենում, իսկ ավելի ուշ
նորից սկսում է գոյություն ունենալ (В. С. Готт, Д. Ф. Притурин, О
несотворимости и неуничтожимости материи М., 1967, стр. 6)։

Այն կարծիքը, թե մատերիան «ստեղծվում է ոչնչից» կամ նույնանում է
մասսային, ոչինչը նույնական է մատերիային, պարզապես իդեալիստական
դատողություն է։

Միայն դիալեկտիկական մատերիալիզմն է հետևողական, գիտական ուս-
մունք, որը մեծագույն ծառայություն է մատուցել և մատուցում է բնագիտու-
թյանը, այն հարստանում է գիտության նոր փաստերով, հնարավորություն
ընձեռում ճիշտ կողմնորոշվելու բնության բարդ երևույթների ըմբռնման և
իմաստավորման մեջ։ Չէ՞ որ մատերիալիզմի ելակետը մարդկությունից և
իմացությունից անկախ հավերժ շարժվող, հավերժ զարգացող մատերիան է։
«Մատերիալիզմը,— նշում է Լենինը,— հանդիսանում է միակ հետևողական
փիլիսոփայությունը հավատարիմ բնական գիտությունների բոլոր ուսմունք-
ներին, թշնամի՝ նախապաշարմունքներին, կեղծ բարեպաշտությանը» (Երկեր,
հ. 19, էջ 4)։

Լ. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՆԵՈՄԱԼԹՈՒՍԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՊԱՇՏՊԱՆ

Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող գաղափարական պայքարն ընդգրկում է սոցիալական իրականության բոլոր կողմերը։ Մոնոպոլիստական կապիտալը դիմում է ամեն միջոցի հավերժացնելու մասնավոր ձեռնարկատիրությունը, շուկայական տարերքը։

Կապիտալիզմի ջատագովները ձգտում են վարկաբեկել կոմունիզմի գաղափարները, զրպարտել մարքս-լենինյան ուսմունքը, գունազարդել կապիտալիզմը և դրանց միջոցով ապակողմնորոշել աշխատավոր մասսաներին, նրանց հեռու պահել դասակարգային պայքարից։

— Պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ,— ասված է կուսակցության XXIII համագումարին տված ՍՄԿԿ ԿԿ-ի հաշվետու զեկուցման մեջ,— անհաշտ պետք է լինի բոլոր դեպքերում, որովհետև այդ դասակարգային պայքար է, պայքար մարդու համար, նրա արժանապատվության և ազատության համար, սոցիալիզմի և կոմունիզմի դիրքերի ամրապնդման համար, դա պայքար է միջազգային բանվոր դասակարգի շահերի համար (տե՛ս ՍՄԿԿ ԿԿ-ի XXIII համագումարի նյութերը, էջ 136—137)։

Կապիտալիզմի վարձու պաշտպաններից են ժամանակակից մալթուսականները, որոնց հակագիտական տեսությունները մի նպատակ են հետապնդում՝ բոլոր մեթոդներով արդարացնել կապիտալիստական հասարակարգը։ Որպես գլխավոր տեսական փաստարկ, մալթուսականները սովորաբար օգտագործում են ազգաբնակչության արագ աճը։ Եթե XX դարի սկզբին աշխարհում բնակվում էր 1 մլրդ 608 մլն, ապա 1968 թ. սկզբին բնակչության թիվը կազմել է 3 մլրդ 420 մլն մարդ։ Դեմոգրաֆները հաշվել են, որ 2000 թ. երկրի վրա բնակվող մարդկանց թիվը կկազմի 6 մլրդ 280 միլիոն։

Կառչելով բնակչության բացարձակ թվի ավելացումից, ժամանակակից մալթուսականները տեսականորեն «հիմնավորում» են մոլորակի աճող գերբնակեցվածության մասին իրենց տխրահռչակ կոնցեպցիան։

Զարաշահելով բնակչության արագ աճի իրական փաստը, ժամանակակից մալթուսականներն այն աղավաղված ձևով են մեկնաբանում, սոցիալ-տնտեսական երևույթների հետազոտումը փոխարինում բիոլոգիական պրոցեսների



ուսումնասիրությամբ։ Պատահական չէ, որ վերջին ժամանակներս ազգաբնակչության պրոբլեմներին նվիրված աշխատություններ են գրել հայտնի կենսաբաններ Ս. Դարլինգտոնը, Ջ. Հակսլին, Կուկը, էնտոմոլոգ (միջատաբան) Վ. Ֆոխտը, գենքիմիկ Գ. Բրաունը, ֆիզիկոս Չ. Գ. Դարվինը (մեծ գիտնական Չ. Դարվինի թոռը) և ուրիշներ։

Բնակչությունը դիտելով բիոլոգիական էակների ամբողջության մեջ, կտրված նրա սոցիալ-տնտեսական էությունից, ժամանակակից մալթուսականներն այն համարում են հասարակական զարգացման գլխավոր գործոն։

Դեռ անցյալ դարում բազմիցս փորձեր արվեցին բնության օրենքները մեխանիկորեն տարածել մարդկային հասարակության վրա։ Օգտագործելով Դարվինի սխալը, որն ազգաբնակչության մասին մալթուսական «ուսմունքը» ոչ-քննադատաբար փոխադրեց օրգանական աշխարհի ոլորտը, սոցիալ-դարվինիստները կատարեցին հակառակը։ Ղեկավարվելով քաղաքական բնույթի նկատառումներով, նրանք գոյության կռվի դարվինյան դրույթը մեխանիկորեն տեղափոխեցին հասարակական հարաբերությունների բնագավառը։ Այսպիսով, դարվինյան ուսմունքի խոցելի կողմերն առիթ հանդիսացան սոցիալ-դարվինիզմի ռեակցիոն ուսմունքի ձևավորման համար։

Սոցիոլոգիայի այդ ուղղության նախահայրերը եղան կապիտալիստական հասարակարգի այնպիսի պաշտպաններ, ինչպիսիք են՝ Լանգեն, Օ. Ամոնը, Հ. Սպենսերը և ուրիշներ։ Սոցիոլոգիայում, հասարակության, այսպես կոչված՝ օրգանական տեսության հեղինակ, անգլիական բուրժուական գիտնական Հ. Սպենսերը կապիտալիստական կարգը հռչակում էր հավիտենական, որպես բնության օրենքների գործողության բնական արդյունք։ Սպենսերի կարծիքով մարդկային հասարակության մեջ տեղի են ունենում նույն կարգի պրոցեսներ, ինչպես կենդանական և բուսական աշխարհում՝ գոյության կռիվ, բնական ընտրություն և այլն։ «Բնական օրենքի» ներգործությամբ են ստեղծվում իշխող և շահագործվող դասակարգերը։ Նա պրոլետարիատի հեղափոխական պայքարը բուրժուազիայի դեմ հայտարարեց բոլորովին ավելորդ, հակաբնական։ Ավելին, Սպենսերը գտնում էր, թե բիոլոգիական տեսակետից իբր գոյություն ունեն լիարժեք և ոչ լիարժեք ժողովուրդներ։ Սպենսերյան մարդատյաց ռասայական տեսությունն իր հետագա զարգացումը ստացավ իմպերիալիզմի, հատկապես կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի շրջանում։ Բուրժուական այդ ռեակցիոն գաղափարախոսությունը ուղղված էր առաջադիմական ուժերի, բանվոր դասակարգի քաղաքական ակտիվության, սոցիալիստական գաղափարների լայն տարածման դեմ։

Նման մտքեր արտահայտել է սոցիալ-դարվինիզմի մյուս ներկայացուցիչ, գերմանական ռեակցիոն սոցիոլոգ Օտտո Ամոնը։ 1895 թ. հրապարակած Հասարակական կարգը և նրա բնական հիմքը գրքում, ինչպես և մի շարք այլ աշխատություններում, Ամոնը ձգտում էր բիոլոգիական հիմնավորում տալ սոցիալական անհավասարությանը։ Նա ձգտում էր ապացուցել «բարձր» և «ցածր» ռասաների գոյությունը մարդկային հասարակության մեջ հակագիտական դրույթը։ Ըստ նրա «բարձր» ռասային են պատկանում շահագործող դասակարգը և... գերմանական ազգը, իսկ «ցածր» ռասային՝ աշխատավորները, մյուս ազգերն ու ժողովուրդները։ Ամոնի բացահայտ շովինիստական բարբաջանքը «արիական ռասայի» առավելությունների մասին, նրան դարձրին գերմանական ֆաշիզմի ռասիստական գաղափարախոսության նախորդը։

Ռասիզմի նորահայտ գովերգուները ԱՄՆ-ի համաշխարհային տիրապե-

տության արտաքին քաղաքականությունն արդարացնելու նպատակով, լայնորեն պրոպագանդում են ուրիշ ազգերի նկատմամբ ամերիկյան ազգի գերազանցության տխրահռչակ դոկտրինան։ Գիտությունից ու բանականությունից հեռու մտայնությունն առնչվում է, այսպես կոչված՝ «էլիտայի» տեսությանը, որը սոցիալ-դարվինիզմի տարատեսակն է։ Այդ ուղղության ներկայացուցիչներ Միլերոնը, Բրեն լյա Վալետը և ուրիշներ պնդում են, թե որոշ բիոլոգիական պրոցեսների շնորհիվ գոյանում է «հասարակության ընտրյալ շերտ», էլիտա, որը տարբերվում է մնացածներից «իր խելքի, բնավորության և այլ ընդունակությունների առավելությամբ», և այդ իսկ պատճառով բնական իրավունք ունի ղեկավարելու հասարակությանը։ Աշխատավորական լայն մասսաների գիտակցությունը բթացնելու, դասակարգային հասկացողությունները նենգափոխելու, սոցիալական անհավասարություններն արդարացնելու նպատակով մոնոպոլիստական կապիտալի գրչակները օգտագործում են այդ մտացածին տեսությունները։

Պրոպագանդելով մարդկանց գենետիկորեն անհավասար արժեք ունենալու մասին կեղծ թեորիան, ռեակցիոն բուրժուական սոցիոլոգները նրա մեջ դնում են ռասսայական բովանդակություն։ «Մոնոպոլիստական կապիտալը ծնում է ֆաշիզմի գաղափարախոսություն՝ ծայրահեղ շովինիզմի և ռասիզմի գաղափարախոսություն...— ասված է ՍՄԿԿ ծրագրում։— Իմպերիալիստական ռեակցիան շովինիզմը և ռասիզմը լայնորեն օգտագործում է ազգային և ռասսայական կոնֆլիկտներ բորբոքելու, ամբողջ ազգությունների ու ժողովուրդների (հակասեմիտիզմ, նեգրերի, թույլ զարգացած երկրների ժողովուրդների ռասսայական խտրականություն), աշխատավորների դասակարգային գիտակցությունը մթագնելու, պրոլետարիատին և նրա դաշնակիցներին դասակարգային պայքարից շեղելու համար» (ՍՄԿԿ-ի ծրագիրը, էջ 62, 63)։

Բիոլոգիզմի դիրքերից մարդկային հասարակության զարգացման օրինաչափությունների մալթուսական մեկնաբաններից կարելի է նշել նաև բուրժուական դեմոգրաֆներ Ջինիին, Ֆիշերին, Պերլին, տնտեսագետներ՝ Պենդելին, Լոտկին, Բրաունին և ուրիշների։

Բուրժուական աշխարհում հայտնի իտալական դեմոգրաֆ Կ. Ջինին առաջ քաշեց բնակչության ցիկլային աճի «տեսությունը»։ Ըստ նրա մարդկային հասարակությունը զարգանում է նույնպիսի երեք շրջանից բաղկացած ցիկլային պարբերությամբ, ինչպես անհատը։ Առաջին շրջանը բնութագրվում է արագ աճով, երկրորդը՝ դանդաղ, բայց այստեղ անհատը հասնում է զարգացման լիակատար ծաղկման, վերջապես, երրորդը՝ ծերացման շրջանն է։ Ջինիի կարծիքով նույնանման է պատկերը մարդկային հասարակության մեջ։ Առաջինում, քանի դեռ հասարակությունը երիտասարդ է և բարդ չէ սոցիալական կառուցվածքով, բնորոշ է բնակչության թվական արագ աճը, որովհետև յուրաքանչյուր նոր սերունդ առաջանում է այնպիսի մարդկանցից, որոնք բեղմնառատ են ժառանգականությամբ (N. Thompson, Population problems, N. I. and L. p. *36*)։

Բնակչության քանակական աճը տեղի է ունենում հասարակության հետագա առաջադիմության և կատարելագործման պայմաններում, որն արտահայտվում է սոցիալական դասակարգերի զարգացման, ինդուստրացման,



առևտրի ընդլայնման և այլնի մեջ։ Այդ ժամանակաշրջանում ըստ Ջինիի տեսության, սկսվում է զգացվել բնակչության խտության ճնշումը, որի ելքը պատերազմներն են, գաղութակալական էքսպանսիան կամ դրանց միաժամանակ երևան գալը։

Հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքը երրորդ փուլում բարդանում է։ Այս շրջանում բնակչության աճը զգալիորեն դանդաղում է, մասամբ պատերազմների, գաղութացման ժամանակ առաջացած կորուստների հետևանքով, մասամբ էլ շնորհիվ բարձր դասակարգերի տեսակարար կշռի ավելացման, որոնք ավելի քիչ են բեղմնառատ, քան ստորինները (տե՛ս N. Thompson, Population problems, p. *36*)։ Ըստ նրա, հենց այս կարգով է տեղի ունենում մարդկային հասարակության զարգացումը։

Հասարակական զարգացման նման սխեմա է առաջարկում բիոլոգիական ուղղության մի այլ ներկայացուցիչ, ամերիկյան տնտեսագետ Պենդելը։ Նա ևս պնդում է, թե պատմական զարգացման ընթացքը պայմանավորվում է բիոլոգիական էվոլյուցիայով և ունի ցիկլային բնույթ։ Ընդ որում, Պենդելն առաջարկում է հասարակական ցիկլային զարգացման իր «սեփական» սխեման՝ զարգացման սկիզբ, ծաղկման ժամանակաշրջան և, վերջապես՝ քաղաքակրթության անկում։ Այս երեք ժամանակաշրջաններին համեմատ տեղի են ունենում բնակչության քանակական և որակական փոփոխությունները։

Գտնելով, որ մարդկային հասարակության զարգացման հիմքում ընկած են զուտ բնական պրոցեսները, որոնք ծագում և գործում են տնտեսական ու սոցիալական գործոններից դուրս, Պենդելը եզրակացնում է, թե հասարակության սոցիալ-տնտեսական պատմությունը որոշվում և պայմանավորվում է նրա բիոլոգիական բնույթով։ Այսպիսով, Պենդելը, Ջինիի նման, հրաժարվում է վերլուծել հասարակական զարգացման իրական օրինաչափությունները, հաշվի չի առնում բնակչության աճի կարևորագույն և որոշիչ պայմանը՝ նյութական բարիքների արտադրաեղանակը։ Նրանք երկուսն էլ անտեսում են սոցիալ-տնտեսական և պատմա-հասարակական պրոցեսները, հասարակական կյանքի բազմազանությունը պարփակում իրականությունից կտրված և մտացածին սխեմաների մեջ։ Ի դեպ, սխեմատիզմը բուրժուական սոցիոլոգիական մտքի բնորոշ հատկանիշներից է։

Այս տեսություններին շատ մոտ է կանգնած անգլիական սոցիալ-դարվինիստ Ս. Դարլինգտոնի ուսմունքը։ Լիովին բաժանելով սոցիոլոգիայի մեջ բիոլոգիական ուղղության կողմնակիցների տեսակետը, Դարլինգտոնն իր «Կյանքի փաստերը» (տե՛ս C. Darlington, The Facts of Life, L, *1953*) գրքում տալիս է հասարակական զարգացման մի սխեմա, որը, սակայն, իր ընդհանուր գծերով քիչ է տարբերվում նախորդներից։ Տարբերությունը միայն այն է, որ, եթե Ջինին և Պենդելն իրենց նատուրալիզմը հրամցնում են փոքր-ինչ քողարկված ձևով, ապա Դարլինգտոնի ուսմունքում հասարակական կյանքի բիոլոգիական բացատրությունը ո՛չ միայն քողարկվում, այլ ավելի ցցուն է դառնում։ Նա գտնում է, որ մարդկային հասարակության զարգացման հիմքում ընկած են գեները, այսինքն՝ ժառանգականության նյութերը, որոնք և, վերջին հաշվով, բնորոշում են պատմական զարգացման ընթացքը։ Այս է նրա «գենետիկական դետերմինիզմի տեսության» էությունը։ Դարլինգտոնը կոպիտ կերպով խեղաթյուրում է իրականությունը, ճգնում է համոզել, թե նույնիսկ սոցիալական դասակարգերի միջև եղած տարբերություններն ունեն գենետիկական ծագում և «հիմնված են գենետիկական նյութականության

վրա, որը նույնքան արդյունավետ է, որքան տնտեսական նյութականությունը շուկայում» («Коммунист», 1956, № 7, стр. 67)։

Ավելին, նա Կ. Մարքսին մեղադրում է հասարակական երևույթների բացատրության գործում բիոլոգիական գործոնի դերը անտեսելու, բնակչության և դասակարգային պայքարի մասին իր ուսմունքում այդ գործոնը բացառելու մեջ։ Նման սոցիոլոգիական մեկնաբանությամբ, որտեղ, հասարակական պրոցեսների գնահատման մեջ պարզ արտահայտվում է բիոլոգիզմը, հանդես են գալիս և բուրժուական այլ գիտնականներ. անգլիական ֆիզիկոս Չարլզ Գ. Դարվինը, ամերիկացիներ Ռ. Կուկը, Գ. Բրաունը, Ջ Բոնները և ուրիշներ։

Մի քիչ այլ կերպ և յուրատեսակ է մեկնաբանում ազգաբնակչության պրոբլեմը հայտնի ամերիկյան տնտեսագետ-դեմոգրաֆ Պերլը։ Լինելով Սպենսերի «բնակչության օրգանական տեսության» կողմնակիցը և մոլի պաշտպանը, Պերլը կատարելագործում է այդ տեսությունը մաթեմատիկական հաշվարկումների օգնությամբ։ Ամբողջ մարդկային պատմությունը դիտելով որպես մեկ բիոլոգիական օրգանիզմի մեխանիկական փոխարկումը մյուսին, Պերլը ազգաբնակչության օրենքները նմանեցնում է կենդանական աշխարհի բազմացման օրենքներին։ Իր տեսակետի ապացուցման համար նա տվյալներ է բերում դրոժային սունկի, ճանճերի, հավերի վրա կատարած էքսպերիմենտներից և համեմատության միջոցով ջանում է ապացուցել, որ բիոլոգիական նման պրոցեսներ կատարվում են նաև բնակչության հետ։ Էքսպերիմենտ կատարելով սահմանափակ միջավայրում (կաթնա-ագառային լուծույթով սրվակի մեջ) Պերլը եզրակացնում է, որ ճանճերի բեղմնավետության պատճառը ուղղակի կախում ունի «միջավայրի պաշտպանունակությունից», այսինքն՝ գոյամիջոցների առկայությունից։ Նրա խոր համոզմամբ նման երևույթներ տեղի են ունենում և մարդկային հասարակության մեջ։

«Պերլի էքսպերիմենտները ճանճերի բեղմնավետությունը որոշելու վերաբերյալ... որոշ չափով նման են աշխարհի բնակչության աճի սահմանափակ թվով դիտարկումների հետ»,— ազգաբնակչության մասին գրում են ժողովածուի ամերիկյան հեղինակները, ջանալով որևէ կերպ մեղմացնել գիտնականի կատեգորիկ հետևությունները։

Պերլի կարծիքով բնակչության փոփոխման ու կենսունակության վրա (ինչպես նեղ բիոլոգիական իմաստով, այնպես էլ մարդկային գործունեության ավելի ընդհանուր հարցերում) անդրադարձող գլխավոր գործոնը խտության պատճառն է։ Այսպիսով, թեպետ Պերլն իրեն օրթոդոքս մալթուսական չի համարում, բայց, ըստ էության, տուրք է տալիս քահանա Մալթուսին, եզրակացնելով, թե ազգաբնակչության շարժումը պայմանավորվում է գոյամիջոցների սահմանափակությամբ, որը փաստորեն կարգավորում է բազմացումը։

Բայց միայն դրանով չի սահմանափակվում Պերլի և Մալթուսի հայացքների նմանությունը։ Ջանալով ամեն բանում նմանվել (բայց ոչ կրկնել) իր նախորդին, Պերլը փորձ է անում դիմել մաթեմատիկայի օգնությանը և թվական բարդ մանիպուլյացիաների միջոցով սահմանել բնակչության աճի, այսպես կոչված՝ «մաթեմատիկական կորագիծը»։

Ո՞րն է այդ բուրժուական գիտնականների շրջանում աղմուկ հանած «օրենքի» էությունը, որից կառչում են ժամանակակից մալթուսականները։

Պերլի և նրա գործակից Ռիդի «լոգիստիկական կորագիծը» հիմնված է մաթեմատիկական աբստրակտ վերլուծության վրա։

Հիմք ընդունելով դիֆերենցիալ հավասարումը և պահպանելով ֆունկցիոնալ անալիզի մի քանի պայմաններ, Պերլը դուրս է բերում կորագիծ, որի աճը վերին մի որոշ սահմանի մոտենալուն համեմատ դանդաղում է և այնտեղից անցնելն անհնարին է դառնում։ Այդ կորագիծը նա անվանում է «լոգիստիկական կորագիծ» և պնդում, թե կենդանի օրգանիզմների աճը և զարգացումը, ներառյալ բնակչությանը, ընթանում են կորագծին հատուկ ցիկլով. սկզբում դանդաղ, ապա առավելագույն տեմպերով աճ, ապա անկում, աճի ընդհատում։

Մաթեմատիկային դիմելու գործում Մալթուսի և Պերլի տարբերությունն այն է, որ եթե առաջինն իր տեսությունն առավել համոզիչ դարձնելու և գիտական բնույթ տալու համար դիմեց թվաբանության օգնությանը, երկրորդը ներխուժեց բարձրագույն մաթեմատիկայի բնագավառը և, մանիպուլյացիա անելով, բարդ դիֆերենցիալ հավասարումներով, փորձեց դուրս բերել բնակչության աճի մաթեմատիկական օրենք։

Սակայն պերլյան «լոգիստիկական կորագիծը», ինչպես և իր ժամանակին մալթուսյան պրոգրեսիաները, չարտահայտեցին բնակչության շարժման մեջ եղած իրական փոփոխությունները։ Պերլին և Ռիդին պետք եղավ շատ փոփոխություններ մտցնել իրենց հավասարումների մեջ, ուղղել «կորագիծը» և այն համապատասխանեցնել բնակչության աճի իրական տվյալներին։

Այսպիսով, ինչպես մալթուսյան պրոգրեսիաները, այնպես էլ պերլյան «լոգիստիկական կորագիծը» անհիմն, անկենդան, մտացածին սխեմաներ էին։ Ազգաբնակչության պրոբլեմի վերլուծության ժամանակ այնպիսի կարևոր որոշիչ գործոնների անտեսումը, ինչպիսիք են նրա աճի ու փոփոխությունների սոցիալ-տնտեսական պայմանները, անխուսափելիորեն հանգեցնում է նման սխոլաստիկ, ոչ գիտական հետևությունների։

Պերլյան «էքսպերիմենտը» պիտանի չէ ո՛չ միայն մարդկային հասարակության, այլև կենդանական ու բուսական աշխարհի համար, քանի որ օրգանական աշխարհը զարգանում է ո՛չ թե արհեստականորեն ստեղծված սահմանափակ միջավայրում, այլ բնական պայմաններում, որտեղ բոլոր գործոնների լայն համագործակցություն է տեղի ունենում. և որտեղ, փոխհարաբերությունն արտաքին միջավայրի հետ, վերջին հաշվով, որոշիչ դեր է խաղում օրգանիզմների զարգացման և նրանց բազմացման մեջ։

Պերլը հիշեցնում է Մալթուսին ո՛չ միայն հայացքների և մեթոդի նմանությամբ, այլև օտար, թեկուզ և արատավոր գաղափարների միատեսակ յուրացման եղանակներով։ Կ. Մարքսը «Կապիտալ»-ում շոշափելով Մալթուսի հենց այս գիծը, զայրույթով նրա մասին գրեց, որ Մալթուսն ընդհանրապես գրագողության վարպետ է (բնակչության նրա ամբողջ տեսությունն անխիղճ գրագողություն է)։ Մի այլ տեղ նա գրում է. բնակչության օրենքի մասին աշխատության առաջին հրատարակությունը, եթե մի կողմ թողնենք նրա զուտ դեկլամատորական մասը, համարյա ամբողջությամբ արտագրված է Ստյուարտից, ինչպես և քահանաներ Ուոլեսից և Տաունսենդից։

Այդ կապակցությամբ հետաքրքրական է նշել, որ Պերլը «լոգիստիկական կորագիծը» փոխ առավ բելգիացի Վերխուլստից, որը դեռ անցյալ դարի կեսերին առաջարկեց օգտագործել մաթեմատիկորեն վեր հանած իր «լոգիստիկական» կոչվող կորագիծը՝ բնակչության աճը ցույց տալու համար։ Ամերիկյան դեմոգրաֆ Վանսը գրում է. «Աճի այս վերլուծությունը... առաջին անգամ առաջարկել է Վերխուլստը 1845 թ. լոգիստիկական կորագծի մեջ...» (The Study of Population, p. 297)։

Այսպիսով, Պերլը, Մալթուսի նման, կատարեց գրագողություն, յուրացնելով վերխուլստյան «լոգիստիկական կորագիծը» ազգաբնակչության պրոբլեմների բնագավառում բնակչության իր տեսությունը հայտարարեց լրիվ և ավարտուն։ Փոքր-ինչ ձևափոխված մալթուսականությունն իր արտահայտությունը գտավ Պերլի, այսպես կոչված՝ բիոմետրիկական դպրոցում, որը փոխարինելով Մալթուսի երկրաչափական և թվաբանական պրոգրեսիաներին, փորձեց մաթեմատիկական բանաձևերով ապացուցել, թե օրգանական աշխարհում ամեն ինչ, սկսած ճանճից և վերջացրած ազգաբնակչությամբ, բազմանում են մաթեմատիկական օրենքներով։ Թեպետ Պերլն ու Ռիդը «լոգիստիկական կորագիծը» համարում են բնակչության աճի ունիվերսալ օրենք, սակայն այդ դպրոցի մի քանի ներկայացուցիչներ պերլյան կորագիծը գտան չկատարելագործված և զբաղվեցին նրա շտկման և լրացման հարցերով։

Բնակչության պերլյան տեսության անհաջողակ «լրացնողներից» է ամերիկացի Դոնալդ Կուգիլը, որն իր Բնակչության աճի ցիկլերի տեսությունը աշխատության մեջ փորձեց տալ ազգաբնակչության աճի ցիկլերի ծավալուն սխեման։ Ելակետ ընդունելով ծննդի և մահացության նորմաների փոփոխականությունը և այն դիտելով տարբեր կապակցություններում, Կուգիլը բնակչության աճի ցիկլերի չորս հնարավոր տարբերակ է տեսնում։ Առաջին ցիկլում ծննդի նորման մնում է հաստատուն, իսկ մահացությանը՝ սկզբում իջնում է, ապա աճում։ Երրորդ ցիկլում տեղի է ունենում հակառակ պրոցես։

Նույն ոգով, միայն ծնելության ու մահացության նորմաների ուրիշ կապակցություններով է պատկերացվում երկու այլ ցիկլ ևս։ Այսպիսով, բնակչության շարժումը դիտելով որպես ցիկլային պրոցես, Կուգիլը հանգում է այն մտքին, թե Պերլի «լոգիստիկական կորագիծը» չորս ցիկլերից մեկն է, որը և տալիս է բնակչության աճի կորագիծը։

Սակայն որքան էլ Կուգիլն ջանաց արագացնել պերլյան «լոգիստիկական կորագիծը», նրա տակ դնելով բնակչության աճի իր ցիկլային տեսությունը, այդ փորձը հաջողություն չունեցավ։ Դա բացատրվում է, առաջին հերթին՝ նրանց ընդհանուր հակագիտական մեթոդոլոգիական կոնցեպցիայով, որը հիմնված է սոցիալ-տնտեսական բնույթի երևույթների և պրոցեսների բիոմետրիկական վերլուծության, բիոլոգիական օրենքները հասարակական հարաբերությունների բնագավառը խցկելու փորձի վրա։ Մինչդեռ, այդ պրոբլեմի բիոլոգիական կողմը միայն մարդկանց գոյության և վերարտադրության ընդհանուր պայմանն է և ուրիշ ոչինչ։

«Լոգիստիկական կորագծի», ինչպես և «ցիկլերի տեսության» անհիմն, անկենսունակ լինելը կայանում է նրանում, որ այդ կոնցեպցիայի հեղինակները ազգաբնակչության պրոբլեմի վերլուծության ժամանակ ելնում էին բնակչության տոտալ քանակությունից, անտեսելով դեմոգրաֆիական պրոցեսների յուրահատկությունները։ Վերլուծությունը կատարում էին առանց հաշվի առնելու բնակչության վերարտադրության սեռա-տարիքային կառուցվածքը, ամուսնության աստիճանը և այլն։ Պարզ է, որ նման մոտեցմամբ երևույթները չեն կարող ճիշտ գնահատվել, որը, ի դեպ և պատահեց պերլյան «լոգիստիկական կորագծի» հետ։ Այսպես, Պերլի և Ռիդի աստյմները բնակչության անցյալ տարիների դինամիկայի մասին արդեն չէին համապատասխանում իրականությանը, էլ չխոսենք ապագա աճի գնահատականի մասին, քանի որ «լոգիստիկական կորագծի» տվյալների համադրումը փաստական դեմոգրաֆիական ցուցանիշների հետ բացահայտում էր «խոր դեմոգրաֆիական տարբերություններ» (The Study of Population, p. 298)։



Այս բոլորը վկայում են, որ Պերլի, Կուգիլի, ինչպես և բիոմետրիկական շկոլայի մյուս ներկայացուցիչների տեսությունն անառարկայական է, ոչ-գիտանի։ Նա ճիշտ պատասխան չի տալիս այն հարցին, թե ինչն է ընկած դեմոգրաֆիական պրոցեսների հիմքում և որն է բնակչության շարժման գործոնը։

Չբավարարվելով ազգաբնակչության պրոբլեմի միայն տեսական «դրույթներով», ժամանակակից մալթուսականներն ավելի հաճախ են պրակտիկ հետևություններ անում. նրանք փորձում են, օրինակ, սահմանել մարդկանց օպտիմալ թիվը, որոնք կուշտ և հարմարավետ կարող են ապրել այս «աղքատացող մոլորակի» վրա։ Նեոմալթուսականները գտնում են, որ հարյուրավոր միլիոն մարդիկ «ավելորդ» են երկրագնդի վրա և դրանով իսկ մերժում նրանց ապրելու իրավունքը։ Դժվար չէ կռահել, որ «ավելորդների» ցուցակում նրանք, առաջին հերթին, նշում են աշխատավորությանը, այսպես կոչված՝ «երրորդ աշխարհի» բնակչությանը, սևամորթներին։

Պենդելն «ավելորդների» թիվն է դասում 700 միլիոն մարդ, իսկ ամերիկյան նեոմալթուսականներ Պիրսոնի և Խարպերի հաշվումներով երկրագնդի վրա իրավունք ունի ապրելու միայն 900 միլիոն մարդ։ Ֆոգտն ավելի հեռու է գնում. նրա կարծիքով երկրագնդի վրա պետք է մնան միայն 500 միլիոն մարդ։ Ահա ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայի բացարձակ ռեակցիոն ուղղության ներկայացուցիչների պրակտիկ առաջարկությունները։

Կատարելով մոնոպոլիստական կապիտալի սոցիալական պատվերը, ժամանակակից մալթուսականները հորինում են ամեն հնարավոր «տեսություններ» և «ուսմունքներ» կապիտալիստական կարգերի պաշտպանման և արդարացման, իմպերիալիզմի խոցերը ծածկելու համար։ Զթուլացվող համառությամբ նրանք շարունակում են ժողովրդական մասսաներին ներշնչել, որ ո՛չ թե կապիտալիստական սիստեմն է իր անլուծելի հակասություններով հանդիսանում աշխատավորների աղքատության ու թշվառության, շահագործման ու գաղութային ստրկության, պատերազմների ու միլիտարիզացիայի պատճառը, այլ մարդկային բեղմնավետությունը։

Ժամանակակից մալթուսականների բոլոր «նոր» դրույթներում և տեսական հաշվարկումներում ոչ մի նոր և ինքնատիպ բան չկա։ Ամենուրեք նկատվում է նույն մալթուսական ծամծմված քարոզն այն մասին, որ իբր թե երկրագունդը գերբնակեցված է, սննդամթերքները չեն բավարարում, ուստի, անհրաժեշտ է ամեն կերպ կրճատել բնակչությունը, քանի որ աշխատավորական մասսաների թշվառ վիճակի հիմնական պատճառը բարձր ծնելիությունն է։

Նրանք շարունակում են պնդել, թե բնակչության աճը զուտ բիոլոգիական պրոցես է, որը բնավ կախված չէ սոցիալ-տնտեսական պայմաններից։ Նույն խոսքերը, փաստարկումները, հետևությունները, որոնք մոտ 200 տարի առաջ բերել է Թոմաս Մալթուսն իր Փորձ ազգաբնակչության օրենքի մասին գրքում։

Այսպիսով, ժամանակակից մալթուսականության գաղափարախոսությունն աշխատավորության աղքատության, սովի և գործազրկության ջատագովումն է, սոցիալական անհավասարության, գաղութատիրության և պատերազմների, մասսայական ոչնչացման միջոցների կիրառման արդարացումը։ Այն հակագիտական, ռեակցիոն տեսություն է, ուղղված սոցիալական առաջադիմության, հումանիզմի ու դեմոկրատիայի դեմ։

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԻՎԱՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԴԻՐ

Հ. Ց. ԼԻԼՈՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

Կապիտալիստական հասարակության ջատագովների համար Լենինի գաղափարները այսօր պակաս սարսափելի ու վտանգավոր չեն, քան նրա կենդանության օրերին: Նրանք մեծ ջանքեր են թափում, որպեսզի ամեն կերպ վարկաբեկեն լենինիզմը, արատավորեն ու խեղաթյուրեն լենինյան հայացքները արտաքին քաղաքականության և միջազգային հարաբերությունների հարցերում, նսեմացնեն դրանց նշանակությունը ժամանակակիցների համար: Պակաս ճիգեր չեն գործադրվում, որպեսզի միանգամայն խեղաթյուրված ներկայացվի նաև Լենինի պրակտիկ գործունեությունը սովետական պետության արտաքին քաղաքականության ղեկավարման բնագավառում:

Ներկայումս արտասահմանում մեծածավալ «հետազոտություններ» են հրապարակվում նվիրված «ռուսական արտաքին քաղաքականության» հարցերին: Այդ «աշխատություններից» մեկում ամերիկյան սովետագետների մի խումբ, քննելով սովետական արտաքին քաղաքականության հիմունքները, ապարդյուն փորձեր է անում ապացուցելու, թե, իբր, կոմունիստները արտաքին քաղաքականության հարցերին նվիրված տեսություն ընդհանրապես չունեն: «Մարքսի համար,— համարտակում է ամերիկյան մի սոցիոլոգ,— արտաքին քաղաքականությունը ոչ մի արժեք չուներ»: Այստեղից հետևություն է արվում, թե նույն բանը վերաբերում է նաև Մարքսի հետևորդներին:

Մշակելով սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության տեսական հիմունքները, ձևակերպելով դրանց կարևորագույն սկզբունքները ու նպատակները, Լենինը ամբողջովին հենվում էր Մարքսի ու Էնգելսի առաջ քաշած հայացքների ու դրույթների վրա: Մարքսը բազմիցս ընդգծել է, որ բանվոր դասակարգը պետք է ունենա ու կիրառի ինքնուրույն միջազգային քաղաքականություն: Նման քաղաքականություն վարելը գիտական կոմունիզմի



հիմնադիրները դիտում էին որպես սոցիալական ազատագրության համար բանվոր դասակարգի մղած պայքարի կարևորագույն միջոցներից մեկը:

Գիտական կոմունիզմի կարևորագույն ծրագրային փաստաթղթերից մեկը՝ *Բանվորների միջազգային ընկերության սահմանադիր մանիֆեստը (1864 թ.)* պրոլետարիատին կոչ էր անում տիրապետել միջազգային քաղաքականության գաղտնիքներին, հետևել իրենց կառավարությունների դիվանագիտական գործունեությանը և անհրաժեշտության դեպքում իր տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով հակազդել նրա վրա, անհնարինության դեպքում կանխել այդ գործունեությունը, միավորվել դրա միաժամանակյա մերկացման համար և հասնել այն բանին, որպեսզի բարոյականության և արդարության հասարակ օրենքները, որոնցով իրենց փոխհարաբերություններում պետք է առաջնորդվեն անհատ անձիք, բարձրագույն օրենքներ դառնան նաև ժողովուրդների հարաբերությունների միջև (տե՛ս **К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 16, стр. 11**):

Զարգացնելով Մարքսի ու Էնգելսի մտքերը, Լենինը դեռևս մինչև 1917 թ. հոկտեմբերը բազմիցս ընդգծել է, որ բանվոր դասակարգի կուսակցությունը կոչված է համակողմանիորեն վերլուծելու պետությունների ո՛չ միայն ներքին, այլև արտաքին քաղաքականությունը, բացահայտելու նրա դասակարգային էությունը և պատմական օբյեկտիվ բովանդակությունը: Լենինը մատնանշել է, որ կոմունիստների կուսակցության համար կենսական անհրաժեշտություն է բուրժուա-կալվածատիրական արտաքին քաղաքականության ծրագրին հակակշիռ ունենալ բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գիտական սկզբունքների արմատական շահերն արտահայտող արտաքին քաղաքականության և դիվանագիտության մեր սեփական պրոլետարական պլատֆորմը:

Նախահեղափոխական ժամանակաշրջանում Լենինի գրած՝ *Իմպերիալիզմը՝ որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին, Սոցիալիստական հեղափոխությունը և ազգերի ինքնորոշման իրավունքը, Ռուսական հեղափոխության արտաքին քաղաքականությունը* և այլ աշխատություններում քննության են առնվել սոցիալիստական պետության արտաքին քաղաքականությանը վերաբերող կարևորագույն պրոբլեմները:

Որո՞նք են Լենինի մշակած սոցիալիզմի արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքները:

Հենվելով Մարքսի ու Էնգելսի աշխատությունների վրա, միջազգային թատերաբեմում ստեղծագործորեն ընդհանրացնելով դասակարգային պայքարի փորձը, Լենինն առաջ քաշեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, ցույց տվեց դրա՝ որպես միջպետական փոխհարաբերությունների սկզբունքի, նոր դերը, բացահայտեց բուրժուական նացիոնալիզմի հանդեպ նրա անհաշտելիությունը, մշակեց բանվոր դասակարգի քաղաքականության մեջ ազգայինի և ինտերնացիոնալիզմի փոխհարաբերության հարցը. «...պրոլետարական ինտերնացիոնալիզմը պահանջում է, նախ՝ մի երկրում պրոլետարական պայքարի շահերը ենթարկել այդ պայքարի ընդհանուր շահերին համաշխարհային մասշտաբով. երկրորդ՝ բուրժուազիայի դեմ հաղթանակն իրագործող ազգից պահանջում է հանուն միջազգային կապիտալի տապալման մեծագույն ազգային զոհաբերությունների դիմելու ընդունակություն և պատրաստակամություն» (Երկեր, հ. 31, էջ 170):

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը բանվոր դասակարգի ազգային

բոլոր ջոկատներում փոխադարձ աջակցություն և համերաշխություն է պահանջում։ Միևնույն ժամանակ այն աներևակայելի է առանց համաշխարհային հեղափոխության շարժման յուրաքանչյուր առանձին ջոկատի, յուրաքանչյուր կոմունիստական կուսակցության, յուրաքանչյուր սոցիալիստական պետության ինքնուրույնության և իրավահավասարության սկզբունքների հարգման ու պահպանման։

Մոսկովյան խորհրդակցությունում ընկ. Բրեժնևը ասաց. «Իմպերիալիստները լավ են հասկանում միջազգային պրոլետարական համերաշխության ամբողջ ուժը։ Հենց դրա համար էլ սոցիալիզմի ուժերի դեմ, հեղափոխական շարժման դեմ իրենց պայքարում նրանք հույսը դնում են նացիոնալիզմի վրա։ Նրանք ակնկալում են այդ ճանապարհով տարանջատել, մասնատել կոմունիստական շարժումը, հեղափոխական ջոկատները հակադրել միմյանց։

Բուրժուական պրոպագանդան ամեն կերպ փորձում է զրպարտել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, այն արհեստականորեն հակադրել բանվորական և կոմունիստական շարժման ազգային ջոկատների անկախության, սուվերենության և իրավահավասարության սկզբունքներին։ Այդ նպատակով իմպերիալիստական պրոպագանդիստները թխել և շրջանառության մեջ են դրել «սահմանափակ սուվերենության» տխրահռչակ տեսությունը։

Ինչ վերաբերում է մեզ՝ սովետական կոմունիստներիս, ապա մենք գտնում ենք, որ աշխարհում տիրող արդի իրադրությունը նոր ուժով հաստատում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան կոնցեպցիայի ճշմարտացիությունն ու կենսունակությունը»։

Սովետական պետությունը սկզբից ևեթ իր արտաքին քաղաքականության հիմքում դրեց այնպիսի համադեմոկրատական սկզբունքներ, ինչպիսիք են՝ իրավահավասարությունը, պետական ամբողջականության հարգումը, անկախությունն ու սուվերենությունը, ուրիշ երկրների ներքին գործերին չմիջամտելը։

Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում կապիտալիստական աշխարհի հետ սոցիալիստական պետության փոխհարաբերության պրոբլեմին։ Նա ձևակերպեց և գիտականորեն հիմնավորեց տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը։

«Կապիտալիստական աշխարհի երկրների հետ սովետական պետության հարաբերությունների հիմքում ընկած է տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության Վ. Ի. Լենինի հիմնավորած սկզբունքը, ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը մոսկովյան խորհրդակցությունում։ Այդ սկզբունքը նշանակում է, որ երկրների միջև ծագող վեճերի հարցերը պետք է լուծվեն ո՛չ թե զենքի ուժով, ո՛չ թե պատերազմով, այլ խաղաղ ճանապարհով։ Այդ սկզբունքն արդեն լայն միջազգային ճանաչում է ստացել։

Խաղաղ գոյակցությունը չի տարածվում գաղափարախոսությունների պայքարի վրա, սա պետք է ընդգծել ամենայն վճռականությամբ։ Դրա հետ միասին այն չի հանգեցնում պարզապես սոցիալիստական և կապիտալիստական պետությունների միջև պատերազմի բացակայության։ Խաղաղ գոյակցության սկզբունքի պահպանումը նաև ավելի լայն հնարավորություններ է բացում նրանց հարաբերությունների զարգացման համար»։

Հիմնավորելով խաղաղ գոյակցության սկզբունքը, Լենինը ելնում էր սո-



ցիալիստական հասարակարգի ոչ միայն բնույթից ու էությունից, որը բնական օրինաչափությամբ խաղաղություն է հաստատում աշխարհում, այլև անխուսափելիությամբ պատերազմ հրահրող իմպերիալիզմի էությունից։ Նկատի ունենալով իմպերիալիզմի ագրեսիվ էությունը, նա խաղաղ գոյակցության գաղափարը կապում էր ո՛չ թե դրա որևէ փոփոխության, այլ այնպիսի պրոցեսների ու տենդենցների զարգացման հետ, որոնք նպաստում են սոցիալիստական հեղափոխության ծավալմանը, նրա հաղթանակին մի շարք երկրներում։ Խոսքը վերաբերում է, Լենինի արտահայտությամբ՝ «...պրոլետարիատի դիկտատուրան ազգայինից (այսինքն՝ մի երկրում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականությունը որոշելու անընդունակ դիկտատուրայից) միջազգայինի (այսինքն՝ առնվազն մի քանի առաջավոր երկրների պրոլետարիատի դիկտատուրա, որն ընդունակ լինի վճռական ազդեցություն ունենալու ամբողջ համաշխարհային քաղաքականության վրա) վերածելու խնդրին» (Երկեր, հ. 31, էջ 169—170)։

Լենինի այս հանճարեղ կանխատեսումը ևս իրականացավ։ Համաշխարհային երկրորդ իմպերիալիստական պատերազմից հետո սոցիալիստական հեղափոխությունը հաղթանակեց Արևելյան Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում, կազմավորվեց սոցիալիստական երկրների համաշխարհային լագերը, որն այսօր դարձել է համաշխարհային զարգացման վճռական գործոնը։ Պատմական անհրաժեշտության օրենքով, բոլշևիկներին վիճակվեց վարելու երկրի կառավարման պատասխանատու և բարդ գործը։ Սովետների համառուսաստանյան II համագումարը պատմական որոշումներ ընդունեց, որոնք սևեռվեցին հողի, խաղաղության մասին դեկրետներում։ Թափանցելով տասնամյակի խորքերը, Լենինը կանխատեսում էր, որ սոցիալիստական պետությունը հարկադրված կլինի, չդադարեցնելով դասակարգային անհաշտ պայքարը, մի որոշ շրջան կողք-կողքի ապրել ոչ-սոցիալիստական պետությունների հետ, չզիջելով գաղափարական-սկզբունքային դիրքերը։ Գոյակցել— նշանակում է պաշտպանել ու զարգացնել պետական կապերը։ Իսկ դրա համար անհրաժեշտ է այդպիսի կապերն իրականացնելու ունակ, որակավորված արտաքին քաղաքական ապարատ։

Բոլշևիկները նոյեմբերյան հեղաշրջման երկրորդ օրը վերջ տվին գաղտնի դիվանագիտության։ Ցարական արտաքին գործերի մինիստրության ֆոնդերից առանձնացվեցին և հրապարակվեցին (յոթ ժողովածուներում) ցարական կառավարության ու նրա բուրժուական պարտնյորների հափշտակիչ էությունն առավել վառ բացահայտող փաստաթղթերը։ Դա կատաղի վայնասուն առաջացրեց թշնամիների ոհմակում։ Օտարերկրյա դեսպանները հայտարարեցին, որ եթե բոլշևիկները հրապարակեն գաղտնի փաստաթղթերը, ապա նրանք կդադարեցնեն ամեն տեսակ հարաբերությունները Ժողկոմսովետի հետ։ Սակայն այդ սպառնալիքները զուր անցան։

Չնայած բազում դժվարություններին, դիվանագիտական նոր ապարատն ամրապնդվում էր, նորանոր և պատասխանատու պարտականություններ ստանձնում։ Այդ կարճ, բայց ծանր շրջանում ռազմա-հեղափոխական կոմիտեն գործարար ֆունկցիաներ էր իրականացնում— կապեր հաստատում տարբեր երկրների հետ, արտասահմանյան հասարակայնությանը ինֆորմացիաներ ներկայացնում սովետական պետության միջոցառումների և մեր երկրում կատարվող իրադարձությունների մասին, կազմակերպում դիվանա-

գիտական սուրհանդակների ծառայությունը։ Արտասահման գործուղվեցին սովետական առաջին դիվանագետները։

Արտաքին գործերի ժողովրդական կոմիսարիատը Լենինի անմիջական և անընդմեջ ղեկավարությամբ իրականացնում էր արտաքին քաղաքականության գերատեսչության խնդիրները։ Այդ պատասխանատու պոստում աչքի ընկավ արտաքին գործերի առաջին ժողկոմ Գ. Վ. Չիչերինը, որի գործունեությունը լայն ճանաչում ստացավ։

Լենինը, որպես կառավարության ղեկավար, առավել ուշադրություն էր նվիրում էկոնոմիկայի, ներքին քաղաքականության, պաշտպանության, ընթացիկ հարցերին։ Սակայն նա անդադրում զբաղվում էր նաև սովետական արտաքին քաղաքականության խնդիրներով։ Գ. Վ. Չիչերինը, Լ. Մ. Կարախանը, Մ. Մ. Լիտվինովը, Լ. Բ. Կրասինը, Ա. Ա. Իոֆֆեն և արտգործժողկոմի այլ պատասխանատու անձիք Լենինի հետ անձնական նամակագրական կամ հեռախոսային անընդմեջ կապերի մեջ էին։ Այդ տարիների փաստաթղթերին ծանոթանալիս այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ սովետական հանրապետության արտաքին քաղաքականության գերատեսչությունը Լենինի աշխատասենյակին կից էր։

Արտասահմանյան այս կամ այն կառավարությանը ներկայացվող որևէ նոտա առանց Լենինի կարդալու, հարկ եղած դեպքում նաև ուղղման, չէր ուղարկվում։ Սովետական ոչ մի պատասխանատու դիվանագետ չէր գործուղվում արտասահման, առանց լենինյան նշգրիտ, հստակ դիրեկտիվների։ Լենինը սովետական դիվանագիտության աշխատողներից, բացի գիտելիքների մեծ պաշարից, հեռատեսությունից, կայունությունից, պահանջում էր նաև կոմունիստական սկզբունքայնություն։



իմնադրելով սովետական դիվանագիտությունը, Լենինը մեծ ուշադրություն է դարձրել նրա ծառայության կազմակերպմանը, մասնակցել այդ հարցերին նվիրված խորհրդակցություններին։ 1918 թ. հունիսի 4-ին ժողկոմսովետը Լենինի ստորագրությամբ դեկրետ հրապարակեց դիվանագիտական ներկայացուցիչների աստիճանի վերացման մասին։ Սովետական կառավարությունն այդ քայլով միջազգային հարաբերություններում իրականացրեց մեծ և փոքր ազգությունների լիիրավ հավասարության սկզբունքը։ Հայտնի է, որ իմպերիալիստական տերությունները կախյալ երկրներում առավել ցածրաստիճան ներկայացուցիչներ էին նշանակում, քան այլ պետություններում։ Օրինակ, նրանք Չինաստան էին ուղարկում ոչ թե դեսպաններ, այլ դեսպանորդներ։ Դիվանագիտության աստիճանի մասին լենինյան դեկրետը սովետական ներկայացուցիչների համար սահմանեց դեսպանին հավասար լիազոր ներկայացուցիչ միասնական կոչումը։ Միաժամանակ, սովետական կառավարության հավատարմագրված բոլոր երկրների ներկայացուցիչները, անկախ իրենց աստիճանից, դիտվում էին որպես հավասար լիազոր ներկայացուցիչներ։ Ընդգծելով Վլադիմիր Իլյիչի դիվանագիտական ակնառու տաղանդը, Չիչերինը գրել է. «Երբ արտասահմանյան պետությունների դիվանագիտությունը, հարյուրամյակների ընթացքում ձեռք բերած իրեն ներհատուկ վարպետությամբ, գեղեցիկ խոսքերի կույտով, զգացմունքներով կամ ընդունված պնդումներով քողարկում էր գործերի իրական վիճակն ու իր ձգտումները, Վլադիմիր Իլյիչը հակիրճ խոսքերով այդ ամենն աղբա-



կույտի էր վերածում, խոսակցի աչքի առջև սփռելով կենդանի իրականության մերկ, ռեալ փաստերը։ Հենց այդ էլ նրան դարձնում էր քաղաքականություն վարելու անկրկնելի վարպետ և արտասահմանյան դիվանագիտության լավագույն վարպետների ահեղ հակառակորդ»։

Լենինը բարձր էր գնահատում Գ. Վ. Չիչերինին, որը 1918 թ. հունվարից ստանձնել էր արտաքին գործերի ժողկոմի պարտականությունները և հաճախակի նրա հետ քննարկում էր առավել կարևոր դիվանագիտական քայլերի մանրամասները։ Ընդգծելով Լենինի քաղաքական անկրկնելի ռեալիզմը, Չիչերինը գրել է. «Անմիջապես ըմբռնելով յուրաքանչյուր հարցի էությունը և մեկեն ամենալայն քաղաքական լուսաբանումը տալով նրան, Վլադիմիր Իլյիչն իր զրույցների ընթացքում հասնում էր դիվանագիտական իրավիճակի ամենափայլուն վերլուծության ու նրա խորհուրդները (որ շատ անգամ հենց տեղն ու տեղն էր տալիս), մյուս կառավարությանը ուղղած պատասխան տեքստը կարող էին դիվանագիտական արվեստի ու ճկունության օրինակ ծառայել»։

Դիվանագիտական նոր ծառայության աշխատանքում Լենինը, ամենից առաջ, պահանջում էր պետական գործունեությունը կուսակցության գործունեության հետ զուգակցելու կարողություն։

«Մի՞թե որևէ մեկը չի նկատել երբևիցե, որ նման միացումն այնպիսի մի ժողկոմատում, ինչպիսին արտգործժողկոմատն է, շատ մեծ օգուտ է տալիս և գործադրվում է հենց նրա սկզբից» (Երկեր, հ. 33, էջ 590)։

Սովետական դիվանագիտության կազմակերպիչը՝ Վ. Ի. Լենինը, սովետական պետության արտաքին քաղաքականության ծրագրային կարևորագույն փաստաթղթերի հեղինակն էր։ Դրանից առաջինը, որն ընդունվեց սովետների համառուսաստանյան II համագումարում, խաղաղության մասին դեկրետն էր։ Խաղաղության մասին գեկուցման մեջ և դեկրետում առավել զարգացում ստացան ժողովուրդների միջև բարեկամության ձգտման, ազգությունների իրավահավասարության ճանաչման, բոլոր պետությունների անկախության, սոցիալիստական առաջին պետության և կապիտալիստական երկրների աշխատավորների միջև պրոլետարական համերաշխության վրա հիմնված լենինյան՝ բոլորովին նոր տիպի միջազգային հարաբերությունների սկզբունքները, հուշակվեցին սովետական դիվանագիտության բացահայտ, ազնիվ մեթոդները, ստեղծվեցին բոլշևիկյան կուսակցության և սովետական կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականության հիմքերը։

Բրեստի հաշտության պայմանագրի համար մղվող պայքարի ընթացքում Լենինը փայլուն դրսևորեց ականավոր դիվանագետի իր ունակությունները։ Բանակցությունների ընթացքում նա խորապես ներթափանցում էր դրանց հանկարծական փոփոխությունների մեջ, արագ ելք գտնում ամենաբարդ իրավիճակներում և սովետական պատվիրակությանը հուշում անլուծելի թվացող շատ բարդությունների լուծման ուղիները։ Ամենևին չանտեսելով մեր ծանր վիճակի փաստը և զիջողություններ անելու անհրաժեշտությունը,— հիշում է Գ. Վ. Չիչերինը,— Վլադիմիր Իլյիչը միշտ հետևում էր, որ պահպանվի մեր պետության արժանապատվությունը և կարողանում էր գտնել այն սահմանը, որտեղ պետք էր հաստատակամ լինել։

Բրեստի հաշտության կնքումը սովետների երիտասարդ երկրի համար սոցիալիզմի նվաճումների պահպանման անհրաժեշտ քաղաքական կոմպրոմիսի օրինակ էր։ Այդ ակտում երևան եկավ Լենինի դիվանագիտական ողջ ճկունությունը, նրա հանճարեղ քաղաքական խորաթափանցությունն ու սկզբունքայ-

նությունը: Լենինը կանխատեսում էր գերմանական իմպերիալիզմի ռազմական հզորության շուտափույթ փլուզումը, դրա հետ մեկտեղ նաև Բրեստի կողոպտչական պայմանագրի վերացումը: Եվ իրոք, կես տարի չանցած, նոյեմբերյան հեղափոխությունը Գերմանիայում հնարավորություն ընձեռեց սովետական կառավարությանը չեղյալ հայտարարելու Բրեստի պայմանագիրը, մեկ անգամ ևս հաստատելով Լենինի քաղաքական հեռատեսությունը, լենինյան արտաքին քաղաքականության ճշմարտացիությունն ու հանճարեղությունը:

Սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության խնդիրների լենինյան մոտեցման մեջ կյանքից կտրված դոկտրինյորության, ծառացած խնդիրների հանդեպ որևէ դոգմատիկ կամ շաբլոն վերաբերմունքի հետք անգամ չկար: Նա ելնում էր այն բանից, որ սոցիալիստական պետության արտաքին քաղաքականությունը միաժամանակ գիտություն է և արվեստ. «որ քաղաքականությունն ավելի նման է հանրահաշվին, քան թվաբանությանը, և է՛լ ավելի բարձրագույն մաթեմատիկայի, քան տարրականին» (Երկեր, հ. 31, էջ 111—112):

Լենինը սովորեցնում էր, որ սովետական պետության արտաքին քաղաքականությունն ու դիվանագիտությունը շատ բանով շաղկապվում է կապիտալիստական աշխարհի անխուսափելի հակասությունների օգտագործման հետ, ընդ որում, բացառված չէ նաև կոմպրոմիսների անհրաժեշտությունը, ուստի և իմպերիալիստական երկրների հետ սոցիալիստական շահերին ծառայող որոշակի համաձայնությունները: Տրոցկիստների, բուխարինականների, այսպես կոչված՝ բանվորական օպոզիցիայի լիդերների հարձակումներին ի պատասխան, որոնք ավանտյուրիստների և ճամարտակողների դիրքերից կապիտալիստական երկրների հետ համաձայնության դեմ էին արտահայտվում, Լենինը ծաղրանքով հարցնում էր. «Գուցե հեղինակները կարծում են, թե միջազգային հեղափոխության շահերն արգելո՞ւմ են որևէ հաշտություն իմպերիալիստների հետ: «Նման հայացքների ճիշտ չլինելը ակնբախ է: ...Իմպերիալիստական տերությունների շրջապատում սոցիալիստական հանրապետությունը չէր կարող տնտեսական որևէ պայմանագիր կնքել, չէր կարող գոյություն պահպանել, չթռչելով լուսնի վրա» (Երկեր, հ. 27, էջ 65—66):

Մեր պետության ողջ պատմությունը հարուստ է սոցիալիստական դիվանագիտության սկզբունքները պրակտիկայում հաջողությամբ կիրառելու այնպիսի օրինակներով, ինչպիսիք են՝ Բրեստ-Լիտովսկու հաշտության պայմանագիրը, Ջենովայի կոնֆերանսը, 1922 թ. Ռապալլոյի պայմանագիրը, Քերզոնի ուլտիմատումի առթիվ ՍՍՀՄ կառավարության դիրքը (1923 թ.), Մեծ Բրիտանիայի հետ դիվանագիտական հարաբերությունների վերաբերյալ համաձայնագիրը (1924 թ.), իսկ ավելի ուշ՝ սովետա-գերմանական պայմանագիրը չհարձակվելու մասին (1939 թ. օգոստոս), հակահիտլերյան կոալիցիայի կազմակերպումը, Թեհրանի և Յալթայի համաձայնագրերը և այլն:



ովետական դիվանագետներին և պետական ապարատի մյուս աշխատողներին Լենինը համառորեն և անխոնջ սովորեցնում էր, ելնելով սոցիալիստական երկրների շահերից, հմտորեն առևտուր անել կապիտալիստների հետ:

Երբ 1920 թ. հուլիսին անգլիական կառավարության հետ բանակցություններ էին վարում՝ անգլո-սովետական առևտրական ու քաղաքական համաձայնության և սովետական կառավարության ճանաչման վերաբերյալ, Լենինը հուլիսի 9-ին քաղբյուրոյի անդամներին գրեց. Առաջարկում եմ Կրասինին և ողջ պատվիրակությանը դիրեկտիվ տալ, որ «պինդ լինեն ու բանակցության ժամանակավոր ընդմիջումից չվախենան»: Մեկ օր անց, նա Կամենևին ու Չիչերինին գրում է. Անգլիայի հետ բանը միայն առևտուր անելու մեջ է. Անգլիա պետք է ուղարկել միայն «վաճառականի». տալիս են $2\frac{1}{4}$ կոպեկով, սակարկիր $1\frac{3}{4}$ կոպեկի համար:

Լենինը մոնոպոլիստների հետ բանակցելիս պահանջում էր առևտրական խիստ արագամտություն ցուցաբերել: Նա գտնում էր, որ կոմունիստական դիվանագետները անհրաժեշտության դեպքում պետք է հասկանան բիզնեսը:

Լենինը մասնակցում էր արտաքին քաղաքականության ուղղությամբ ձեռնարկվող միջոցներին, որի նպատակն էր կանխել իմպերիալիստական տերությունների միացյալ ինտերվենցիան: Կապիտալիստական երկրների հետ նորմալ հարաբերություններ ստեղծելու կարևորագույն ուղիներից մեկը կարող էր լինել առևտրատնտեսական խաղաղ հարաբերությունների ստեղծումը: 1918 թ. ապրիլի 22-ին Լենինն ստորագրեց արտաքին առևտրի ազգայնացման վերաբերյալ ժողկոմսովետի դեկրետը, որը ուժի մեջ դրվեց դրա հրապարակումից անմիջապես հետո և արտաքին առևտրի պետական մոնոպոլիայի նախաշավիղը դարձավ:

Լենինն արտաքին առևտուրը դիտում էր իբրև սոցիալիզմի կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարի բաղկացուցիչ մաս և ժողովրդի կենսական շահերի ապահովման միջոց:

Կոմունիստական կուսակցությունը դիվանագետների մի սքանչելի համաստեղություն է ստեղծել ու դաստիարակել, սովետական սոցիալիստական դիվանագիտության դպրոց հիմնել: Նա հոգացողաբար պահպանում ու զարգացնում է սովետական դիվանագիտության ղեկավարման լենինյան ոճն ու մեթոդները: Սովետական Միության արտաքին քաղաքականության արմատական հարցերը սիստեմատիկաբար քննարկվում են կուսակցության համագումարներում, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումներում: Դրանք կուսակցության Կենտրոնական կոմիտեի ամենօրյա աշխատանքում կարևոր տեղ են գրավում:

Կոմունիստական և բանվորական միջազգային շարժումը, ողջ առաջադեմ մարդկությունը բացառիկ բարձր են գնահատում ՍՄԿԿ և սովետական կառավարության արտաքին քաղաքականության դերը: Այդ մի անգամ ևս հաստատեց 1969 թ. հունիսին Մոսկվայում կայացած կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունը:

Սովետական դիվանագիտությունը կեսդարյա լուրջ քննություն բռնեց: Այն կարողացավ, Լենինի խոսքերով ասած, իր սկզբունքներին, իր դասակարգին, իր հեղափոխական խնդիրներին հավատարիմ մնալ: Սովետական արտաքին քաղաքականությունն ու դիվանագիտությունը, վճռական պայքար մղելով իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի դեմ, հետևողականորեն վարելով սոցիալական տարբեր համակարգեր ունեցող երկրների հետ խաղաղ գոյակցության լենինյան կուրսը, նպաստում է մեր երկրի միջազգային դիրքերի հետագա ամրապնդմանը, խոշոր ավանդ ներդնում համընդհանուր խաղաղության ու ժողովուրդների անվտանգության, աշխատավոր մասսաների ազատության, խաղաղության և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի գործին:

---

# ԼԵՆԻՆԸ ՀԱՅԵՐԵՆ


Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


ՎԼԱԴԻՄԻՐ Իլյիչ Լենինը թողել է գաղափարական մեծ ժառանգու-
թյուն, որը սովետական ժողովրդի, միջազգային կոմունիստական
շարժման հարուստ գանձն է, հզոր զենքը կոմունիզմի կառուցման
համար մղվող պայքարում։ Իր տեսական և կազմակերպչական
բեղմնավոր գործունեության ընթացքում (1893—1923 թթ.) Վ. Ի. Լենինը գրել
է հարյուրավոր աշխատություններ՝ գիրք ու բրոշյուր, հազարավոր հոդվածներ,
նամակներ, հանդես է եկել բազմաթիվ զեկուցումներով և ճառերով։ Հրապա-
րակվել են լենինյան 11.500 աշխատություն։ Միայն Երկերի հինգերորդ հրա-
տարակության մեջ զետեղված են մոտ 9.000 աշխատություն, նամակ, հեռա-
գիր, վավերագիր, որոնցից 1.100-ը լույս են տեսել առաջին անգամ։ Լենինյան
աշխատությունները նշանավորում են մարքսիզմի զարգացման նոր, լենինյան
էտապը։ Լենինիզմը մեր դարաշրջանի մարքսիզմն է։

Վ. Ի. Լենինի աշխատությունները թնածում են աշխարհով մեկ։ Թարգմա-
նական գրականության մեջ դրանք գրավում են առաջին տեղը։ Յունեսկոյի
տվյալներով Վ. Ի. Լենինի աշխատությունները հրատարակվել են աշխարհի
ավելի քան 116 լեզուներով։ Սովետական իշխանության տարիներին Վ. Ի. Լե-
նինի երկերը ՍՍՀՄ-ում լույս են տեսել 100 լեզվով, մոտ 360 միլիոն օրինակ
տպաքանակով։ Վ. Ի. Լենինի աշխատությունները կարդում են աշխարհի բոլոր
ժողովուրդները։

I

ԼԵՆԻՆՅԱՆ գաղափարների տարածման գործում խոշոր դեր են խա-
ղացել հայերեն հրատարակությունները։ Դարասկզբին հայ հեղա-
փոխական մարքսիստները, անելով մարքսիստական գրականու-
թյան հրատարակության նախաքայլերը, սկիզբ են դնում Վ. Ի. Լե-
նինի աշխատությունների հայերեն թարգմանության շնորհակալ գործին։ Հա-
յերեն թարգմանությամբ առաջին անգամ լույս տեսած մեզ հայտնի լենինյան
գործերից են Միապետությունը տատանվում է...*, Ծանուցում «Կազմակերպիչ

* Լենինյան աշխատությունների վերնագրերը տրված են իր ժամանակի թարգմանությամբ։—
Խ. Բ.։



կոմիտե» կազմելու առթիվ հոդվածները, որոնք զետեղվել են ՌՍԴԲԿ կովկաս-
յան միութենական կոմիտեի օրգան «Պրոլետարիատի կռիվը» թերթի 1903 թ.
№ 2—3-ում՝ ապրիլ-մայիսյան միացյալ համարում։

Մերկացնելով ցարական ինքնակալությունը և նրա 1903 թ. փետրվարի
26-ի մանիֆեստը, Վ. Ի. Լենինը իր Միապետությունը տատանվում է... հոդ-
վածում նշում էր, թե ցարն արդեն զգում է, «...որ անդարձ անցնում են այն
ժամանակները, երբ Ռուսիայում կարող էր պահվել ասուծո ողորմածությամբ
կառավարությունը, որ Ռուսաստանում միակ հաստատուն կառավարությունը
այսուհետև կարող է լինել ժողովրդի կամքով կառավարությունը, (Երկեր, հ. 6,
էջ 435)։

1903 թ. մայիսին Ժնևում առանձին բրոշյուրով լույս տեսավ Վ. Ի. Լենինի
Գյուղական չքավորությանը աշխատությունը։ Ինչպես հայտնի է, Լենինի նպա-
տակն էր այստեղ գյուղացիներին հանրամատչելի ձևով բացատրել ՌՍԴԲԿ ագ-
րարային ծրագիրը։ Նա պատրաստել էր այդ բրոշյուրի պլանի մի քանի տար-
բերակ, առաջին տարբերակի մի քանի դիտողություններ, ինչպես նաև բրոշյու-
րի առանձին գլուխների պլանները։ Բրոշյուրի հավելվածում տրված էր ՌՍԴԲԿ
ծրագրի նախագծի տեքստը, որի համար ներածություն էր գրել Վ. Ի. Լենինը։

1904 թ. սկզբին Վ. Ի. Լենինի Գյուղական չքավորությանը աշխատությունը
թարգմանվեց հայերեն և հրատարակվեց ՌՍԴԲԿ Կենտկոմին կից Ժնևի հրա-
տարակչական հանձնաժողովի կողմից։ Վ. Ի. Լենինի այդ բրոշյուրը, մարքսիս-
տական այլ գրականության հետ մեկտեղ փոխադրվեց Կովկաս։ Այդ գործում
առանձնապես մեծ դեր խաղաց լեգենդար հերոս Կամոն՝ Սիմոն Արշակի Տեր-
Պետրոսյանը։

Նախասովետական շրջանում Լենինի աշխատությունների հայերեն թարգ-
մանությունն ու հրատարակությունն առանձնապես մեծ ծավալ են ստացել
ռուսական առաջին հեղափոխության տարիներին և Մեծ Հոկտեմբերի նախա-
պատրաստման և իրագործման ժամանակաշրջանում։ 1903—1917 թվականն
ընկած ժամանակամիջոցում բրոշյուրների, առանձին գրքերի, ինչպես նաև
բոլշևիկյան հայ պարբերական մամուլի էջերում առանձին հոդվածներով լույս
են տեսել Լենինի 28 աշխատություն։ Հենց միայն Ռուսական առաջին հեղա-
փոխության տարիներին ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի, ՌՍԴԲԿ
Թիֆլիսի, Բաքվի, Բաթումի, Ալեքսանդրապոլի և այլ կոմիտեների գաղտնի
տպարաններում հայերեն լույս են տեսել Վ. Ի. Լենինի մի շարք աշխատու-
թյուններ, այդ թվում՝ Հեղափոխական պրոլետարիատի դեմոկրատական
խնդիրները, Ծանուցում Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական
կուսակցության երրորդ համագումարի մասին, Պրոլետարիատի և գյուղացիու-
թյան հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի մասին և այլն։

Այդ տարիներին Վ. Ի. Լենինի գործերի հայերեն թարգմանության ու հրա-
տարակման ասպարեզում առանձնապես աչքի ընկնող դեր են խաղացել բոլ-
շևիկյան «Կայծ», «Նոր խոսք», «Օրեր» թերթերը, որոնք հրատարակվում էին
Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի (Տեր-Գասպարյանի) խմբա-
գրությամբ։

«Նոր խոսք» թերթը 1906 թ. օգոստոսի 31-ի համարում բոլշևիկյան «Պրո-
լետարի» թերթի № 1-ից թարգմանաբար արտատպել է Իլյիչի Փոթորկից առաջ
խորագրով հոդվածը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման և իրագործման տարիներին, Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարի ժամանակաշրջանում, ավելի ծավալվեցին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հայերեն հրատարակությունները։ Միայն 1918—1920 թթ. մամուլում և առանձին գրքերով հայերեն հրատարակվել են Վ. Ի. Լենինի 46 աշխատություն։ Առանձին գրքերով լույս տեսան՝ Նամակ ամերիկյան բանվորներին (Մոսկվա, 1918), Կարլ Մարքս: Համառոտ կենսագրություն և մարքսիզմի շարադրանքը (Մոսկվա, 1918), Ի՞նչ պետք է լինի մեր կուսակցության անունը (Մոսկվա, 1919), Երրորդ ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ (Մոսկվա, 1919), Թեզիսներ բուրժուական և պրոլետարական դեմոկրատիայի մասին (Մոսկվա, 1919), Միջին գյուղացիության մասին (Թիֆլիս, 1919), Պետություն և հեղափոխություն (Մոսկվա, 1920), Մեծ նախաձեռնություն (Մոսկվա, 1920), Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի ամենաբարձր փուլը (Մոսկվա, 1920) և այլ աշխատություններ։ Լենինյան շատ երկեր հրատարակվեցին պարբերական մամուլում, հատկապես ՌՍԴԲ(բ)Կ Երկրային և Թիֆլիսի կոմիտեների օրգան «Բանվորի կռիվը» թերթում։

Շուշու բոլշևիկյան կազմակերպության օրգան «Նեցուկ» թերթի 1917 թ. սեպտեմբերի 14-ի № 5-ում լույս տեսավ Վ. Ի. Լենինի Լոզունգների մասին (Լոզունգների առթիվ) հոդվածը, որը գրվել է 1917 թ. հուլիսի կեսին։ Լենինն իր այդ աշխատությամբ, հուլիսյան իրադարձություններից հետո, կուսակցությանը կոչ էր անում զինված ապստամբության։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանում լենինյան աշխատությունների հայերեն հրատարակությունները լուսավորեցին հայ աշխատավորության պայքարի ուղին։

1918 թ. լենինյան շատ աշխատություններ, նամակներ, դեկրետներ են տպագրվել Բաքվի կոմունայի «Տեղեկատու», «Կոմունիստ» (Մոսկվա), «Բանվոր» և այլ թերթերում։ «Բանվոր» թերթի 1918 թ. մարտի 8-ի № 7-ում հայերեն հրատարակվեց Վ. Ի. Լենինի՝ 1913 թ. դեկտեմբերի 6-ին ազգային հարցի առթիվ Ստ. Շահումյանին գրած նշանավոր նամակը։ Հայկական գործերի կոմիսարի տեղակալ, ՌՍՖՍՀ Կենտգործկոմի անդամ, ականավոր բանաստեղծ Վահան Տերյանը 1918 թ. հմտորեն թարգմանեց Վ. Ի. Լենինի Կարլ Մարքս, իսկ 1919 թ.՝ Պետություն և հեղափոխություն աշխատությունները։

Վ. Ի. Լենինի Պետություն և հեղափոխություն աշխատության թարգմանությամբ Վ. Տերյանը նոր ակոս ձգեց հայ քաղաքական-հեղափոխական թարգմանական գրականության, հատկապես լենինյան աշխատությունների հայերեն հրատարակությունների պատմության մեջ, հարստացրեց հայ հեղափոխական-մարքսիստական գրականության տերմինոլոգիան։

## II

ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո թարգմանված լենինյան առաջին գործը, դա Վ. Ի. Լենինի 1920 թ. դեկտեմբերի 2-ի պատասխան հեռագիրն էր՝ ուղղված Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեի նախագահ Ս. Կասյանին, որը լույս տեսավ «Կոմունիստ» (Բաքու), «Կարմիր աստղ» (Կրասնոդար), «Կարմիր աստղ» (Թիֆլիս), «Կոմունիստ»—«Խորհրդային Հայաստան» (Երևան) և այլ թերթերում։ 1920 թ. նոյեմբերի 29-ին հայ ժողովուրդը հասավ



իր բաղձալի արևածագին՝ Հայաստանի աշխատավոր բանվորներն ու գյուղացիները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ տապալեցին դաշնակների ատելի լուծը և երկրում հաստատեցին սովետական իշխանություն։ Արտահայտելով երախտապարտ հայ ժողովրդի միաձայն կամքը, Հայաստանի բոլշևիկները շնորհակալական առաջին խոսքն ուղղեցին իրենց մեծ ազատարարին՝ Վ. Ի. Լենինին։ Ի պատասխան դրան, Իլյիչը Հայաստանի Հեղկոմի նախագահին հեռագրել է.

«Հանձին ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Չեմ կասկածում, որ դուք կգործադրեք բոլոր ջանքերը՝ Հայաստանի, Թուրքիայի, Ադրբեջանի աշխատավորների միջև եղբայրական համերաշխություն հաստատելու համար։

Ժողովրդական Կոմիսարների սովետի նախագահ՝

Լենին»։

Վ. Ի. Լենինի ողջույնը թևավորեց Սովետական Հայաստանի աշխատավորությանը և մղեց աշխատանքային նորանոր սխրանքների։

1920 թ. ապրիլին ՌԿ(բ)Կ IX համագումարը որոշում ընդունեց Վ. Ի. Լենինի երկերը 20 հատորով (26 գրքով) հրատարակելու մասին։ Դա Իլյիչի աշխատություններն ի մի հավաքելու առաջին փորձն էր, որն իրականացվեց 1920—1926 թթ.։ Թեև Լենինի երկերի առաջին հրատարակությունը հայերեն չտպագրվեց, բայց այնտեղ զետեղված բազմաթիվ աշխատություններ թարգմանվեցին և առանձին գրքերով լույս տեսան։ Նույն թվականին բացի Պետություն և հեղափոխություն գրքից, Մոսկվայում հայերեն առանձին գրքերով լույս տեսան՝ Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի ամենաբարձր փուլը, Ռուսական հեղափոխությունը և բանվոր դասակարգի խնդիրը, իսկ Բաքվում՝ Մեծ նախաձեռնություն աշխատությունները։ Լենինյան մի շարք աշխատություններ և ճառեր հրատարակվեցին պարբերական մամուլում։

1921 թ. հունիսի 10-ի ՀՍԽՀ կառավարության դեկրետով ստեղծվում է առաջին պետական հրատարակչությունը՝ Պետհրատը (այժմ՝ «Հայաստան»), որը նոր թափ է հաղորդում գրահրատարակչական գործին։

«Հայաստան» հրատարակչությունը, որի երախայրիքը Կ. Մարքսի Վարձու աշխատանք և կապիտալ աշխատությունն էր, Ստ. Շահումյանի 1906 թվականի թարգմանությամբ, շուրջ կես դար է, ինչ արդյունավետ աշխատանք է կատարում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, հատկապես Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն տպագրության ու տարածման ուղղությամբ։ 1920-ական թթ. թարգմանվեցին և հրատարակվեցին լենինյան շատ ու շատ աշխատություններ, այդ թվում՝ «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, Նամակներ հեռվից, Հունվարի 9-ը, 1905 թվականը, Ազգային հարցը, Ի՞նչ անել, Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը, Մի քայլ առաջ, երկու քայլ ետ։

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների գործում մեծ դեր են խաղացել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուսպատմության ինստիտուտը, կուսհրատը, ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը։

1923 թ. մարտի 13-ին ՀԿԿ Կենտկոմը որոշում է ստեղծել կուսպատմության ինստիտուտ (կուսպատ), նրա վրա դնելով Հայաստանի հեղափոխական շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմության հարցերի ուսումնասիրությունն ու լուսաբանումը։ Շարունակելով նախահոկտեմ-

բերյան բոլշևիկյան հայ պարբերական մամուլի՝ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների հրատարակման ասպարեզում մինչ այդ ստեղծված լավագույն տրադիցիաները, կուսակցության ինստիտուտն իրականացնում է Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանությունն ու հրատարակությունը:

Մինչև 30-ական թթ. թարգմանվեցին և հայերեն հրատարակվեցին գլխավորապես Վ. Ի. Լենինի այն աշխատությունները, որոնք նվիրված են ռուսական երեք հեղափոխություններին, ազգային հարցին, նոր տնտեսական քաղաքականությանը, կոմերիտմիության խնդիրներին և այլ հարցերի:

Հայաստանի կոմկուսի VI համագումարի որոշմամբ լույս տեսան Վ. Ի. Լենինի երկերի ժողովածուի երկրորդ և երրորդ հրատարակության մի շարք հատորներ, այդ թվում՝ I, III, VI, VII, VIII, XXII, XXV , XXVII, ինչպես նաև Ընտիր երկերը՝ երկու և ապա վեց հատորով:

Վ. Ի. Լենինի երկերի երկրորդ հրատարակության առաջին հատորի հայերեն թարգմանությունը, որ կատարել են Պ. Սեբլյանը, Լ. Սեռվյանը, Թ. Ավդալբեկյանը, Մ. Գևորգյանը, Ց. Խանզադյանը, Ե. Տեր-Մինասյանը և Վ. Փոթեյանը (խմբագրել են Աշոտ Հախումյանը, Նշան Մակինցը, Պողոս Մակինցյանը, Աղասի Խանջյանի ընդհանուր խմբագրությամբ, իսկ տեխնիկական խմբագրությունը կատարել են՝ Նշան Մակինցը, Եղիշե Չարենցը և Երվանդ Տեր-Մինասյանը), լույս տեսավ Սովետական Հայաստանի 10-րդ տարեդարձին:

Ինչպես 1920 թ. Վ. Տերյանի թարգմանությամբ, Ա. Մյասնիկյանի և Պ. Մակինցյանի խմբագրությամբ լույս տեսած Պետություն և հեղափոխություն աշխատությունը նշանավորեց լենինյան աշխատությունների հայերեն հրատարակության նոր էտապը, այնպես էլ Ա. Խանջյանի խմբագրությամբ 1930 թ. հրատարակված Վ. Ի. Լենինի Երկերի առաջին հատորով հիմք դրվեց առաջնորդի աշխատությունների բազմահատոր հրատարակությանը, լենինիանայի հարստացմանը:

Լենինյան գաղափարական ժառանգության պաշտպանության և պրոպագանդման գործում մեծ են անվեհեր հեղափոխական, հետևողական մարքսիստ, փայլուն հրապարակախոս Ա. Խանջյանի ծառայությունները: Լինելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, 1930—1935 թթ. նա մեծ եռանդ ներդրեց Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակության գործում, անձամբ գլխավորելով խմբագրական հանձնաժողովի աշխատանքը, իր գիտելիքները լիովին ծառայեցնելով լենինիզմի պրոպագանդմանը: Սովետական Հայաստանում ստեղծված թարգմանական քաղաքական գրականության հանձնաժողովը մեծ չափով խթանեց հայ մշակույթի զարգացմանը, պետական հիմքերի վրա դրեց թարգմանական գործը: Լենինյան աշխատությունները դեռ երբեք այնքան շատ չէին հրատարակվել հայերեն, որքան այդ տարիներին: Միայն 1930—1935 թթ. Հայաստանում առանձին գրքերով լույս են տեսել Վ. Ի. Լենինի 70-անուն գիրք, իսկ պարբերական մամուլում՝ 83 հոդված, նամակ, հեռագիր և վավերագիր:

Հաճելի է նշել, որ սովետահայ ականավոր գրող Եղիշե Չարենցը զբաղվել է ո՛չ միայն գեղարվեստական գրականության հրատարակությամբ, այլև աջակցել սոցիալ-քաղաքական գրականության զարգացմանը, գործուն մասնակցություն ցուցաբերել լենինյան աշխատությունների հայերեն թարգմանությունների ու խմբագրմանը:



Մինչև 1941 թ., Հայրենական մեծ պատերազմի սկիզբը, Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմին կից կուսպատմության ինստիտուտը և Քաղհրատը արդյունավետ աշխատանք կատարեցին Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանության և հրատարակության ուղղությամբ: 1931—1935 թթ. Հայպետհրատը լույս ընծայեց Վ. Ի. Լենինի Ընտիր երկերը վեց հատորով:

1939—1948 թթ. հայերեն լույս տեսան Լենինի՝ ռազմական արվեստի, հայրենիքի պաշտպանությանը, սոցիալիստական հայրենասիրությանը նվիրված մի քանի աշխատություններ: Հետպատերազմյան շրջանում լայնորեն ծավալվեցին Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունները: Բացի Իլյիչի Երկերի չորրորդ հրատարակությունից 1951—1969 թթ. հայերեն լույս են տեսել լենինյան տասնյակ աշխատություններ, թեմատիկ ժողովածուներ: Միայն 1951—1969 թթ. առանձին գրքերով հրատարակվել են 140 աշխատություն՝ մեկ միլիոն 500 հազար տպաքանակով:

Հրատարակվել են Լենինի գիտական կենսագրությունը, Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին եռահատոր գիրքը, բազմաթիվ մենագրություններ:

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին (1956 թ.) թեմատիկ ժողովածուում զետեղված են բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ Վ. Ի. Լենինի գրած հիմնական աշխատությունները: Դրանք մեր երկրի աշխատավոր մասսաներին զինել են գաղափարական նոր զենքով՝ սոցիալիզմի համար մղվող պայքարում: Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ լենինյան գաղափարը դարձել է ղեկավար դրույթ կոմունիստական կուսակցության ողջ գործունեության համար: «Կոմունիզմը դա սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»,— ասել է Լենինը: Այս ոգով են տոգորված Երկրի ծանր արդյունաբերության և էլեկտրիֆիկացիայի զարգացման մասին ժողովածուի նյութերը: Լենինը ցույց է տվել, որ սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որը կարող է վերակառուցել նաև երկրագործությունը: Իլյիչը համոզված էր, որ եթե Ռուսաստանը ծածկվի էլեկտրակայանների խիտ ցանցով և հզոր տեխնիկական սարքավորումներով, ապա մեր կոմունիստական տնտեսական շինարարությունն օրինակ կդառնա գալիք սոցիալիստական Եվրոպայի և Ասիայի համար:

Հարուստ և բազմազան նյութեր են պարունակում լենինյան երկերի թեմատիկ ժողովածուները, որոնք վաղուց հայ ընթերցողի սեղանի գիրքն են դարձել:

Լենինյան շատ գրքեր լույս տեսան 1960 թ., Առաջնորդի ծննդյան 90-ամյակի օրերին, այդ թվում՝ Մեծ նախաձեռնություն, Նոր տնտեսական քաղաքականությունը և քաղլուսավորների խնդիրները, Պրոլետարական ռևոլյուցիայի ռազմական ծրագիրը, Սովետական իշխանության հերթական խնդիրները և այլ աշխատություններ:

1962—1964 թթ. հայերեն հրատարակվեց Վ. Ի. Լենինի Ընտիր երկերի եռահատորյակը, որը կոչված է օգնելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմությունն ուսումնասիրողներին: Եռահատորյակում զետեղված են Լենինի 1897—1923 թթ. գրած բազմաթիվ աշխատություններ:

Հաջողությամբ առաջ է տարվում լենինյան գրական մեծ ժառանգության հայերեն թարգմանության և հրատարակության գործը: Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունները հարստացան Առաջնորդի ծննդյան 100-ամյակի առթիվ գեղարվեստական գեղեցիկ ձևավորմամբ և պոլիգրաֆիկան բարձր ճաշակով կատարված տասնյակ նոր գրքերով: Լենինյան երեք մա-

տենաշարերը, որոնք բաղկացած են շուրջ 25 աշխատություններից, կարելի է ասել, որ իրենց տպագրական որակով գերազանցում են մինչ այդ հայերեն լույս տեսած բոլոր հրատարակություններին։ 1969 թ. «Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել 25 անուն լենինյան հոբելյանական գրականություն՝ 175 հազար տպաքանակով։

Լենինի աշխատությունները հայերեն առանձին գրքերով լույս են տեսել.

| Թվականներ | Անունների քանակը | Տպաքանակը |
| --- | --- | --- |
| 1900—1920 | 26 | 135.000 |
| 1921—1930 | 45 | 185.500 |
| 1931—1940 | 124 | 816.000 |
| 1941—1950 | 67 | 386.000 |
| 1951—1969 | 140 | 1 611.000 |
| Ընդամենը | 402 | 3 133.500 |

Վ. Ի. Լենինի շատ աշխատություններ թարգմանվել և հրատարակվել են հայ պարբերական մամուլում. 1903 թ. բոլշևիկյան ընդհատակյա «Պրոլետարիատի կռիվը» թերթում լույս տեսած Ինքնակալությունը տապալվում է հոդվածից մինչև 1962 թ.՝ Բաքվի «Կոմունիստ»-ում հրապարակված Սովետական իշխանության հերթական խնդիրները, տպագրվել են Վ. Ի. Լենինի մոտ 410 աշխատություն, հոդված, հեռագիր, գրառում, վավերագիր՝ ավելի քան 4 միլիոն 273 հազար օրինակ տպաքանակով։

Հետհոկտեմբերյան շրջանում հայոց լեզվով լենինյան աշխատությունների տարածման գործում մեծ դեր են խաղացել «Սովետական Հայաստան», «Ավանգարդ», «Բանվոր» (Լենինական), «Մարտակոչ», «Պրոլետար» (Թբիլիսի), «Կոմունիստ» (Բաքու) թերթերը։ «Կուսաշխատող», «Պարտիական կյանք», «Լենինյան ուղիով» ամսագրերը։

Պարբերական մամուլում Լենինի աշխատությունները հատկապես շատ են տպագրվել 1920—1940 թթ. (321 անուն), մինչև Երկերի ժողովածուների հրատարակությունը։ Ինչ խոսք, դժվար է մեկ առ մեկ հիշատակել հայ պարբերական մամուլի լենինյան երկերի թարգմանիչներին։ Բայց նշենք, որ դրանում մեծ ավանդ ունեն սովետահայ ժուռնալիստներն ու հրապարակախոսները։ Հայ լենինիանան նրանց գործունեության անբաժան մասն է կազմում, սովետահայ ժուռնալիստիկայի բնորոշ գիծը։

Լենինյան երկերի հայերեն թարգմանությունների նկատմամբ մեծ հետաքրքրություն են տածում նաև սփյուռքահայերը, արտասահմանի հայ կոմունիստներն ու առաջադիմական ուժերը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների հայ աշխատավորները, բանվորները, գյուղացիներն ու մտավորականները։ Սփյուռքահայ առաջադիմական պարբերական մամուլում լույս են տեսել Վ. Ի. Լենինի մի շարք աշխատություններ։ 1922 թ. ԱՄՆ-ում «Բանվոր»-ի մատենաշարով, Հայ բանվորական կուսակցության հրատարակությամբ լույս տեսավ Վ. Ի. Լենինի Պետություն և հեղափոխություն դարակազմիկ երկը[1]։ Դա Մոսկվայում 1920 թ. Վ. Տերյանի թարգմանությամբ հրատարակված տեքստն էր, Ալ. Մյասնիկյանի Պետություն և հեղափոխությունը հայերեն և Պ. Մակինցյանի Երկու խոսք հոդվածներով։

1922 թ. հունահայ կոմունիստները թարգմանել և Սալոնիկում 600 օրինա-

[1] Վ. Ի. Լենին, Պետություն և հեղափոխություն. (Մարքսիզմի ուսմունքը պետության մասին և պրոլետարիատի դերը հեղափոխության մեջ)։ Թարգ. Վ. Տերյան։ Ամերիկա, հրատ. Հ. Բանվորական կուսակցություն, 1922, 181 էջ։



կով լույս են ընծայել Վ. Ի. Լենինի Կոմունիստ Երիտասարդությունը և իր դերը գիրքը։ Դա կոմերիտմիության III համագումարում Իլյիչի արտասանած ճառն էր։

III

Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների պսակն է կազմում Երկերի չորրորդ հրատարակությունը։ Դեռևս պատերազմից առաջ ՍՄԿԿ Կենտկոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի ինստիտուտը (այժմ ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտ) ձեռնամուխ եղավ Լենինի երկերի չորրորդ հրատարակությանը։ 1941—1943 թթ. հայերեն տպագրվեցին չորրորդ հրատարակության առաջին և երկրորդ հատորները։ Պատերազմի պատճառով ընդհատված աշխատանքները 1947 թ. հոկտեմբերից վերսկսեցին Հայաստանի կոմկուսին կից կուսպատմության ինստիտուտը— ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը։

Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակությունը տպագրության է պատրաստում ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը, լույս է ընծայում «Հայաստան» հրատարակչությունը։ Իլյիչի Երկերի չորրորդ հրատարակությունը՝ 45 հատոր, որի տպագրությունն ավարտվելու է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին, խոշոր իրադարձություն է Հայաստանի կոմունիստական կուսակցության գաղափարական կյանքում, լենինյան հարուստ ժառանգության տարածման պատմության մեջ։ Դա միաժամանակ սովետահայ թարգմանական գրականության ակնառու նվաճումն է։

Վ. Ի. Լենինի Երկերի հայերեն թարգմանությունների պատմությունը, ինչպես արդեն նշել ենք, սկսվում է դեռևս XIX դարի հենց սկզբից և այդ շնորհակալ գործում ամենից առաջ մեծ երախտիք ունեն ականավոր մարքսիստներ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ա. Մյասնիկյանը, Վ. Տերյանը և ուրիշներ։ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանությունները ո՛չ միայն հնարավորություն են տվել հայ աշխատավորներին՝ ավելի մոտիկից հաղորդակից լինելու մարքսիզմ-լենինիզմի վսեմ գաղափարներին ու պայքարելու դրանց կենսագործման համար, այլև բարձրացնելու և նոր աստիճանի հասցնելու հայ ժողովրդի մշակույթը, լեզվական կուլտուրան։ Լենինի աշխատությունների թարգմանությունը դրված է գիտական լուրջ հողի վրա։ ՀԿԿ Կենտկոմին կից ստեղծված է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի թարգմանության խմբագրական հանձնաժողով, գլխավոր խմբագրություն։

Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակության հայերեն տպագրության իրականացումը, անշուշտ, նոր էտապ է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների հայերեն թարգմանությունների հրատարակության պատմության մեջ, հայկական լենինիանայի զարգացման գործում։ Այն նշանավորում է մարքս-լենինյան գաղափարական գանձարանի նոր համալրում։ Չորրորդ հրատարակությունը հայտնի չափով վերացրեց նախորդ հրատարակությունների թերությունները և ավելի ամբողջացրեց Լենինի գրական ժառանգությունը։ Դրանում լենինյան շատ նոր, արժեքավոր նյութեր կան, որոնք պատկերում են Իլյիչի մղած տիտանական պայքարը հանուն մարքսիստական նոր տիպի կուսակցության ստեղծման ու ամրապնդման, սոցիալիստական հեղափոխության

իրականացման, սովետական պետության հիմնադրման և սոցիալիզմի կա-
ռուցման։
ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը կուսակցու-
թյան XX համագումարից հետո ձեռնամուխ եղավ ո՛չ միայն Վ. Ի. Լենինի Եր-
կերի լիակատար ժողովածուի հրատարակությանը 55 հատորով, այլև լրացու-
ցիչ լույս ընծայեց Երկերի չորրորդ հրատարակության 10 հատոր, ուր զետեղ-
ված են երրորդ հրատարակության մեջ տպագրված, բայց չորրորդ հրատա-
րակությունում չզետեղված երկերը, Իլյիչի այն երկերը, որոնք հրապարակվել
են չորրորդ հրատարակության լույսընծայումից հետո, ինչպես և Նամակներ
հարազատներին, Փիլիսոփայական տետրակներ, Իմպերիալիզմի վերաբերյալ
տետրակներ, Նյութեր ագրարային հարցի շուրջը աշխատությունները, լենին-
յան ժողովածուներից քաղված առավել կարևոր փաստաթղթեր, նամակներ,
գրառումներ և այլն։ Այս բոլորը հրատարակվել են հայերեն։
Անդրկովկասի, ինչպես և Հայաստանի, հայ ժողովրդի հեղափոխական
պայքարին նվիրված լենինյան աշխատությունները, որոնք զետեղված են Եր-
կերի չորրորդ հրատարակությունում, լուսավորել են հայ հասարակական մտքի
մարքսիստական ճանապարհը, թևավորել Հայաստանի աշխատավորությանը։
Վ. Ի. Լենինի աշխատությունների, առանձնապես Երկերի չորրորդ հրա-
տարակության թարգմանության ընթացքում կուտակված հարուստ փորձը,
թարգմանչական և խմբագրական կադրերի աճը, սովետահայ լեզվի զարգա-
ցումը ամուր հիմք են տալիս առաջիկայում ձեռնարկելու նրա Երկերի լիակա-
տար ժողովածուի հայերեն հրատարակությանը։
Որքան առաջ է ընթանում ժամանակը, այնքան ավելի է վեր խոյանում,
բարձրանում Վ. Ի. Լենինի հանճարի մեծությունը, այնքան ավելի բազմակող-
մանի է դրսևորվում լենինյան հեղափոխական գիտության, նրա իմաստուն
կանխատեսության հզոր ու կենսահաստատ ուժը։ ՍՍՀՄ-ում սոցիալիզմի լիա-
կատար ու վերջնական հաղթանակը, ժողովրդական դեմոկրատիայի երկրնե-
րում սոցիալիզմի կառուցման ուղղությամբ ձեռք բերված փայլուն նվաճում-
ները, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հաջողություն-
ները լենինիզմի գաղափարների կենդանի մարմնացումն են, նրա լուսապայ-
ծառ տրիումֆը։
Լենինն ապրում է սոցիալիստական մեր անծայրածիր պետության բոլոր
ծեգերում, նրա գործարանների անընդմեջ շառաչի, լույս և ուժ ծնող հիդրո-
տուրբինների որոտի, բեղուն արտերի ծփանքի մեջ։ Լենինն ապրում է տիեզե-
րական անհունն ակոսող, դեպի հեռավոր աստղերն ու մոլորակներն ուղղված
մեր տիեզերանավերի հեքիաթային սլացքի մեջ։ Որպես վեհ մարդկայնության,
համեստության ու պարզության, խիզախության ու անձնվիրության, հեղափո-
խական կորովի ու եռանդի չափանիշ՝ նա ապրում է աշխարհի բոլոր աշխա-
տավոր մարդկանց սրտերում և հոգիներում։ Լենինն ապրում է աշխարհը վե-
րափոխող իր գաղափարական մեծ ժառանգությամբ, այն անպարտելի ու վսեմ
ուսմունքի մեջ, որի անունն է՝ լենինիզմ։





# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ-ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**Մ. Մ. ԲԱԽՉԻՆՅԱՆ**

ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար

Կուսակցության XXIII համագումարն իր որոշումներում նշեց, որ անհրաժեշտ է կուսակցական ղեկավարության ուժեղացմամբ ավելի բարելավել կոմերիտմիության գործունեությունը և նոր թափ հաղորդել նրա ձեռնեբեցության զարգացմանը։ Մեր երկրի առջև ծառացած խնդիրների լուծումը,— ասված է ՀամԼԿԵՄ 50-ամյակի և երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— պահանջում է ավելի բարձրացնել ՀամԼԿԵՄ՝ որպես մասսայական, ինքնագործ, հասարակական, քաղաքական կազմակերպության, որպես կուսակցության ռեզերվի, նրա մերձավորագույն օգնականի դերը, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության և նոր հասարակարգի կառուցման գործում։

Ելնելով ՍՄԿԿ XXIII համագումարի ու ՍՄԿԿ Կենտկոմի՝ Կրասնոյարսկի երկրամասային կուսակցական կազմակերպության կոմերիտմիությանը ցուցաբերած ղեկավարության վերաբերյալ որոշումից, Երևանի կուսակցական կազմակերպությունները զգալիորեն բարելավել են կոմերիտկազմակերպությունների գործունեության ղեկավարությունը։ Ի՞նչ փոփոխություններ են կատարվել այդ ասպարեզում կուսակցության քաղկոմի, շրջկոմների, սկզբնական կազմակերպությունների աշխատանքում, ո՞րն է այդ գործում հատկանշականը։

Հիմնականը և գլխավորն այն է, որ մայրաքաղաքի կոմերիտմիության ղեկավար օրգաններում և կազմակերպություններում իրոք ամրապնդվել է կուսակցական կորիզը։ Կուսակցության XXIII համագումարից հետո կոմերիտմիության մեջ աշխատող կոմունիստների թիվը համարյա կրկնապատկվել է, իսկ կոմերիտական կազմակերպությունների կոմունիստ քարտուղարների-նը ավելացել է երկուսուկես անգամ։ Այժմ կոմերիտմիության Երևանի քաղկոմ-շրջկոմների քարտուղարները, սկզբնական կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների մեկ երրորդից ավելին (290 հոգի կամ 36

տոկոսը), կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմների ու վերստուգիչ հանձնա-
ժողովի անդամ թեկնածուների մոտ երկու երրորդը կոմունիստներ են։ Մեծ
թվով կուսակցականներ աշխատում են կոմերիտական կազմակերպություն-
ների բյուրոներում, կոմերիտական վետերանների խորհուրդներում, նրա
ստորին մամուլի օրգաններում, «Կոմերիտական լուսարձակներում» և այլուր։
1132 կոմունիստ այժմ ակտիվ աշխատում են կոմերիտմիության շարքերում։
Կուսակցության Երևանի քաղկոմն ու շրջկոմները հոգատարությամբ օգնում
են կոմերիտական կադրերի ուսուցմանն ու աճին, բյուրոներում հաճախակի
անդրադառնում կոմերիտական ղեկավար կադրերի հետ տարվող աշխատան-
քին, նրանցից լավագույններին խրախուսում և առաջ քաշում կուսակցական
աշխատանքի։

Սակայն կուսքաղկոմի՝ 150 կոմերիտական կազմակերպություններում
կատարած ուսումնասիրությունները ցույց տվին, որ կուսկազմակերպություն-
ների կողմից կոմերիտմիությանը ցույց տրվող օգնությունն ու ղեկավարու-
թյունը դեռևս չեն ապահովում ՍՄԿԿ XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի
որոշումների լիակատար իրագործումը։

Երևանի ներկա բնակչության 60 տոկոսից ավելին երիտասարդ են (մին-
չև 30 տարեկան), իսկ 22,5 տոկոսը՝ կոմերիտական հասակ ունեն (14—28
տարեկան)։ Այս իրադրությունը մեզ թելադրում է ավելի շատ և առավել
կոնկրետ զբաղվել նոր սերնդի քաղաքական դաստիարակության հարցերով։
Այստեղից էլ այն բացառիկ կարևորությունը, որ մեր կուսկազմակերպու-
թյունների համար ներկայացնում է աճող սերնդի, երիտասարդության գաղա-
փարա-քաղաքական դաստիարակության ողջ բարդ պրոբլեմը։

Կոմերիտմիության նկատմամբ կուսակցական ղեկավարության աշխա-
տանքի մյուս կարևոր բնագավառը լավագույն կոմերիտականներով կուսակ-
ցության շարքերի համալրումն է։ Հետհամագումարյան տարիներին Երևանում
ՍՄԿԿ շարքերն են ընդունվել ավելի քան 2 հազար կոմերիտական (31,6
տոկոսից հասել է 40-ի)։ Այս առումով առավել ուշադրություն է հատկաց-
վում երիտասարդությանը քաղաքականապես կոփելու գործին։ Կուսակցա-
կան կոմիտեները հատուկ ուշադրություն պետք է նվիրեն կոմերիտմիության
քաղաքական դաստիարակությանը և այնպիսի մեթոդներ կիրառեն, որ կուս-
շարքերը ընդունվող կոմերիտականը զինված լինի քաղաքական անհրաժեշտ
գիտելիքներով։ Կուսկազմակերպությունը պարտավոր է կոնկրետ հետևություն-
ներ անել կոմերիտականին իր շարքերն ընդունելիս։ Դա այն պահն է, որում
պարզորեն երևում են ո՛չ միայն կոմերիտական, այլև կուսակցական կազմա-
կերպության քաղաքական-մասսայական աշխատանքների ուժն ու թուլու-
թյունը։

Կոմերիտական քաղաքական ուսուցման ցանցի 536 պրոպագանդիստնե-
րից 454-ը ՍՄԿԿ անդամ-թեկնածուներ են։ Կոմերիտականները, երիտա-
սարդները մասնակցում են նաև սկզբնական կուսկազմակերպություններում
գործող երիտասարդ կոմունիստների դպրոցների պարապմունքներին։

Կուսկազմակերպություններն իրենց աշխատանքում լուրջ տեղ են հատ-
կացնում երիտասարդների հանրակրթական ու մասնագիտական կրթության
մակարդակի բարձրացման հարցերին։ Կոմերիտականների հասարակական
ակտիվությունը հրահրելու նպատակով, կուսքաղկոմն ու շրջկոմները հոգ
տարան նաև, որ ավելի մեծ թվով երիտասարդներ մասնակցեն սովետների



աշխատանքին։ Տեղական սովետների վերջին ընտրությունների ժամանակ
կոմերիտական դեպուտատների թիվը համարյա եռապատկվեց (Նախորդ
նստաշրջանի 52 հոգուց հասավ 145-ի)։ Քաղաքային և շրջանային սովետ-
ներում ստեղծվեցին երիտասարդական մշտական հանձնաժողովներ։

Համառոտակի սրանք են այն հիմնական լծակները, որոնց գործադրմամբ
կուսկազմակերպությունները ղեկավարում են 807 կոմերիտական կազմա-
կերպություններում ընդգրկված 87,5 հազար կոմերիտական զանգվածին։

Երիտասարդության ավանգարդը հանդիսացող այս բազմահազարանոց
բանակն իր արժանի բաժինն ունի մայրաքաղաքի ժողովրդական տնտեսու-
թյան, գիտության ու կուլտուրայի նվաճումներում, քաղաքամայր Երևանի
բարգավաճման գործում, մեր բոլոր լավ նախաձեռնություններում։ Մայրա-
քաղաքի կոմերիտականների մեկ քառորդը (21,5 հազար) աշխատում է ժո-
ղովրդական տնտեսության առաջատար ճյուղերում, արդյունաբերության, շի-
նարարության, տրանսպորտի և կապի ձեռնարկություններում և անձնվեր աշ-
խատանքով իր լուման մուծում հնգամյակի առաջադրանքները ժամկետից
շուտ (1970 թվականի նոյեմբերի 7-ին) կատարելու համար։

Վերջերս, դրական փորձի տարածման նպատակով, քաղաքային կոմի-
տեի ընդլայնված բյուրոն քննարկեց «Էլեկտրոն» և կաբելի գործարանների
կուսակցական կազմակերպությունների կողմից կոմերիտական կազմակեր-
պություններին ցույց տրվող օգնության ու ղեկավարության հարցը։ Այս կո-
լեկտիվներից յուրաքանչյուրում աշխատում են մի քանի հազար բանվոր-ծա-
ռայողներ, որոնց 20—30 տոկոսը կոմերիտականներ ու կուսակցականներ են։

Լայնորեն ծավալելով Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցու-
թյամբ նախաձեռնված սոցիալիստական մրցությունը, «Էլեկտրոն» և կաբելի
գործարանների կոլեկտիվները պատվով են կատարում այդ կապակցությամբ
ստանձնած պարտավորությունները, բազմիցս նվաճել են ՍՍՀՄ համապա-
տասխան մինիստրությունների և արհմիութենական համապատասխան կո-
միտեների մրցանակային տեղերը։

Նշված ձեռնարկությունների կուսկազմակերպությունները կոմունիստնե-
րի աշխատանքը կոմերիտմիության մեջ գնահատում են որպես կուսակցա-
կան կարևոր հանձնարարություն։ Կոմունիստների 8—10 տոկոսը ԼԿԵՄ կոմի-
տեների և բյուրոների քարտուղարներ ու անդամներ են։ Կոմերիտական աշ-
խատանքներում ընդգրկված կոմերիտականների թիվը «Էլեկտրոն»-ում կազ-
մում է 5, իսկ կաբելի գործարանում՝ 13 տոկոս։ Կոմերիտական քաղուս-
ցանցի բոլոր պրոպագանդիստները ՍՄԿԿ անդամներ են. այս կազմակերպու-
թյուններում կոմերիտական ժողովներին, կոմիտեի, բյուրոյի նիստերին, կու-
սակցական ու տնտեսական ղեկավարների ակտիվ մասնակցությունը, երի-
տասարդության առաջ զեկուցումներով ու ելույթներով հանդես գալը, կուսակ-
ցական կոմերիտական միացյալ ժողովները և շատ համատեղ միջոցառում-
ներ ավանդույթ են դարձել։

Կուսակցական կազմակերպությունները բյուրոներում ու ժողովներում
հաճախ են լսում ներկոմերիտական աշխատանքի կարևոր հարցերը, կոմե-
րիտական կազմակերպությունների հաշվետվությունները, հետևում նրանց
աշխատանքների պլանավորմանը, օգնում որոշումների կատարմանը։ Այդ
ձեռնարկություններում լուրջ ուշադրություն է հատկացվում երիտասարդների
առաջքաշման գործին, նրանց վստահում են արտադրության ղեկավար պաշ-
տոններ։ Կոմերիտականները բարձր են գնահատում իրենց նկատմամբ կոմու-

նիստների տածած վստահությունը և գոհունակությամբ մասնակցում կոլեկտիվի առջև ծառացող դժվար հարցերի լուծմանը:

Կուսակցական և կոմերիտական կոմիտեները համատեղ կազմակերպում են կոմերիտական ակտիվի ուսուցումն ու սեմինարները. կոմերիտականներին պրակտիկ աշխատանքում զգալի օգնում են վետերանների խորհուրդները: Կուսակցական կոմիտեները լավագույն կոմերիտականներին և բանվոր երիտասարդությանը պատրաստում են ՍՄԿԿ շարքերն ընդունելու համար: Անցած երկու տարում այս կազմակերպություններն ընդունելության հաշվին աճել են 20 տոկոսով: ՍՄԿԿ թեկնածու ընդունվածների 75 տոկոսը առաջավոր բանվորներ, կոմերիտական ակտիվիստներ են:

Քաղկոմի բյուրոն հանձնարարել է կուսակցության շրջկոմներին, բոլոր սկզբնական կազմակերպություններին՝ տարածել «Էլեկտրոն» և կաբելի գործարանների կուսակցական կազմակերպությունների դրական փորձը:

Այսպիսի կազմակերպությունները քաղաքում, իհարկե, եզակի չեն:

Կոմերիտական կազմակերպությունների ղեկավարման գործում դրական աշխատանք են կատարում Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի, երկաթուղային հանգույցի, ավտոդողերի, «Պոլիվինիլացետատ», էլեկտրալամպերի, ժամացույցի, սարքաշինական գործարանների, «Հայարդնախագիծ» ինստիտուտի, կարի № 1 ֆաբրիկայի, շինարարական տեխնիկումի և այլ կուսկազմակերպություններ:

Չնայած այդ ամենին, մեր քաղաքի որոշ կուսկազմակերպություններ դեռևս վատ են աշխատում: Անհրաժեշտ է կուսշրջկոմների ու սկզբնական կուսկազմակերպությունների առավելագույն հոգատարությունը կոմերիտմիության բովանդակ գործունեության բարելավման համար: Չի կարելի այստեղ չնշել, որ կոմերիտմիության իրենց ղեկավար դերում ակներև անբավարար են գործում քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության առաջին և երկրորդ միավորումների, ալյումինի, ալմաստի գործարանների, № 7 տպարանի, դեղագործարանի, շինարարական կազմակերպությունների (№№ 1, 2, 3), Հայարդմոնտաժի, քաղսովետի շինվերանորոգման տրեստների, ավտոտրանսպորտի կազմակերպությունների (№ 2 տաքսամոտորային և № 1 ավտոբուսային պարկ, շինարարության մինիստրության ավտոտրանսպորտի վարչության), գիտահետազոտական ինստիտուտների (քարի և սիլիկատների, վնիպոլիմեր) և այլ կուսկազմակերպությունները: Նշված կազմակերպությունների մեծ մասում կուսակցական ու կոմերիտական ազատված աշխատողներ կան, որոնք, սակայն, անտարբերություն են ցուցաբերում իրենց պարտականությունների նկատմամբ:

Քաղաքային կոմիտեի ստուգմամբ պարզվեց, որ կոմերիտական կազմակերպությունները բարձիթողի վիճակում են՝ տաքսամոտորային պարկի, հուշանվերների կոմբինատի, վիտամինների գործարանի, բամբակյա գործվածքեղենի, ճկած աթոռների ֆաբրիկաների, միջքաղաքային հեռախոսային ցանցի և այլ հիմնարկներում: Որպես ընդհանուր թերություն պետք է նշել, որ կուսկազմակերպություններն անբավարար են ղեկավարում արտադրամասային, հերթափոխային, խմբային կոմերիտական կազմակերպություններին:

Անհրաժեշտ է ասել, որ կուսակցական լենինյան շրջկոմի պլենումում



և սկզբնական կազմակերպություններում ՍՄԿԿ Կենտկոմի Կրասնոյարսկի մարզի վերաբերյալ որոշման քննարկումը զգալիորեն նպաստեց կուսակցական ղեկավարության բարելավմանը և շրջանի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի աշխուժացմանը: Մինչդեռ, նույնը չի կարելի ասել 26 կոմիսարների շրջանի կուսկազմակերպությունների զգալի մասի վերաբերյալ, ուր կոմերիտական կազմակերպությունների ղեկավարման գործը անմխիթար վիճակում է: Համոզված ենք, որ շրջկոմի բյուրոն կանի ամեն ինչ իր ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ ուժեղացնելու համար:

Վերջին տարիներս զգալիորեն բարելավվել է մայրաքաղաքի կոմերիտական կազմակերպությունների գործունեությունն իր շարքերի համալրման ուղղությամբ: 1965 թ. համեմատությամբ քաղաքում կոմերիտականների թիվն աճել է 12,7 հազարով կամ 17 տոկոսով: Ամեն տարի կոմերիտմիության շարքերը համալրում են հազարավոր պատանիներ ու աղջիկներ: Սակայն ՀամԼԿԵՄ շարքերի համալրման գործում մայրաքաղաքի կոմերիտական կազմակերպություններում լուրջ թերություններ կան: Շատ կոմերիտական կազմակերպություններ տարիներով չեն աճում: Մեծ է արտամիութենական երիտասարդների թիվը. նվազում է ՀամԼԿԵՄ շարքերն ընդունվող բանվոր-երիտասարդների թիվը (1965 թ. համեմատությամբ այն նվազել է 4 տոկոսով):

ՀամԼԿԵՄ ընդունելության գործով վատ են զբաղվում հատկապես Մյասնիկյանի շրջանի կոմերիտական կազմակերպությունները և ՀԼԿԵՄ Մյասնիկյանի շրջկոմը: Անցյալ տարի քաղաքի կոմերիտականների թիվն ընդունելության հաշվին աճել է 13 տոկոսով, մինչդեռ Մյասնիկյանի շրջանում՝ միայն 4,4 տոկոսով: ՀամԼԿԵՄ շարքերի ընդունելության հարցերով վատ են զբաղվում բուհերի, տեխնիկումների, նույնիսկ դպրոցների շատ կոմերիտական կազմակերպություններ:

Կոմերիտական շարքերի անբավարար աճի հետևանքով շատ կազմակերպություններ փոքրաթիվ են, կորցրել են իրենց ազդեցությունը երիտասարդության շրջանում, հեղինակազրկվել: Ինչպիսի՞ հեղինակություն կարող է ունենալ, օրինակ, քաղսովետի շինվերանորոգման տրեստի կոմերիտական կազմակերպությունը, որի երկուհազար հոգիանոց կոլեկտիվում (կուսբյուրոյի քարտուղար՝ Լ. Ավետիսյան) ընդամենը 5 կոմերիտական կա (հաշվառման մեջ 14-ն են, որոնցից 9-ը մեկնել են):

Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտում 8 կոմերիտականների կողքին 118 արտամիութենական երիտասարդ կան, նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտում 77-ը կոմերիտականներ են, իսկ 180-ը՝ ոչ, միջքաղաքային հեռախոսային ցանցում արտամիութենական աշխատողների թիվը կրկնակի շատ է կոմերիտականներից, հաշվողական կենտրոնում 22 կոմերիտականի կողքին 189-ը ՀամԼԿԵՄ անդամներ չեն, մինչդեռ այս կազմակերպությունները վերջին 2—3 տարում ոչ մի երիտասարդի կոմերիտմիության շարքերը չեն ընդունել: Այս կազմակերպություններում ՍՄԿԿ անդամ-թեկնածուներ չեն աշխատում: Նույնն է վիճակը շինանյութերի ու կառուցվածքների, բիոքիմիայի ինստիտուտներում, կենտրոնական էլեկտրալաբորատորիայում, «Պլաստիկ», «Ցերիտ» գործարաններում, կոշիկի անհատական պատվերների, դաշնամուրի ֆաբրիկաներում և այլուր:

ՀամԼԿԵՄ շարքերի ընդունելության գործում թերություն է նաև հախուռն

ընդունելությունը։ Օրինակ, 26 կոմիսարների անվան ԼԿԵՄ շրջկոմի բյուրոն 1967 թ. իր մայիսի մեկի նիստում կոմերիտմիության շարքերն է ընդունել 114, 1968 թ. հոկտեմբերի 10-ին՝ 286 հոգու. այսպիսի հախուռն մոտեցման փաստեր կան նաև մյուս շրջաններում։ Տարօրինակն այն է, որ ՀամԼԿԵՄ շարքերի ընդունելության գործում նշված թերությունների առկայության պայմաններում, կոմերիտական կազմակերպությունները, ԼԿԵՄ շրջկոմներն ու քաղկոմը տարիներով այդ կարևոր հարցին չեն անդրադարձել, բյուրոներում ու պլենումներում չեն քննարկել։ Կուսկազմակերպությունները ևս ժամանակին չեն օգնել նրանց։

Կուսակցական և կոմերիտական շրջկոմները պետք է նշված թերությունները վերացնեն և ապահովեն կոմերիտմիության շարքերի նորմալ աճն ու նրա հեղինակության բարձրացումը երիտասարդության լայն շրջանում։ Միաժամանակ անհրաժեշտ է սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներում մասնակից անել ԼԿԵՄ քարտուղարներին և չմոռանալ, որ կոմերիտմիության ակտիվ գործիչները ինչպես և երիտասարդ մասնագետները պետք է ժամանակին առաջ քաշվեն պատասխանատու աշխատանքի։ Քաղաքում համարյա չկան հիմնարկ-ձեռնարկությունների մինչև 30 տարեկան ղեկավարներ։ Ճիշտ չէ նաև, երբ կոմերիտականը կուսակցության շարքերն ընդունվելուց հետո անհապաղ հրաժեշտ է տալիս կոմերիտմիությանը և ՍՄԿԿ թեկնածուն դադարում է ՀամԼԿԵՄ անդամ լինելուց։

Կոմերիտականներից տարեկան միայն մեկ տոկոսի չափով կուսշարքերի համալրումը Երևանի կազմակերպության համար դեռևս բավարար չէ. կոմերիտմությունից ՍՄԿԿ շարքերի համալրման գործը հատկապես պետք է բարելավեն 26 կոմիսարների, Շահումյանի և Օրջոնիկիձեի շրջկոմները։

Անհրաժեշտ է դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում հասարակական ակտիվ գործունեության ձգտում հարուցել պատանիների ու երիտասարդների շրջաններում և նրանցից կուսակցության գործին նվիրված, ակտիվ ու արժանի փոխարինողներ պատրաստել։ Սակայն կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ կուսակցական ղեկավարությունը դեռևս անբավարար է բուհերում, տեխնիկումներում, դպրոցներում։ 53 հազար սովորող երիտասարդներ ու պատանիներ են ընդգրկված այդ կազմակերպություններում (կամ քաղաքի կոմերիտականների 60 տոկոսից ավելին), նրանցից ավելի քան 22 հազարը կամ բոլոր կոմերիտականների քառորդ մասից ավելին՝ բուհերի ուսանողներ են։ Մայրաքաղաքի յուրաքանչյուր երրորդ բնակիչը սովորում է։

Այս կազմակերպություններում ևս նոր և դրվատանքի արժանի շատ նախաձեռնություններ կան։ Վերջին տարիներին զգալիորեն բարելավվել է ուսանողության աշխատանքային դաստիարակությունը։ Արդեն երկու տարի է, ինչ Երևանի շինարարական ուսանողական ջոկատներն առաջին տեղն են գրավում Ղազախստանի խոպանի կառույցներում և նվաճում ՀամԼԿԵՄ Կենտկոմի դրոշները։ Չնայած նրան, որ ավանդույթ են դարձել վերջին տարիներում կազմակերպվող ուսանող և բանվոր երիտասարդության հանդիպման հաշվետու երեկոները և «Ուսանողական գարուն» փառատոնները, որոնք վեր են ածվում տարբեր ազգերի ուսանող երիտասարդության բարեկամական տոնի, այնուհանդերձ, ցավով պետք է նշել, որ բուհերի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը բոլորովին գոհացուցիչ չէ և նրանց նկատմամբ բուհական կուսկազմակերպությունների ղեկավարությունն ու օգնությունն անբավարար է։



Ամենից առաջ ցածր է ուսանողների, այդ թվում նաև կոմերիտականների ուսման առաջադիմությունը. ըստ որում, առանձին բուհերում այն տարեցտարի իջնում է։ Անհրաժեշտ է բարելավել նաև ասպիրանտների պատրաստման գործը։ Բուհական կոմերիտական կազմակերպությունները չեն շարունակում մի շարք լավագույն նախաձեռնությունները։ Դրանցից մի քանիսը լինում են կարճատև (հասարակական հիմունքներով գործող ժողովրդական ֆիլհարմոնիա, կոնսերվատորիա, շինարարական տեխնիկում և այլն)։ Միանգամայն անբավարար է ներմիութենական աշխատանքների վիճակը, պակասում է հասարակական հանձնարարություններ կատարող կոմերիտականների թիվը։

Բազմաթիվ են դեպքերը, երբ կոմերիտական ուսանողը զանազան արարքների համար ռեկտորատի կողմից վարչական տույժի է ենթարկվում, մինչդեռ կոմերիտական կազմակերպությունը չի անդրադառնում նրա վարքագծին։ Լինում է և այնպես, երբ կոմերիտականի վարքագիծը ժողովում քննարկվում է, գրավոր տույժի ենթարկվում, սակայն դա չի գրանցվում։ Պարզ է, որ նման քննարկումը կորցնում է դաստիարակչական նշանակությունը և անտարբերություն, հաշտվողականություն է սերմանում կոմերիտականների շրջանում, երիտասարդության առջև հեղինակազրկում է կազմակերպությանը։

Մի՞թե նորմալ է, երբ շատ բուհերում բոլորովին չեն գործում հասարակական կարգի պահպանման դրուժինաները. մինչդեռ պատշաճ ուշադրության դեպքում դրանք կարող են օրինակելի կարգ ու կանոն ստեղծել ոչ միայն բուհերում ու հանրակացարաններում, այլև մերձակա տերիտորիայում, ամբողջ շրջանում։

Կուսկազմակերպությունները պահանջված չափով չեն բարձրացնում դասախոսների պատասխանատվությունը կոմերիտական աշխատանքի, ընդհանրապես ուսանողների դաստիարակության գործում։ Անբավարար է պրոֆեսոր-դասախոսական անձնակազմի կապը ուսանողների հետ. շատ ամբիոններ ուսանողների գաղափարական-քաղաքական դաստիարակությունը միայն հասարակագիտական ամբիոնների պարտքն են համարում. դասախոսների զգալի մասը խուսափում է կոմերիտական միջոցառումներին մասնակցելուց, չեն լինում իրենց կցված խմբերի ուսանողների մոտ (անասնաբուծական-անասնաբուժական, բժշկական, հայկական մանկավարժական ինստիտուտների մի շարք ամբիոններում, պետական համալսարանի կիբեռնետիկայի, գեոֆիզիկայի ամբիոններում և այլուր)։

Բուհական կազմակերպություններում ամենից ավելի է անհրաժեշտ կուսակցական կորիզի ամրապնդումը կոմերիտական կազմակերպություններում, մինչդեռ այն հազիվ մեկ տոկոս է կազմում, իսկ Խ. Աբովյանի և Վ. Բրյուսովի անվան մանկավարժական, բժշկական, ֆիզկուլտուրայի ինստիտուտներում՝ 0,3—0,6 տոկոս միայն։

Բուհերի աշխատանքներում վերը նշված թերությունների առկայության պայմաններում, որքան էլ այդ տարօրինակ է ու դատապարտելի, բուհական կազմակերպություններից և ոչ մեկը Կրասնոյարսկի երկրամասի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը չի քննարկել և միջոցառումներ չի մշակել դրա կենսագործման համար, իսկ Մյասնիկյանի ու Սպանդարյանի կուսշրջկոմներն այն լռության են մատնել։

Կուսակցության քաղաքային կոմիտեն և շրջկոմները, բուհական կոմիտեները պետք է լրջորեն բարելավեն բուհական կոմերիտական կազմակերպությունների ղեկավարման գործը, բարձրացնեն նրանց մարտունակությունը։ Կուսակցության շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները պետք է ուշադրության կենտրոնում պահեն տեխնիկումների, պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության սիստեմը, հոգ տանեն երիտասարդների զարգացման մասին, բարձրացնեն կոմերիտական կազմակերպությունների դերը բազմակողմանի զարգացած մասնագիտական ու բանվորական կադրերի պատրաստման գործում և հետևեն կոմերիտկազմակերպությունների նորմալ աճին։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Միջնակարգ հանրակրթական դպրոցի աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշումը (1966 թ. նոյեմբեր) կուսակցական, սովետական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների, ժողովրդական կրթության օրգանների առջև խնդիր դրեց՝ պատշաճ ուշադրություն ու հոգատարություն ցուցաբերել դպրոցի նկատմամբ, հիշելով, որ երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակությունը կուսակցության, ամբողջ սովետական ժողովրդի գործն է։

Ավելի քան 150 հազար երեխա են սովորում քաղաքի դպրոցներում։ Երևանի բոլոր կուսշրջկոմներն իրենց պլենումներում քննարկել են ՀԿԿ Կենտկոմի պլենումի (1968 թ. փետրվար) «Հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները հանրակրթական դպրոցներում ուսումնական և դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման ուղղությամբ, կապված ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործման հետ» հարցը, որը զգալի չափով բարձրացրել է կուսկազմակերպությունների, ժողովրդական կրթության օրգանների, կոմերիտական կազմակերպությունների պատասխանատվությունը։

Դպրոցական կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներին պակասում է կազմակերպական աշխատանքի փորձ։ Այս գործում չեն օգտագործվում ուսուցիչները, կոմունիստները։ Դպրոցական կոմերիտական կազմակերպության 154 քարտուղարներից երկուսն են ՍՄԿԿ անդամ, բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեն միայն 20-ը։

Անհրաժեշտ է կուսակցության Կենտկոմի պահանջների ոգով ուժեղացնել կուսակցական ղեկավարությունը դպրոցների, մանկավարժական կոլեկտիվների, կոմերիտական, պիոներական կազմակերպությունների գործունեության նկատմամբ։ Այդ կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացնել պիոներների ու դպրոցականների գաղափարական համոզվածության, կայուն գիտելիքների ձեռքբերման, աշխատանքի նկատմամբ սեր ու հարգանք դաստիարակելու վրա։

Կոմերիտական կազմակերպությունների գլխավոր խնդիրներից է՝ երիտասարդության դաստիարակությունը վարել սովետական ժողովրդի ու կոմունիստական կուսակցության հեղափոխական, մարտական, աշխատանքային ավանդույթներով, սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով տոգորված։

Երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործը միշտ եղել է մեր կուսակցության ուշադրության կենտրոնում։ Երևանի կոմերիտական կազմակերպությունը երիտասարդության հայրենասիրական դաստիարակության ուղղությամբ իրոք ուսանելի փորձ է կուտակել, բազմաթիվ լավ նախաձեռնություններ հանդես բերել։ Այս գործում կոմերիտմիությանը մեծ օգնություն է ցույց տալիս կոմերիտական վետերանների քաղաքային խորհուրդը (նախագահ՝ Գարեգին Ավագյան)։



Երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործում կարևոր է նախազինակոչային հասակի երիտասարդության շրջանում տարվող աշխատանքը, երիտասարդությանը սովետական զինված ուժերում պատվով ծառայելու համար նախապատրաստելը։

ՍՄԿԿ Կենտկոմը կուսկազմակերպություններից պահանջում է մշտապես հարստացնել երիտասարդության հետ տարվող աշխատանքի բովանդակությունը, կատարելագործել դրա ձևերն ու մեթոդները, այդ աշխատանքում ներգրավելով խոր գիտելիքներ ու կենսափորձ ունեցող կուսակցական լավագույն ընկերներին։ Կուսակցական ու կոմերիտական օրգաններից պահանջվում է զարգացնել և ուղղություն տալ քաղաքական գիտելիքների նկատմամբ ունեցած երիտասարդության հետաքրքրասիրությանը, նրանց հոգում ձգտում պատվաստել՝ խորապես իմաստավորելու հասարակական կյանքի պրոցեսները։ Պետք է հասնել այն բանին, որ կոմերիտականները, բոլոր պատանիներն ու աղջիկները սիստեմատիկաբար ուսումնասիրեն մարքս-լենինյան տեսության հիմունքները, հասկանան ժամանակակից քաղաքական իրադարձությունները, իմանան, որ առանց այդ տեսության տիրապետման, չի կարող լինել լավ մասնագետ, կոմունիզմի ակտիվ կառուցող։

Անհրաժեշտ է, որ երիտասարդությունը մեր անցած ուղին գնահատի ո՛չ թե անցյալի թերությունների ու սխալների, այլ ամենից առաջ՝ սովետական ժողովրդի վիթխարի ու հերոսական գործերի հիման վրա։ Միաժամանակ կարևոր է երիտասարդությանը դաստիարակել մեր կյանքում եղած խորթ երևույթների դեմ անհաշտվողականության ոգով։

ՍՄԿԿ Կենտկոմը «ՀամԼԿԵՄ 50-ամյակի և երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների մասին» որոշմամբ պարտավորեցրել է կուսակցության քաղկոմ-շրջկոմներին՝ բարձրացնել կոմերիտական կազմակերպությունների, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ղեկավարման մակարդակը։ Կուսկոմիտեները մշտապես պետք է կոորդինացնեն այն բոլոր գերատեսչությունների ու կազմակերպությունների գործունեությունը, որոնք կոչված են զբաղվելու երիտասարդության դաստիարակությամբ, ուշադրությամբ հետևելու կոմերիտական կադրերի ընտրությանը, տեղաբաշխմանն ու դաստիարակությանը, նրանց մարքս-լենինյան կոփվածությանը, կոմերիտական կազմակերպություններում կուսակցական կորիզի ամրապնդմանը։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործի հաջողության հիմնական պայմանը կուսակցական ղեկավարությունն է, իսկ այն իրականացնող հիմնական օղակը՝ սկզբնական կուսկազմակերպությունը։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ամեն մի կուսկազմակերպություն մշտապես ու ծրագրված զբաղվի երիտասարդության դաստիարակման գործով, հենվելով իր հավատարիմ օգնականի՝ լենինյան կոմերիտմիության վրա։

Երևանի կուսկազմակերպությունների պարտքն է՝ գլխավորել կոմերիտական կազմակերպությունների լավագույն նախաձեռնությունները, օգնել մայրաքաղաքի երիտասարդներին ու կոմերիտականներին արժանավայել դիմավորելու Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա և Հայաստանում սովետական կարգերի հաստատման կեսդարյա հոբելյանները, ըստ ամենայնի բարելավեն երիտասարդության գաղափարա-քաղաքական դաստիարակությունը։



# ՀՐԱՀԱՆԳԻՉԸ ԵՎ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

**Տ. Հ. ԴԱԴԻԿՅԱՆ**

ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի կազմբաժնի վարիչ

*ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցական կոմիտեներից պահանջեց բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, կոմունիստների առաջատար դերը կյանքի բոլոր բնագավառներում, նրանց պատասխանատվությունն իրենց կազմակերպության և կուսակցության գործերի համար, կատարելագործել կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները, հարստացնել նրա բովանդակությունը, կոմունիստների և բոլոր աշխատավորների ստեղծագործական ուժերը նպատակամղել տվյալ կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների հաջող լուծմանը։*

*Կուսակցության այդ կարևոր ցուցումների կենսագործումը, առաջին հերթին, պայմանավորված է նրանով, թե կուսակցական կոմիտեները, նրանց աշխատողներն ինչպե՞ս են կապված սկզբնական կուսկազմակերպությունների հետ և ինչպե՞ս են իրականացնում կենդանի, գործնական օգնությունն ու ղեկավարությունը նրանց նկատմամբ, կազմակերպչական ու քաղաքական ինչպիսի՞ նպատակասլաց աշխատանք տանում լայն մասսաների շրջանում։*

*Մամուլում հաճախ է գրվում կուսակցական ապարատի աշխատողի, մասնավորապես հրահանգչի մասին։ Շրջկոմի հրահանգիչը այն օղակն է, որի միջոցով կենդանի կապ է հաստատվում կուսակցական կոմիտեի և սկզբնական կուսկազմակերպությունների միջև։ Հրահանգիչի միջոցով սկզբնական կուսակցական կազմակերպությունները հաղորդակից են լինում կուսակցության և կառավարության առաջադրած խնդիրներին և կոմունիստներին ու աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնում դրանք ժամանակին կատարելու համար։*

*Ժողովրդական տնտեսության, պետական ու հասարակական հիմնարկության յուրաքանչյուր աշխատող ունի ծառայական պարտականությունների որոշակի շրջանակ։ Իսկ երբ խոսքը վերաբերում է կուսակցական ապարատի աշխատողին, ապա նրա գործունեությունը որոշակի սահման կամ հարցերի լուծման ինչ-որ մեկընդմիշտ սահմանված ձևեր և ուղիներ չունի։*

*Կուսակցական աշխատողին դիմում են տարբեր զբաղմունքի տեր մարդիկ, ընդ որում հաճախ նեղ մասնագիտական հարցով. նրանք համոզված են, որ իրենց պահանջների ժամանակին բավարարման, գործի արագացման*



*կամ հուզող հարցերի պարզաբանման համար կուսակցական օրգանի և նրա աշխատողների կողմից կստանան անհրաժեշտ օգնություն։*

*Ինչո՞ւ են մարդիկ այդպես համոզված։ Նրա համար, որ կուսակցական աշխատողները գործի մեջ խորանում են ըստ էության, կարողանում են որսալ, հասկանալ ու գտնել գլխավորը, հարցերը լուծել առանց ձգձգման, պետականորեն, կուսակցական սկզբունքայնությամբ։*

*Հայտնի է նաև, որ կուսակցական աշխատողը չի կարող ոչ հրամայել, ոչ էլ բեկանել ինչ-որ մի պաշտոնատար անձի, ասենք՝ արտադրամասի պետի, ինժեների կամ ձեռնարկության ղեկավարի ցուցումն արտադրության կազմակերպման հետ կապված այս կամ այն հարցի մասին։ Կուսակցական աշխատողը գործում է համոզման, դաստիարակչական մեթոդով, մարդկանց հասկացնում է գործի կարևորությունը, հուշում է նրա վարման ռացիոնալ ձևը, մոբիլիզացնում է կոլեկտիվին ու դրանով իսկ օգնում այս կամ այն ղեկավարին՝ տրված առաջադրանքը հաջողությամբ կատարելու։*

*Այս առումով մենք ուզում ենք պատմել ՀԿԿ Երևանի կազմակերպության Սպանդարյանի շրջկոմի հրահանգիչների աշխատանքի մասին։ Հենց սկզբից նշենք, որ սկզբնական կուսկազմակերպությունների և կուսանդամների թվով մեր շրջանն առաջինն է մայրաքաղաքում։ Այստեղ կան 344 սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք միավորում են մոտ 11 հազար կուսանդամ-թեկնածուներ։ Ընդ սմին, սկզբնական կուսկազմակերպություններն իրենց բնույթով խիստ բազմազան են։*

*Կազմբաժնի յուրաքանչյուր հրահանգիչ միջին հաշվով սպասարկում է 86, իսկ պրոպագանդայի բաժնի յուրաքանչյուր հրահանգիչ՝ 115 կազմակերպություն։*

*Շրջկոմի հրահանգչից պահանջվում է ոչ միայն գիտելիքների հարուստ պաշար, այլև կուսակցական աշխատանքի որոշակի փորձ, իսկ ամենագլխավորը՝ մարդկանց հետ աշխատելու հմտություն ու կարողություն։ Եվ դա հասկանալի է։ Կուսակցական ապարատի աշխատողը, տվյալ դեպքում հրահանգիչը, պատասխանատու է ամենից առաջ կադրերի ճիշտ ընտրության ու դաստիարակության, կուսակցության և կառավարության դիրեկտիվների ու կուսակցական տեղական օրգանների որոշումների կատարման ստուգումը կազմակերպելու, կուսակցական աշխատանքի լավագույն փորձը մասսայականացնելու համար։*

*Շրջկոմի հրահանգիչը, սկզբնական կուսկազմակերպությունների հետ միասին, քիչ աշխատանք չի կատարում նաև ՍՄԿԿ շարքերի համալրման, նրա որակական կազմի բարելավման, ընդունելության գործերի նախապատրաստման, բազմաթիվ ու բազմաբնույթ դիմում-բողոքներին ընթացք տալու, կուսակցական ժողովներում, ինչպես և շրջկոմի բյուրոյի նիստերում քննարկվող հարցերի նախապատրաստման ուղղությամբ։*

*Յուրաքանչյուր կուսկազմակերպության աշխատանքի հաջողությունը հիմնականում պայմանավորված է նրա քարտուղարի, բյուրոյի կամ կոմիտեի կազմի ճիշտ ընտրությունից։ Ահա թե ինչու Սպանդարյանի կուսշրջկոմը լուրջ նշանակություն տալով կուսկազմակերպությունների ղեկավարության ամրապնդմանը, սիստեմատիկ աշխատանք է տանում սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների, նրանց տեղակալների ընտրության ու դաստիարակության ուղղությամբ։ Երբ կուսակցական կազմակերպության քարտուղար, նրա տեղակալներ են ընտրվում կու-*

սակցական աշխատանքը սիրող, կոլեկտիվում հեղինակություն վայելող լավագույն կազմակերպիչներ, նրանց միջոցով կարճ ժամանակում հնարավոր է դառնում ոտքի հանել կոլեկտիվին, թեկուզ ետ մնացող կոլեկտիվին, մոբիլիզացնել նրա ուժերը ձեռնարկության առջև դրված խնդիրները լուծելու համար։

Բերենք մի օրինակ։ Երևանի տրամվայ-տրոլեյբուսի վարչությունը շրջանի ամենամեծ ձեռնարկություններից մեկն է։ Բազմահազարանոց այդ կոլեկտիվում աշխատում են ավելի քան 250 կուսանդամ-թեկնածու։ 1966 թ. վերջին շրջանների վերակազմավորման կապակցությամբ, այդ ձեռնարկությունը Լենինյան շրջանից անցավ Սպանդարյանին։ Որոշ ժամանակ անց շրջանային կոմիտեին, ինչպես ասում են, վերցրին քննադատության կրակի տակ։ Ինչո՞ւ։ Որովհետև վարչությունը սիստեմատիկաբար թերակատարում էր պետական առաջադրանքները։

Վարչության կուսկազմակերպությունն սպասարկող հրահանգիչ Վոլոդյա Թորոսյանը ուսումնասիրեց վարչության կուսկոմիտեի, արտադրամասային կուսկազմակերպությունների (որոնց թիվը հասնում է 9-ի), տնտեսվարների աշխատանքը, պարզեց թե կադրերը որքանով են ճիշտ տեղաբաշխված արտադրության վճռական տեղամասերում։

Նա միաժամանակ ուսումնասիրեց վարչության աշխատանքը, զրույց ունեցավ տասնյակ աշխատողների հետ, որոնք, հրահանգչի ասելով, երբեմն սուր բնույթ էին կրում, վիճելու և մտածելու տեղիք տալիս։ Կոմունիստներն ու մասնագետներն այդ զրույցների ժամանակ, ինչպես և կուսկոմիտեի նիստերում ու կուսժողովներում տարբեր առաջարկություններ էին անում, հուշում ստեղծված վիճակից դուրս գալու ելքը։ Միայն կարելի էր զարմանալ, որ ՏՏՎ կուսակցական և տնտեսական ղեկավարները չէին ունկնդրում մասսաների ձայնին, մարդկանց քննադատական դիտողություններին ու խելացի առաջարկություններին։ Հրահանգիչ Թորոսյանն առաջարկեց շրջկոմի բյուրոյի քննարկմանը դնել տրամվայ-տրոլեյբուսի վարչության կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրական պահանջների կատարման հարցը։ Նրա առաջարկությունն ընդունվեց։ Հանձնաժողովը, որին ղեկավարում էր ինքը, փորձված հրահանգիչը, գործի անցավ։ Տևական ուսումնասիրությունից և շրջկոմի բյուրոյում հարցի քննարկումից պարզվեց, որ վարչության կուսկոմիտեն և ադմինիստրացիան բավարար գործունեություն չեն ծավալել հանձնարարված գործի նկատմամբ կոմունիստների, կոլեկտիվի մյուս անդամների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու համար, երբեմն եղել են պասսիվ, դիտողի դերում։ Վարչության ղեկավարության մեղքով ապարատում և պարկերում խիստ ընկել էր պետական ու աշխատանքային կարգապահությունը, թուլացել էր պահանջկոտությունն ու պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Շարժակազմի տեխնիկական անբավարար վիճակի հետևանքով 220 տրամվայի և տրոլեյբուսի փոխարեն ամեն օր երթուղի էր դուրս գալիս 160—180-ը, և դրանցից 50—60-ը տեխնիկական անսարքության պատճառով օրվա կեսին վերադառնում էին պարկ։

Պարզվեց նաև, որ վատ է կազմակերպված կադրերի պատրաստման և վերապատրաստման գործը։ Նրանց տեղում ուսուցանելու փոխարեն, պարբերաբար աշխատողներին էին հավաքագրում Միության տարբեր քաղաքներից ու դրանով իսկ դժվարացնում գործը։ Առանձին դեպքերում ղեկավար աշխատանքի էին առաջ քաշվել ձախողված մարդիկ, որոնցից ոմանք չունեին



նույնիսկ միջնակարգ մասնագիտական կրթություն։ Մեծ տոկոս էր կազմում աշխատողների հոսունությունը և այլն։ Այդ և մի շարք այլ պատճառներով վարչությունը 1962 թ. աշխատում էր վնասով. ուղևորների փոխադրման պլանը կատարվում էր 80—85 տոկոսով։ Գրեթե նույն չափով էին կատարվում նաև եկամուտների ու վագոնների վազքի պլանները, տարեցտարի իջնում էր պարկերի օգտագործման գործակիցը։ Կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները հաշտվել էին ստեղծված վիճակի հետ, անհանդուրժողական մթնոլորտ չէին ստեղծում թերությունների նկատմամբ, բավարար պահանջկոտություն չէին ցուցաբերում կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու գործում։

Շրջկոմի բյուրոն կտրուկ միջոցառումներ ձեռնարկեց վարչությունը այդ վիճակից դուրս բերելու համար։ Աշխատանքից ազատվեցին վարչության պետը (Հ. Երզնկյան), նրա տեղակալը (Ա. Սահակով), գլխավոր ինժեները (Ա. Տաթևյան)։ Այդ բոլորից հետո հրահանգիչ Վ. Թորոսյանը բազմակողմանի օգնություն ցույց տվեց շրջկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնին ու տրամվայ-տրոլեյբուսի վարչության նոր ղեկավարությանը՝ կադրերը վերադասավորելու, առաջատար տեղամասերը գործիմաց ու մասնագետ կադրերով ամրապնդելու համար։

Վարչության նոր պետ Ա. Եղիազարյանի և կուսկոմիտեի քարտուղար Ա. Հակոբյանի համառ, տևական կազմակերպական աշխատանքը տվեց ցանկալի արդյունք։ Երկարատև ընդմիջումից հետո այս տարի առաջին անգամ վարչությունը կատարեց ու գերակատարեց պլանային առաջադրանքները։ Առաջին հաջողությունը հետևանք է այն բանի, որ կուսկոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները տնտեսական ղեկավարության հետ միասին անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեցին շարժակազմի տեխնիկական վիճակը բարելավելու, պարկերը գործիմաց ու ձեռներեց մարդկանցով ամրապնդելու, հանձնարարված գործի նկատմամբ կուսակցականների պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Շնորհիվ այս ամենի վարչության կոլեկտիվը հիմա աշխատում է հստակ ու ճկուն։ Կազմակերպված են վագոնավարների ու վարորդների պատրաստման դասընթացներ, որտեղ սնունդը ձրի է, սովորողներն ապահովված են հանրակացարաններով։ Սակայն, ասել, թե ՏՏՎ-ում ամեն ինչ նորմալ հունի մեջ է, իսպառ վերացել են թերություններն ու բացերը, ճիշտ չի լինի։ Այսօրվա դրությամբ դեռևս զգացվում է 120 վագոնի պակաս, որը արգելակում է պահանջվող թվով շարժակազմի դուրս բերելուն։

Մեծ է լինում շրջկոմի ապարատի աշխատողի, մասնավորապես հրահանգչի ուրախությունը, երբ նա տեսնում է ու գիտակցում, որ իր գործունեությունը կազմակերպությունում հետք է թողել, որ իր օգնությամբ կոլեկտիվում որոշակի դրական փոփոխություններ են կատարվել։ Իրականում այդ նպատակին է ուղղված շրջկոմի, նրա ապարատի յուրաքանչյուր աշխատողի գործունեությունը։

Շրջանային կոմիտեն ըստ արժանվույն գնահատելով հրահանգչական աշխատանքի դրական փորձը, գործն այնպես է կազմակերպում, որ յուրաքանչյուր հրահանգիչ ավելի սերտորեն կապվի սկզբնական կուսակցական կազմակերպությունների հետ, հանդես բերի ինքնուրույն նախաձեռնություն, իր գործունեության ընթացքում հենվի ոչ միայն սկզբնական կուսկազմակերպությունների, նրանց ակտիվի, այլև շրջկոմի անդամների, թեկնածուների և շրջանային ակտիվի վրա։ Առանց ակտիվի հրահանգիչը չի կարող ընդգրկել

օգնել, ուղղություն տալ իր կողմից սպասարկվող ութ տասնյակից ավելի կուսկազմակերպությունների գործունեությանը։ Շրջկոմի հաստիքային աշխատողների ճնշող մեծամասնությունը լավ է տիրապետում կուսակցական աշխատանքի այդ կարևոր արվեստին։

Բերենք մեկ օրինակ ևս։ Սոցիալիստական սեփականության վատնումների ու հափշտակումների դեմ պայքարն ուժեղացնելու մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի 1968 թ. հունիսի 11-ի որոշումը շրջկոմի ապարատի սկզբնական կուսկազմակերպության ժողովում քննարկելուց հետո, հրահանգիչ Գևորգ Մատինյանը (որը սպասարկում էր գիտահետազոտական ինստիտուտների և վարչական օրգանների սկզբնական կուսկազմակերպությունները) առաջարկեց շրջկոմին կից ստեղծել հասարակական կարգի և սոցիալիստական օրինականության պահպանմանն աջակցող արտահաստիքային հանձնաժողով։ Այդ առաջարկը մտածելու ու խորհելու տեղիք տվեց։ Խորհրդակցեցինք ոչ միայն շրջկոմի քարտուղարների, այլև քաղաքային կոմիտեի համապատասխան բաժնի ընկերների հետ։ Գտանք, որ այդ հանձնաժողովը կօգնի վարչական օրգաններին, մասնավորապես, ներքին գործերի մինիստրության շրջանային բաժնին, դատախազությանն ու ժողդատարանին։

Ստեղծելով նման հանձնաժողով, նրա կազմում ընդգրկեցինք իրավաբանական մասնագիտությամբ ու աշխատանքի բազմամյա փորձ ունեցող 6 հոգի, այդ թվում նաև ԳԱ փիլիսոփայության և իրավունքի սեկտորի երկու գիտաշխատող, գիտությունների թեկնածուներ, թոշակառու հին բոլշևիկներ։

Հանձնաժողովն այժմ բեղմնավոր գործունեություն է ծավալում, օգնում է ինչպես շրջկոմին, այնպես էլ վարչական օրգաններին։ Այն ուսումնասիրել և շրջկոմի բյուրոյի քննարկմանն է ներկայացրել «Խուլիգանության համար պատասխանատվությունն ուժեղացնելու մասին» ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1966 թ. հուլիսի 26-ի հրամանագրի պահանջների կատարման և շրջանի վարչական օրգանների սկզբնական կուսկազմակերպությունների խնդիրների մասին» հարցը, ինչպես և շրջանի պահակային պահպանության բաժնի աշխատանքը սոցիալիստական սեփականության պահպանման ուղղությամբ։ Հանձնաժողովը միաժամանակ բազմակողմանի օգնություն է ցույց տալիս շրջկոմին՝ հասարակական դրուժինաների աշխատանքը բարելավելու և այն ավելի նպատակասլաց դարձնելու գործում։

Շրջկոմի հրահանգիչներ Ժ. Աղիզյանի և Ա. Աստարյանի նախաձեռնությամբ նույնպես մի շարք հարցեր են ուսումնասիրվել՝ կապված սոցիալիստական ունեցվածքի պահպանության, վատնում-յուրացումների դեմ պայքարն ուժեղացնելու և այդ ոլորտում սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքն ավելի ներգործուն դարձնելու համար։ Այդ կապակցությամբ շրջկոմի բյուրոն անդրադարձել է ՀՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության, ՀՍՍՀ առևտրի մինիստրության պետառտեսչության, շրջանի շինարարական ձեռնարկությունների, կարի № 1 ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքին։ Համապատասխան միջոցներ են ձեռնարկվել կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման համար։

Հարկ է ընդգծել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի 1968 թ. հունիսի 11-ի որոշումից հետո շրջանային կոմիտեն, ինչպես և սկզբնական կուսկազմակերպությունները ավելի են խստացրել պահանջները և անզիջում



են բոլոր նրանց նկատմամբ, ովքեր ծուռ աչքով են նայում հանրային սեփականությանը, թերանում իրենց պաշտոնական պարտականությունների կատարման մեջ և նյութական վնաս պատճառում պետությանը։

Այդ գործում շնորհակալ ու բեղմնավոր աշխատանք է կատարում շրջկոմին կից կոմունիստների անհատական հարցերի քննարկման արտահաստիքային հանձնաժողովը, որը բաղկացած է 11 կուսանդամից։ Հանձնաժողովում հիմնականում ընդգրկված են կուսակցական, սովետական, տնտեսական, մանկավարժական աշխատանքի հարուստ փորձ ունեցող հին բոլշևիկներ, որոնք բարեխղճորեն կատարում են իրենց պարտականությունները։ Կանոնադրական պահանջները չկատարող, զանցանք թույլ տվող կոմունիստների անհատական գործերը հանձնաժողովի անդամների միջոցով տեղում բազմակողմանիորեն ուսումնասիրելուց, պարզելուց հետո է միայն, որ դրվում է կուսհանձնաժողովի քննարկմանը, ապա որոշակի կարծիքով տեղափոխվում շրջկոմի բյուրո։ Բավական է ասել, որ շրջկոմի բյուրոյում հանձնաժողովի առաջարկությունները առանձին կոմունիստների վարքագծի գնահատման հարցում եղել են վճռական և գրեթե միշտ ընդունվել են։

1968 թվականի և այս տարվա առաջին կիսամյակում կուսակցությունից վտարված կոմունիստների ավելի քան կեսը հեռացվել են հիշյալ արարքների համար։ Սակայն ցավով պետք է ասել, որ այդ ժամանակաընթացքում կուսակցությունից վտարված 32 կոմունիստներից 18-ի նկատմամբ սկզբնական կուսկազմակերպությունները բավարարվել էին նրանց կուսակցական տույժ հայտարարելով (նկատողություն կամ խիստ նկատողությունն անձնական քարտի մեջ գրանցումով, երբեմն էլ առանց գրանցման)։ Վտարված կոմունիստներից 10-ը դատապարտվել են, իսկ 8-ի նկատմամբ հարուցվել է քրեական գործ։ Վերջին մեկուկես տարում կոմունիստին ոչ վայել արարքի համար կուսակցական պատասխանատվության են ենթարկվել մի շարք կոմունիստներ, որոնց զգալի մասին հայտարարվել է նկատողություն և խիստ նկատողություն։

Այս փաստերը խոսում են այն մասին, որ սկզբնական կուսակցական շատ կազմակերպություններ թուլացրել են պահանջկոտությունը կոմունիստին անվայել վարքագիծ դրսևորած և ՍՄԿԿ կանոնադրության պահանջները խախտող կոմունիստների նկատմամբ։ Դրանք, միաժամանակ, վկայում են նաև շրջկոմի հրահանգչական կազմի անբավարար աշխատանքի մասին։ Լինելով ձեռնարկություններում և հիմնարկություններում, հրահանգիչը պարտավոր է խորամուխ լինել ներկուսակցական աշխատանքի հարցերում, իմանալ, թե ինչպիսի՞ աշխատանք է տարվում երիտասարդ կոմունիստների հետ, ինչպե՞ս է կազմակերպված նրանց քաղաքական ուսուցումը, ի՞նչ կոնկրետ հանձնարարություններ են կատարում նրանք։ Եթե կոլեկտիվում խոսվում է այս կամ այն կոմունիստի թերությունների մասին, լավ կլինի, որպեսզի հրահանգիչն անպայման անձամբ հանդիպի նրա հետ, պարզի պատճառները, խորհուրդներ տա և օգնի այդ ընկերոջը ժամանակին ուղղվելու համար։

Հրահանգիչը չպետք է սահմանափակվի կուսակցական կամ աշխատանքային կարգապահությունը խախտող կոմունիստների հետ ունեցած անհատական զրույցներով։ Շատ կարևոր է, որպեսզի նա ցուցաբերի հետևողականություն, հանդիպի նաև կուսկազմակերպության քարտուղարի, բյուրոյի անդամների, կուսկազմակերպիչների հետ և իմանա, թե նրանք ինչպես են ընահատում իրենց կազմակերպությունում գոյություն ունեցող նման երևույթները։ Իսկ երբ կուսժողովում կամ բյուրոյի նիստում քննարկվում է առանձին

կոմունիստների անհատական գործը, հրահանգիչը չպետք է սոսկ ունկնդրի դերում լինի, այլ օգնի որպեսզի ճիշտ գնահատվեն երևույթները, վգայուն մոտեցում ցուցաբերվի կուսակցական ընկերոջ նկատմամբ։

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց Կուսակցական կազմակերպությունների աշխատանքը կուսակցության շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքների բարելավման, իսկ ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի հերթական պլենումը՝ Կոմերիտմիության նկատմամբ կուսակցական օգնությունն ուժեղացնելու մասին հարցերը։ Այդ որոշումների կատարմանն անդրադարձավ նաև շրջանային կոմիտեի հերթական պլենումը։ Պետք է խոստովանել, որ այդ ուղղությամբ կատարված աշխատանքը չի բավարարում ՍՄԿԿ XXIII համագումարի պահանջներին։ Դեռևս շատ են թերությունները ու բացերը կոմերիտմիության նկատմամբ կուսակցական օգնության ու ղեկավարության հարցերում, կուսակցության շարքերի նոր համալրման որակական կազմի բարելավման գործում։ Կուսշարքերը նոր համալրած թեկնածուների թվում բանվորները կազմում են 30 տոկոս։ Խիստ աններելի է, երբ շատ կազմակերպություններ ունեն լավ ռեզերվներ, սակայն պասիվ են այդ հարցում։ Թույլ է աշխատանքը երիտասարդության հետ, այդ պատճառով էլ կուսակցության մեջ կոմերիտականների ընդունելության տոկոսը նույնպես ցածր է։

Ինչպես Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, այնպես էլ Երևանի քաղաքային ու շրջանային կոմիտեների պլենումները այդ հարցերի վերաբերյալ ընդունել են պարտավորեցնող որոշումներ, որոնց կենսագործման բնագավառում դարձյալ մեծ անելքներ ունեն հրահանգիչները։ Չէ՛ որ նրանք, որպես շրջկոմի ներկայացուցիչներ, ավելի հաճախակի են լինում հիմնարկություններում և ձեռնարկություններում, ճանաչում են մարդկանց, գիտեն, թե կուսկազմակերպություններից որն աճման ինչպիսի՞ ռեզերվ ունի, ինչպե՞ս է զբաղվում կուսակցության աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցերով, ինչպե՞ս է ղեկավարում և օգնում կոմերիտական կազմակերպությանը։ Հրահանգիչը պետք է ձգտի այն բանին, որպեսզի ընդունելության ժամանակ կուսկազմակերպություններն ու բոլոր կոմունիստներն այսուհետև ևս ղեկավարվեն կուսակցության կանոնադրությամբ և Կենտրոնական կոմիտեի ցուցումներով։

Մե՜ծ են մեր անելիքները և ավելի քան մեծ են խնդիրները։

Կուսակցության կանոնադրության մեջ ընդգծված է, որ կուսակցությունը ղեկավարում է սովետական ժողովրդի ստեղծարար մեծ գործունեությունը, կազմակերպված, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս նրա պայքարին։ Իրականացնելով կուսակցության պահանջը, շրջանային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունների հետ միասին, նպատակասլաց աշխատանք է տանում կոմունիստների ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը բարձրացնելու, քննադատության և ինքնաքննադատության միջոցով թերությունները բացահայտելու և վերացնելու, սկզբնական կուսկազմակերպությունների, կոմունիստների մարտունակությունը բարձրացնելու համար։

Այդ աշխատանքում, իրավ, վճռական է հրահանգչի դերն ու պատասխանատվությունը։



Ա. ԱԼԻԽԱՆՅԱՆ

# ԿՅԱՆՔԻ ՀԵՏ ՇԱՂԿԱՊՎԱԾ

## Ա. Լ. ԴԱՎՈՅԱՆ

Կուսշրջկոմում երկար զրուցելուց հետո Արշալույս Ալիխանյանին առաջարկեցին ստանձնել պղնձաքիմիական կոմբինատի կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի ղեկավարի պարտականությունները։

— Կաշխատեմ արդարացնել այդ մեծ վստահությունը,— պատասխանեց շրջկոմի հրահանգիչը և առանց հապաղելու գործի անցավ։

Առաջին ծանոթությունից, հարցափորձից, երիտասարդ պրոպագանդիստը եկավ այն եզրակացության, որ դպրոցը լավ է կոմպլեկտավորված, բոլոր ունկնդիրներն էլ ի վիճակի են յուրացնելու ուսումնական ծրագրով նախատեսված նյութերը։ Այնուհետև, Ա. Ալիխանյանը ներածական զրույց ունեցավ հերթական թեմայի շուրջ («Հավելյալ արժեքի բաշխումը շահագործող խմբերի միջև»)։

Զրույցի վերջում պրոպագանդիստը պատասխանելով ունկնդիրների հարցերին, խորհուրդ տվեց նրանց կարդալ Ջորինի Ամերիկայի անբագակիր արհաները գիրքը և Կոզմոյանի «Ալավերդի» պատմա-վավերագրական աշխատությունը։

Հաջորդ պարապմունքում պրոպագանդիստի հարցերին գոհացուցիչ պատասխանեցին ավագ ձուլող Ա. Ավանեսյանը, հերթափոխության պետ Խ. Խեչոյանը, ձուլող Մ. Գրիգորյանը, փականագործ Հ. Մանթաշյանը, կոռնկավար Մ. Աբոյանը և ուրիշներ։

Դպրոցի ունկնդիրները սիրով են հաճախում մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրողներին օգնելու նպատակով կազմակերպված դասախոսություններին։ Այսպես, երբ նրանք ուսումնասիրում էին «Իմպերիալիզմի հիմնական գծերը», նրանց համար դասախոսություններ կարդացին Վ. Ի. Լենինի Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա աշխատության, տնտեսության սոցիալիստական սիստեմի, աշխատանքի գիտական

կազմակերպման, պլանավորման ու նյութական խթանման նոր սիստեմի և այլ թեմաների մասին։

Տեսական հարցերի ուսումնասիրությունն այստեղ սերտորեն շաղկապվում է արտադրության առջև ծառացած խնդիրների, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, պղնձի կորուստների կրճատման, առաջավոր փորձի պրոպագանդման հետ։ Միայն անցած ուսումնական տարում պրոպագանդիստը բազմիցս թվեր է վերցրել ձեռնարկության պլանբաժնից, հաշվապահությունից ու աշխատանքի գիտական կազմակերպման բյուրոյից, ցույց տալու համար պղնձաքիմիական կոմբինատի աշխատանքային վերելքը։ Վերջին տարիներին ամբողջովին վերակառուցվել է կոմբինատը, որի համար կառավարությունը հատկացրել էր մոտ 38 մլն ռուբլի։

Պրոպագանդիստն իր զրույցներում հաճախ պատմում է կոմբինատի անվանի մարդկանց՝ սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Ղազարյանի, Լենինի շքանշանակիր Հ. Ալավերդյանի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Հ. Աբելյանի և շատ ուրիշների աշխատանքային սխրագործությունների մասին։

Ամփոփիչ պարապմունքները ցույց տվին, որ անցած ուսումնական տարում ունկնդիրները որոշակի հաջողության են հասել նաև մարքս-լենինյան փիլիսոփայության ուսումնասիրության բնագավառում։ Պրոպագանդիստի առաջադրած հանգուցային հարցերին սպառիչ պատասխան տվին ունկնդիրներ Հ. Ծովյանը, Լ. Մխիթարյանը, Ս. Ամիրաղյանը, Մ. Կիրակոսյանը և ուրիշներ։

Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի ունկնդիրներն արտադրության առաջավորներ են։ Ալվարդ ձուլող Ս. Աթիկյանն արժանացել է ՍՍՀՄ վաստակավոր մետալուրգի պատվավոր կոչման. շատերի անունները գրանցված են ձեռնարկության պատվոգրքում և այլն։

Լինում են դեպքեր, երբ առանձին ունկնդիրներ հերթափոխի պատճառով բացակայում են պարապմունքից։ Պրոպագանդիստը անուշադրության չի մատնում դա և ջանում է օգնել նրանց, որպեսզի ետ չմնան մյուսներից։

Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՆՐԱ ԵՐԿՐՈՐԴ ԿՈՉՈՒՄԸ

Դեռ մանուկ հասակից Սիմոն Սիմոնյանը սիրել է հայրենի Սանահինն ու նրա մարդկանց։ Թեև նրան միշտ գրավել է քաղաքի հրապույրը, ձուլող մարդկանց աշխատանքը, բայց նա գերադասել է գործել հայրենի գյուղում։ Այժմ նա Թումանյանի շրջանի բազմավաստակ ուսուցիչներից է և լավ է հիշում կոլեկտիվացման տարիները։ Շրջապատում էին համագյուղացիները նրան ու սկսվում էր հարցերի տարափը. ինչպիսի՞ն է լինելու կյանքը, որո՞նք են կոլեկտիվ տնտեսության առավելությունները։ Վիճելի շատ հարցեր էր լինում և նրանք մտորում էին մինչև ուշ գիշեր։ Բայց ամեն անգամ ցրվում էին հանգստացած սրտով։

Տարիներ անցան։ Կուսակցական ու կոմերիտական քաղխմբակներում սկսեցին ուսումնասիրել մեր կուսակցության պատմությունը։ Կուսբյուրոն Սիմոն Սիմոնյանին նշանակեց քաղխմբակի պրոպագանդիստ։

Առաջին պարապմունքից գոհ մնացին։ Կուսկազմակերպության քարտուղարը, որ ներկա էր պարապմունքին, գովեստի խոսքեր ասաց, քաջալերեց պրոպագանդիստին՝ կուսակցական հանձնարարությունը բարեխղճորեն կատարելու համար։ Այդ օրվանից անցել է շուրջ երեք տասնամյակ։ Պրոպագանդիստի պատվավոր աշխատանքը դարձել է ուսուցիչ Սիմոնյանի երկրորդ կոչումը։

Դժվար է ասել, թե Սիմոնյանը որքան է հուզվել ու հուզել մարդկանց, նրանց հասցրել կուսակցության ճշմարտացի խոսքը։

Վերջին տարիներին, կուսակցական ուսուցման սիստեմի վերակառուցումից հետո, բազմավաստակ պրոպագանդիստը ղեկավարում է մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քառամյա դպրոցը, ուր ուսումնասիրում են ՍՄԿԿ պատմությունը, քաղաքատնտեսությունը, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի հիմունքների առաջին բաժինը։ Ամփոփիչ պարապմունքները ցույց տվեցին, որ դպրոցի ունկնդիրները ձեռք են բերել որոշակի տեսական գիտելիքներ, կարողանում են ճիշտ կողմնորոշվել կուսակցության և կառավարության արտաքին ու ներքին քաղաքականության հարցերում։ Այդ ամենի համար նրանք մեծապես պարտական են, առաջին հերթին, իրենց պրոպագանդիստին։

Սիմոն Սիմոնյանն ջանում է ամեն կերպ ընդլայնել իր մտահորիզոնը, կարդում է քաղաքական գրականություն։ Պրոպագանդիստն ուսումնասիրվող թեմաները սերտորեն շաղկապում է արդի կարևորագույն պրոբլեմների, կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների, ՍՄԿԿ XXIII համագումարի առաջադրած տեսական ու գործնական հարցերի, հայրենի սովխոզի առջև ծառացած խնդիրների լուծման հետ։ ՍՄԿԿ պատմությունն ուսումնասիրելիս, նա յուրաքանչյուր թեմա կապել է Հայաստանում բանվորական շարժման, մարքսիզմ-լենինիզմի տարածման, բոլշևիկյան բջիջների ստեղծման հետ։

Գաղափարական բարձր մակարդակով է անցել քաղաքատնտեսության ուսումնասիրությունը։ Այդ տարկայի, մանավանդ Սոցիալիզմի քաղաքատնտեսություն բաժնի բազմակողմանի ուսումնասիրությունը հնարավորություն է տվել քաղդպրոցի ունկնդիրներին ավելի լավ գործելու իրենց վստահված բնագավառում։

Պարապմունքների ընթացքում պրոպագանդիստը բարեխղճորեն օգտագործում է քարտեզներ, դիագրամաներ, պլակատներ, հաճախ թվեր է բերում ցույց տալու սովխոզի աշխատանքի արտադրողականության աճը, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները, խոսում նաև թերությունների մասին։

Սիմոն Սիմոնյանը ո՛չ միայն մանկավարժ է, պրոպագանդիստ, այլև դասախոս։ Այժմ նրա դասախոսությունների հիմնական թեմաները նվիրված են Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՎԵԼԱՑՆԵԼ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՖՈՆԴԵՐԸ

*Կոլտնտեսության (գյուղատնտեսության արտելի) օրինակելի կանոնադրության նախագծում հատուկ տեղ է տրված կոլտնտեսության հանրային սեփականությանը։ Նախագծի 11-րդ կետում նշված է, որ հողի պետական սեփականության հետ մեկտեղ կոլտնտեսության տնտեսական հիմքն է կոլտնտեսության հանրային սեփականությունը։*

*Կոլտնտեսության հանրային սեփականությունն են կազմում նրան պատկանող ձեռնարկությունները, շենքերը, կառուցվածքները, տրակտորները, կոմբայնները և մյուս մեքենաները, սարքավորումները, փոխադրամիջոցները, բանող և մթերատու անասունները, բազմամյա տնկարքները, մելիորատիվ և իրիգացիոն կառուցվածքները, արտադրված արտադրանքը, դրամական միջոցները և կոլտնտեսության այլ ունեցվածքը։*

*Կանոնադրությամբ կոլտնտեսության ունեցվածքի և դրամական միջոցների տնօրինության իրավունքը պատկանում է միայն իրեն՝ կոլտնտեսությանը, կառավարման նրա մարմիններին՝ կոլտնտեսության վարչությանը և կոլտնտեսականների ընդհանուր ժողովին։*

*Կոլտնտեսության հիմնական միջոցների և մյուս նյութական արժեքների ձեռք բերումը, վաճառքը, խոտանումը և դուրս գրումը կատարվում է կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովի կողմից, սահմանված կարգով և գործող օրենսդրության հիման վրա։*

*Գյուղատնտեսության հետագա զարգացման, կոլտնտեսային կարգերի է՛լ ավելի ամրապնդման գործում՝ խիստ կարևոր է, որպեսզի գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության մեջ, որքան կարելի է պարզ ու հստակ ասվի կոլտնտեսային ունեցվածքի, հատկապես հիմնական ֆոնդերի ստեղծման, պահպանման ու ավելացման մասին, որովհետև առանց հիմնական ֆոնդերի ավելացման հնարավոր չէ գյուղատնտեսության հետագա աճը։*

*Միանգամայն հասկանալի է, թե ինչու կանոնադրության նախագծում նշվում է, որ իր գործունեությունը իրականացնելու և հանրային տնտեսության հետագա աճի համար կոլտնտեսությունն ստեղծում է հիմնական ու շրջանառու արտադրական ֆոնդեր, պլանաչափորեն և արտադրողաբար օգտագործում ու համալրում է դրանք։ Այդ ֆոնդերը անբաժանելի են (դրանց միջոցները ենթակա չեն կոլտնտեսության անդամներին բաշխելու) և օգտագործվում են միայն նպատակային կարգով։ Անբաժանելի են նաև ոչ արտադրական հիմնական ֆոնդերը։*



*Գյուղատնտեսական մթերքների արտադրության անընդհատ աճը ապահովելու նպատակով կոլտնտեսության վարչությունը և կոլտնտեսության բոլոր անդամները պարտավոր են արտադրության մեջ արմատավորել նոր տեխնիկան և առաջադիմական տեխնոլոգիան, կոմպլեքսային մեքենայացումը, աշխատատար պրոցեսների էլեկտրիֆիկացումը, գիտության նվաճումները և առաջավոր փորձը, հողերի մելիորացումը և գյուղատնտեսության քիմիացումը։ Նրանք միաժամանակ պարտավոր են կառուցել արտադրական շենքեր և կուլտուր-կենցաղային օբյեկտներ, բնակելի տներ ու մանկական հիմնարկներ, ճանապարհներ, գյուղատնտեսական և այլ կառուցվածքներ՝ տնտեսության զարգացման և բնակավայրերի կառուցապատման պլանների համապատասխան։*

*Անբաժանելի ֆոնդերն արտահայտում են կոլտնտեսության հիմնական միջոցների արժեքը, լինի դա արտադրական թե կուլտուր-կենցաղային։ Կոլտնտեսության հիմնական միջոցների անընդհատ ավելացումն այն հիմնական միջոցն է, որն ապահովում է արտադրության զարգացումը, գյուղատնտեսական մթերքների արտադրության աճը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Այդ ամենը, իհարկե, ձեռք է բերվում միայն այն ժամանակ, երբ հիմնական միջոցների ավելացման հետ միասին ապահովվում է դրանց արդյունավետ ու արտադրողաբար օգտագործումը։*

*Անառարկելի է այն իրողությունը, որ հիմնական միջոցների ավելացման և համախառն արտադրանքի աճի միջև գոյություն ունի ուղղակի կապ։ Դա մենք կարող ենք ցույց տալ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունների արտադրության օրինակով։*

Հիմնական միջոցների և համախառն արտադրանքի աճը Արտաշատի շրջանի կոլտնտեսություններում

| | Հիմնական միջոցների արժեքը (հազ. ռուբ.) | | Համախառն արտադրանքի արժեքը (հազ. ռուբ.) | | աճը 1940 թ. համեմատությամբ (տոկոսներով) | |
|---|---|---|---|---|---|---|
| | ընդամենը գումարը | հողատարած. 100 հեկտարի հաշվով | ընդամենը գումարը | հողատարած. 100 հեկտարի չափով | հիմ. միջոցները | համախառն արտադրանք |
| 1940 թ. | 4170,0 | 13,1 | 4736,0 | 15,4 | 100 | 100 |
| 1958 » | 11974,0 | 43,0 | 14,933,6 | 53,9 | 287 | 315 |
| 1962 » | 17156,0 | 46,5 | 20,343,0 | 76,2 | 411 | 440 |
| 1968 » | 22621,0 | 83,0 | 16,012,8 | 60,0 | 542 | 333 |

*Ինչպես երևում է աղյուսակի տվյալներից, հիմնական միջոցները 1956 թվականին աճել են 215, 1958 թվականին՝ 287, 1962 թվականին՝ 411, իսկ 1968 թվականին՝ 542 տոկոսով։ Դրա համեմատ էլ ավելացել է նաև համախառն արտադրանքը։*

*Հիմնական միջոցների աճի ազդեցությունը գյուղատնտեսական մթերքների արտադրության կամ համախառն արտադրանքի ավելացման գործում ավելի պարզ երևում է շրջանի կոլտնտեսությունների համեմատական տվյալներից։*

### 1968 թ. Արտաշատի շրջանի կոլտնտեսությունների համախառն արտադրանքի և համախառն եկամտի աճը համեմատած հիմնական միջոցների աճի հետ *(հազար ռուբլիներով)*

| Կոլտնտեսության խմբավորումն ըստ հիմնական միջոցների 100 հեկտար հողատարածության հաշվով | տնտեսութ. թիվը | հիմն. միջոց. արժեքը: ընդ. գումարը | հիմն. միջոց. արժեքը: 100 հեկտ. հաշվով | համախ. արտադ. արժեքը: ընդ. գումարը | համախ. արտադ. արժեքը: 100 հեկտ. հաշվով | համախ. եկամուտը: ընդ. գումարը | համախ. եկամուտը: 100 հեկտ. հաշվով | միջին հաշվով: մեկ տնտես. հիմնական միջոցները |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1. մինչև 80 հ. ռ | 16 | 5904,0 | 58,0 | 3552,2 | 34,8 | 2476,5 | 24,3 | 375,2 |
| 2. 80,1—100,0 հ. ռ | 15 | 8397,0 | 87,0 | 4955,0 | 47,6 | 8778,0 | 36,3 | 559,8 |
| 3. 100,1 հ. ռ. ավելին | 11 | 8329,7 | 122,7 | 5264,1 | 74,4 | 3867,9 | 57,0 | 757,2 |
| Ընդամենը | 42 | 22631,0 | 83 | 13771,3 | 50,3 | 10,121 | 41,0 | 538,8 |

*Աղյուսակում բերված տվյալներից միանգամայն պարզ է դառնում հիմնական միջոցների վճռական նշանակությունը արտադրանքի և եկամուտների ավելացման գործում։ Այսպես, 3-րդ խումբ կոլտնտեսություններում, որտեղ հողատարածության 100 հեկտարի հաշվով հիմնական միջոցների արժեքը գերազանցում է 100 հազար ռուբլուց, բուսաբուծության և անասնաբուծության համախառն արտադրանքը կազմում է 74,4 հազար ռուբլի, կամ 17.400 ռ. ավելի է, քան առաջին խումբ կոլտնտեսություններում, որտեղ հիմնական միջոցների արժեքը հողատարածության 100 հեկտարի հաշվով կազմում է 58,0 հազար ռուբլի։ Երրորդ խմբի կոլտնտեսություններում հողատարածության 100 հեկտարի հաշվով հիմնական միջոցների արժեքը կազմում է 122,7 հազար ռուբլի, իսկ յուրաքանչյուր տնտեսության հիմնական միջոցների արժեքը (միջին հաշվով) 757,2 հազար ռուբլի։ Պարզ է, որ թվական տվյալներով միջինը համեմատաբար բարձր է և գոհացուցիչ։*

*Սակայն իրականում ինչպիսի՞ վիճակ գոյություն ունի հենց այդ խմբի կոլտնտեսությունների տնտեսական գործունեության ասպարեզում։ Պարզ պատկերացում կազմելու համար բերենք համապատասխան տվյալներ և վերլուծենք դրանք։*

### Հիմնական միջոցները և բուսաբուծության համախառն արտադրանքը երրորդ խմբի մի քանի կոլտնտեսություններում *(1968 թ. տվյալներով)*

| Կոլտնտեսության անվանումը | Հիմնական միջոց. արժեքը (հազ. ռ.): ընդհանուր գումարը | Հիմնական միջոց. արժեքը (հազ. ռ.): հողատ. 100 հեկտ. հաշվով | բուսաբուծ. համախառն արտ. (հ. ռ.): ընդհանուր գումարը | բուսաբուծ. համախառն արտ. (հ. ռ.): հողատ. 100 հեկտ. հաշվով | Համախառն եկամուտ. (հազ. ռուբլի): ընդհանուր գումարը | Համախառն եկամուտ. (հազ. ռուբլի): հողատ. 100 հեկտ. հաշվով |
|---|---|---|---|---|---|---|
| Մասիս | 699,8 | 176,0 | 489,5 | 122,3 | 311,4 | 77,8 |
| Այգեպատ | 674,2 | 150,0 | 476,7 | 106,0 | 378,6 | 84,1 |
| Ն. Ջրաշեն | 553,5 | 130,0 | 254,3 | 58,5 | 216,3 | 50,0 |
| Ազատավան | 565,6 | 119,0 | 162,7 | 34,3 | 81,2 | 17,1 |
| Այգեզարդ | 1588,6 | 117,0 | 1,398,0 | 105,0 | 1,110,8 | 83,9 |
| Շահումյան | 1,222,1 | 107,0 | 637,6 | 56,0 | 481,5 | 42,2 |
| Քաղցրաշեն | 987,7 | 102,0 | 1034,7 | 106,6 | 747,0 | 77,0 |



*Բերված տվյալներից երևում է, որ առանձին կոլտնտեսություններում չնայած 100 հեկտար հողատարածության հաշվով մեծ են հիմնական միջոցները, բայց համախառն արտադրանքը քիչ է։ Այսպես. Ազատանի կոլտնտեսությունում 100 հեկտար հողատարածության հաշվով հիմնական միջոցները կազմում են 119,0 հազար ռուբլի, որն ավելի բարձր է, քան Այգեզարդի և Քաղցրաշենի կոլտնտեսություններում, բայց վերջիններիս համեմատությամբ Ազատանի կոլտնտեսության համախառն արտադրանքը պակաս է մոտ 3, իսկ համախառն եկամուտը՝ 4,5—5 անգամ։ Ինչո՞վ բացատրել այդ։ Նրանով, որ Ազատանի կոլտնտեսությունում ուշադրություն չեն դարձրել հիմնական արտադրաֆոնդի կառուցվածքի բարելավման վրա, որի հետևանքով ներդրված միջոցները գլխավորապես ծախսվել են ոչ թե արտադրաֆոնդերի ակտիվ մասի (մեքենաների և այլնի) համալրման վրա, այլ ուրիշ նպատակներով։ Դրա հետևանքը եղել է այն, որ դաշտային հիմնական աշխատանքների մեքենայացումը դեռևս գտնվում է ցածր մակարդակի վրա, մեծ է ձեռքի աշխատանքի ծավալը, որը բարձրացնում է արտադրանքի ինքնարժեքը։ Եթե այդ բոլորին ավելացնենք նաև այն, որ եղած արտադրամիջոցները ռացիոնալ չեն օգտագործվում և աշխատանքի վատ կազմակերպման ու անհրաժեշտ պահանջկոտության բացակայության հետևանքով խախտվում են պարտադիր ագրոկանոնները, ապա պարզ կդառնա, թե ինչու կոլտնտեսությունը քիչ համախառն արտադրանք է ստանում, շահաբեր չէ և զուտ եկամուտ չի ապահովում։*

*Ազատավանի կոլտնտեսության օրինակը եզակի չէ։ Ուստի կուսակցական կազմակերպությունները, սովետական, գյուղատնտեսական օրգանները և կոլտնտեսությունների վարչությունները պետք է լուրջ ուշադրություն հատկացնեն հիմնական արտադրաֆոնդերը նորագույն տեխնիկայով համալրելու, եղած միջոցները ռացիոնալ օգտագործելու, արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի արտադրողականությունն ամեն կերպ բարձրացնելու հարցերի վրա։*

*Կոլտնտեսության կանոնադրության նախագծում նշվում է, որ կոլտնտեսությունները եկամուտները բաշխելիս պետք է ապահովեն կուտակման և սպառման ճիշտ զուգորդումը, արտադրական, ապահովագրական և կուլտուր-կենցաղային հանրային ֆոնդերի մշտական աճը, կոլտնտեսականների կենսամակարդակի բարձրացումը։*

*Մինչդեռ վերջին տարիներին կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով կոլտնտեսություններին իրավունք է վերապահվել համախառն եկամուտներից առաջին հերթին առանձնացնելու աշխատանքի վարձատրության ֆոնդը, իսկ մնացած մասից՝ հիմնական ֆոնդերին հատկացումները։ Ստացվում է այնպես, որ առանձին կոլտնտեսություններ երաշխավորված չափից աշխօրին կրկնակի կամ եռակի վարձատրելով, զուտ եկամուտ չեն ապահովում և ոչինչ չեն առանձնացնում հիմնական ֆոնդերի ավելացման համար։ Միայն 1968 թ. շրջանի 42 տնտեսությունից 15-ը չեն ստացել զուտ եկամուտ և 16 կոլտնտեսություն եկամուտներից ամենևին հատկացումներ չեն կատարել կապիտալ ներդրումներին. միայն 8 կոլտնտեսություն է կապիտալ ներդրումներին հատկացումներ կատարել, այն էլ մինչև 5,0 հազար ռուբլու սահմաններում։ Ընդամենը շրջանի կոլտնտեսություններում անբաժանելի ֆոնդերին հատկացրել են 338,5 հազար ռուբլի և այդ այն դեպքում, երբ շրջանի կոլտնտեսություններում միայն 1968 թ. կապիտալ ներդրումների գծով կատարված ծախսերը կազմել են 3,824,9 հազար*

ռուբլի, ըստ որում 1,851,0 հազ. ռուբլի շենքերի կառուցման, 322,8 հազ. ռուբլի այգիների տնկման (բազմամյա տնկարքների), 404,6 հազ. ռուբլի տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների գնման և այլն։

Վերջին մի քանի տարիների ընթացքում անբաժանելի ֆոնդերի լրացմանը միջոցներ չհատկացնելու կամ քիչ չափով գումարներ հատկացնելու պատճառով կոլտնտեսությունները շրջանառու միջոցների հաշվին կատարել են 1,129,7 հազար ռուբլու գերածախս՝ կապիտալ ներդրումների գծով։ Դժվար է ասել, թե կոլտնտեսությունները քանի տարվա ընթացքում կարող են մարել թույլ տրված գերածախսը. սակայն մի բան պարզ է, որ այն կարող է խիստ կերպով ազդել արտադրության հետագա նորմալ զարգացման վրա։

Անհրաժեշտ է նշել, որ կոլտնտեսությունները օգտվելով իրենց տրված իրավունքներից, երբեմն հաշվի չեն առնում իրենց պարտականությունների կատարումը, տարեցտարի կրճատում են անբաժանելի ֆոնդերին կատարվող հատկացումները։

Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության նախագծում գրված է, որ կոլտնտեսության համախառն արտադրանքից փոխհատուցվում են դրա արտադրության վրա կատարված նյութական ծախսումները (հիմնական ֆոնդերի ամորտիզացիա, սերմացուի, կերի, պարարտանյութերի, նավթամթերքների ծախսումներ, ընթացիկ նորոգման ծախսեր և այլն)։

Ստացված համախառն եկամտի հաշվին կոլտնտեսությունը ստեղծում է աշխատանքի վարձատրության ֆոնդը։ Զուտ եկամուտը կոլտնտեսությունը օգտագործում է՝ հարկերը վճարելու և պետական դրամական վճարումները կատարելու համար։

Սակայն, չնայած այդ ամենին, հարկ ենք համարում նշելու, որ ներկայումս զգալիորեն պակասել են հարկերը և պետական դրամական վճարումները, քանի որ դրանք կատարվում են զուտ եկամտի հաշվին, որը, ինչպես վերը նշեցինք, քիչ է։ Այսպես, եթե 1958 թ. շրջանի կոլտնտեսությունները դրամական եկամտահարկ են վճարել 1,714,6 հազար ռուբլի, ապա 1968 թ. այն կազմել է միայն 210,3 հազար ռուբլի։

Եկամտահարկի նման խոշոր պակասումը տեղի է ունեցել այն դեպքում, երբ 1968 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների դրամական եկամուտները մեծ չափով ավելացել են։ Ուրեմն ինչո՞ւմն է բանը։ Բանը նրանումն է, որ կոլտնտեսություններում համախառն եկամտի բաշխման և նրանց շահութաբերության աստիճանի որոշման գործող կարգի հետևանքով շատ կոլտնտեսություններում արհեստականորեն պակասում է զուտ եկամտի չափը և իջնում է շահութաբերության աստիճանը։ Դրանք առանձին քննության ենթարկելու հարցեր են, որոնց ներկա պարագայում չենք անդրադառնում։

Կոլտնտեսությունները հաշվի չառնելով արտադրության հետագա զարգացման տեմպերը և այդ գործում հիմնական միջոցների ավելացման անհրաժեշտությունը, յուրաքանչյուր տարի գրեթե հատուցում են միայն հիմնական ֆոնդերի մաշվածքը։ Պատահական չէ, որ 1968 թ., նախորդ տարվա համեմատությամբ, շրջանի կոլտնտեսություններում հիմնական միջոցների արժեքը ավելացել է 1,349 հազար ռուբլով, այն էլ երկարատև վարկերի հաշվին։ Միայն այդ տարի շրջանի կոլտնտեսությունները կապիտալ ներդրումների գծով պետությունից ստացել են 1.668,7 հազար ռուբլու վարկ։



Յուրաքանչյուր տարի հիմնական միջոցներից դուրս են գրվում 2 միլիոնից ավելի արժեքներ, ըստ որում միայն հիմնական միջոցների մաշվածքը կազմում է 973 հազար ռուբլի, որը կարգավորվում է ամորտիզացիոն հատկացումների հաշվին։ Մինչդեռ ամորտիզացիոն հատկացումները կարող են լավագույն դեպքում պահպանել եղածի մակարդակը և ոչ թե ավելացնել հիմնական ֆոնդերը։ Պարզապես պետք է նշել, որ այդպես չեն մտածում առանձին կոլտնտեսությունների ղեկավարները. ավելին, կոլտնտեսությունների վարչությունների առանձին նախագահներ երբեմն մտացածին կերպով կապիտալ ներդրումների կատարվող հատկացումները օգտագործում են աշխատանքի վարձատրության համար։

Փաստը մնում է փաստ, որ կոլտնտեսությունները տարեցտարի պակասեցնում են կապիտալ ներդրումների գծով կատարվող հատկացումները։ Եթե ասենք, որ դա հիմնականում կատարվում է աշխատանքի վարձատրության ֆոնդը ավելացնելու հետևանքով, չի կարելի, որովհետև աշխատանքի վարձատրության ֆոնդը նույնպես մեծ չէ։ Այսպես, շրջանի կոլտնտեսություններում կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդը 1940 թ. կազմել է կոլտնտեսությունների համախառն եկամտի 68,6, 1950 թ.՝ 55,0, 1953 թ.՝ 40,1, 1958 թ.՝ 52,3, 1965 թ.՝ 56,9, իսկ 1968 թ.՝ 57,5 տոկոսը։

Ինչպես տեսնում ենք, աշխատանքի վարձատրության ֆոնդին համախառն եկամտից կատարված մասհանման տոկոսը այնքան մեծ չէ։ Ավելին, 1953—1967 թվականներին կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդին հատկացվել է կոլտնտեսությունների համախառն եկամտի 43,47 տոկոսը։ Աճել են հատկապես արտադրական ծախքերը։ Այսպես, 1956, 1957, 1958, 1959 թվականներին արտադրական ծախքերը, առանց ամորտիզացիայի, կազմել է դրամական եկամուտների 11—12,5, 1960 թ.՝ 24,7, 1968 թ.՝ 29, 1967 և 1968 թվականներին 20 տոկոսից ավելին։

Մեր կարծիքով գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության նախագծում պետք է որոշակի կերպով գրվի և անպայման սահմանվի տարբեր ֆոնդերին հատկացումների չափը։

Կանոնադրության նախագծում նշված է, որ կոլտնտեսությունների հիմնական և շրջանառու ֆոնդերի ավելացման համար մասհանումները պարտադիր են, մինչդեռ այդ նույն կետում շարունակվում է, որ մասհանումների չափերը ամեն տարի սահմանվում են, հաշվի առնելով, թե որքան միջոցներ են պահանջվում հանրային արտադրության հետագա անընդհատ աճը ապահովելու համար։ Նախագծում ճիշտ է նշված, եթե բոլոր կոլտնտեսությունների վարչությունները ճիշտ հասկանան և կատարեն այն։ Սակայն որոշ կոլտնտեսություններ գտնում են, որ իրենց տնտեսությունների հիմնական ֆոնդերի համար յուրաքանչյուր տարի պետք է մասհանվի համախառն եկամտի մինչև 5 տոկոսը, երբեմն էլ գտնում են, որ դա անհրաժեշտ չէ և միջոցներ չեն հատկացնում։

Կարծում եմ ճիշտ կլինի, եթե հիմնական ֆոնդերի ընդլայնման համար կանոնադրության մեջ սահմանվի մինիմում և մաքսիմում չափերը։ Ըստ իս դա պետք է լինի 10—20 տոկոսի չափով՝ ներառյալ ամորտիզացիոն հատկացումները։ Այդ հնարավոր կդարձնի հիմնական ֆոնդերի անընդհատ աճը և կնպաստի գյուղատնտեսության արտադրության հետագա զարգացմանը։

Խիստ կարևոր է նաև աշխատանքի վարձատրության ֆոնդերի չափերի որոշումը։ Երբեմն առանձին կոլտնտեսություններում աշխատանքի վարձա-

տրությանը հատկացնում են համախառն եկամտի 30—40 տոկոսի չափով, որը միանգամայն աններելի է։ Չի կարելի եկամուտների 50 տոկոսից պակաս թողնել աշխատանքի վարձատրությունը, քանի որ դրանով մենք գցում ենք կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։

Մեր կարծիքով ճիշտ կլիներ, եթե գյուղատնտեսական արտելի կանոնադրության մեջ արտադրական ծախքերը, աշխատանքի վարձատրության և հիմնական ֆոնդերի մասհանումների չափերը սահմանվի եկամուտների հաշվով՝ մինիմում և մաքսիմում չափերով։

Մյուս կարևոր հարցը, դա կոլտնտեսականների ընդհանուր ժողովների որոշումների վերջնական լինելու հարցն է։

Կանոնադրության նախագծում նշված է, որ հիմնական միջոցների և մյուս նյութական արժեքների ձեռք բերումը, վաճառքը, խոտանումը և դուրս գրումը կատարվում է կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովի կողմից սահմանված կարգով և գործող օրենսդրության հիման վրա։

Իհարկե, դա ճիշտ է։ Սակայն պարզ չէ մի բան. երբ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը կառավարության որոշումներին հակասող որոշում է ընդունում, կամ չի արտահայտում այդ որոշումների ոգին, ապա ո՞վ պետք է այդ որոշումը կասեցնի կամ չեղյալ համարի։

Քիչ չեն դեպքերը, երբ կոլտնտեսություններում ժամկետից շուտ դուրս են գրում տրակտորները, ավտոմեքենաները, կամ գյուղատնտեսական այլ մեքենաները, երբեմն էլ առանձին անփույթ վերաբերմունքի պատճառով շարքից հանում են գյուղատնտեսական մեքենաները, բայց կոլտնտեսության ընդհանուր ժողովը չի որոշում դրանց արժեքը վերականգնել։

Ճիշտ է, կանոնադրության նախագծում նշված է, որ կոլտնտեսության այն անդամները, ովքեր իրենց անփութության կամ անտարբերության պատճառով ոչնչացրել, փչացրել կամ կորցրել են կոլտնտեսային գույքը, ինչպես նաև ովքեր մեղավոր են տրակտորները, ավտոմեքենաները, գյուղատնտեսական մեքենաները, բանող կամ մթերատու անասունները ինքնագլուխ օգտագործելու մեջ և կոլտնտեսությանը նյութական վնաս են պատճառել, պարտավոր են այդ վնասը հատուցել կոլտնտեսությանը։

Իրական վնասի չափը որոշում է կոլտնտեսության վարչությունը։ Իսկ եթե վնասի վերականգնման մասին կոլտնտեսության ընդհանուր ժողովը որոշում չի կայացնում, իսկ դա մի շարք պատճառներով շատ կոլտնտեսություններում բացառված չէ, ապա ո՞վ պետք է ուղղի այն, երբ կանոնադրության մեջ այդ մասին ոչինչ չի ասվում։

Այդ և մյուս հարցերում, կարծում ենք, որ իր վերջնական խոսքը պետք է ասի շրջսովետի գործկոմը, որը գործող օրենսդրության համաձայն պետք է ուղղի կամ բեկանի այս կամ այն կոլտնտեսության ընդունած սխալ որոշումը։

Գյուղատնտեսական արտելի նոր, օրինակելի կանոնադրության ընդունումը կարևոր իրադարձություն կլինի կոլտնտեսային կարգերի հետագա ամրապնդման, մեր երկրում գյուղատնտեսության աննախընթաց զարգացման գործում։

Ժ. Վ. ՍԱՆՈՅԱՆ

Աշխատավորների դեպուտատների Արտաշատի շրջսովետի գործկոմի նախագահ



# ՄԵՂՎԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Մեղրը, ինչպես նաև մեղվի թույնը ժողովրդական հնամենի բուժամիջոց են։ Անհիշելի ժամանակներից մարդը գնահատել է մեղրի և մեղվաբուծության մյուս արտադրանքների նշանակությունը։ Դեռևս ամենահեռավոր դարերում Եգիպտոսում, Չինաստանում, Հնդկաստանում, Հռոմում մեղրը համարվում էր «երկարակեցության դիետա»։

Մեր ժամանակներում կլինիկական դիտումները հաստատում են մեղրի, որպես բնական դեղորայքի, բարձր գնահատականը։ Մեղրը օժտված է թերապևտիկ բազմակողմանի հատկություններով։ Կարևոր է նաև մեղրամոմը, որն օգտագործվում է արտադրության մոտ 40 ճյուղերում։

Սակայն, միայն դրանցով չի սահմանափակվում մեղվաբուծության նշանակությունը։ Մեղրատու մեղուների դերն անհամեմատ ավելի մեծ է՝ որպես ծաղկավոր բույսերի փոշոտիչների։ Գյուղատնտեսության ծաղկավոր բույսերի բերքատվության բարձրացման հարցը վաղուց զբաղեցրել և ներկայումս զբաղեցնում է ո՛չ միայն հողագործներին, այլև մեծ թվով գիտնականների, որոնք այդ լուրջ խնդրի լուծման համար կարևորագույն միջոցառումներից մեկը համարում են մեղուների միջոցով էնտոմոֆիլ կուլտուրաների խաչաձև փոշոտումը։

Դարվինն իր երկարամյա հետազոտություններով հանգեց այն հետևության, որ բույսերի զգալի մասն ինքնափոշոտման ժամանակ այլասերվում է, ուստի, դրանք կարիք ունեն խաչաձև փոշոտման։

Դարվինը և Միչուրինը բեղմնավորման ընտրողականությանը տվել են կենսաբանական որակավորում՝ հանգելով այն հետևության, որ տարբեր որակի ծաղկափոշու խառնուրդով ծաղիկների խաչաձև փոշոտումը ո՛չ միայն նպաստում է պտղի բարձր բերքատացման և սերմի բերքատվության բարձրացմանը, այլև լավանում են դրանց ժառանգական հատկանիշները, որի շնորհիվ բարձրանում է նաև հաջորդ սերնդի կենսունակությունը։

Հաշվարկները ցույց են տվել, որ մեղուներն անուղղակի ճանապարհով ծաղկավոր բույսերի խաչաձև փոշոտման միջոցով 10—15 անգամ ավելի շատ եկամուտ են տալիս ժողովրդական տնտեսությանը, քան ուղղակի ճանապարհով դրանցից ստացված մեղրի և մոմի արժեքը։ Ուստի, մեղվաբուծության զարգացումը հրամայական անհրաժեշտություն է։

Այստեղ հարկ է նշել այն կարևոր փոփոխությունները, որոնք կատարվում են մեր կենդանական աշխարհում։ Հայտնի է, որ բույսերի վնասատուների դեմ պայքարելու ներկա եղանակներն ու այդ նպատակի համար օգտագործվող թույներն աստիճանաբար ոչնչացնում են ո՛չ միայն բույսերի վնասատուներին, այլև վայրի մեղուներին ու բզեզներին, որոնք այնքան ակտիվ մասնակցում են ծաղկավոր բույսերի խաչաձև փոշոտմանը։ Ամենայն հավանականությամբ, կարճ ժամանակից հետո գյուղատնտեսական կուլտուրաների ծաղիկների փոշոտողները կմնան մեղուները։ Այդ հարցն աչքաթող չի կարելի անել առանձնապես այժմ, երբ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզնե-

րում օրըստօրե ավելանում են պտղատու և խաղողի այգիների տարածությունները։ Իսկ դրա համար անհրաժեշտ է զարգացնել թիթեռնածաղկավոր խոտաբույսերի սերմնաբուծությունը, որը նույնպես առանց մեղվաբուծության զարգացման չի կարելի լուծել։ Մի խոսքով, ծաղկավոր բույսերի հետագա զարգացումն ու բերքատվության բարձրացումը հիմնականում պայմանավորված են մեղվաբուծության զարգացմամբ։

Գյուղատնտեսության մասնագետները,— ինչպես իրավացիորեն մատնանշում է պրոֆ. Ա. Կոթողյանը,— պետք է իմանան, որ ծաղկավոր կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում ինչպիսի ագրոտեխնիկական միջոցառումներ կիրառելու լինեն, միևնույն է, առանց մեղուների խաչաձև փոշոտման՝ զգալի արդյունքի չեն հասնի։ Իսկ խաչաձև փոշոտման հիմնական դերը պատկանում է մեղրատու մեղվին։ Բոլոր տեսակի վայրի մեղուներն ու բզեզները ձմեռում և ապրում են միայնակ, իսկ մեղրատու մեղուները ձմեռում են ընտանիքներով և գարնանը միանգամից յուրաքանչյուր ընտանիքից տասնյակ հազարավոր աշխատավոր մեղուներ են թռչում դեպի դաշտ։ Խաչաձև փոշոտման շնորհիվ պտղատու ծառերի բերքատվությունը բարձրանում է 25—70, իսկ խոտաբույսերինը՝ 50—100 տոկոսով։

Մեղվաբուծությունը Հայաստանում հին պատմություն ունի։ Եթե 1912 թ. Հայաստանում կար միայն 26.700 մեղվաընտանիք, ապա 1955 թ. դրանց թիվը հասավ 150 հազարի, որից մոտ 100 հազարը՝ կոլտնտեսություններում և սովխոզներում։

Հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների երեք քառորդից ավելին ունի մեղվանոց. քիչ չեն այն տնտեսությունները, որոնք յուրաքանչյուր մեղվաընտանիքից ստանում են 20—30 կգ ապրանքային մեղր։

Մեղվաընտանիքների նկատմամբ անհրաժեշտ խնամք տանելու դեպքում հնարավոր է մեղվաբուծության համար նույնիսկ աննպաստ տարիներում մեղրի բարձր բերք ստանալ։ Այսպես, 1958 թ. կլիմայական խիստ անբարենպաստ տարում Գորիսի շրջանի Խոզնավար, Խնածախ, Քարահունջ, Ղափանի շրջանի Շիշկերտ և Ալավերդու, Ստեփանավանի, Մեղրու, Արարատյան հարթավայրի շրջանների շատ կոլտնտեսություններում ամեն մի մեղվաընտանիքից ստացվեց 10—20 կգ ապրանքային մեղր։ 1962 թ. Եղեգնաձորի շրջանի Գնիշիկ գյուղում կոլտնտեսության մեղվապահներ Թ. Հովհաննիսյանը և Ք. Մովսիսյանն իրենց խնամած 150 մեղվաընտանիքից ստացան 25-ական կգ ապրանքային մեղր։ Համանման օրինակներ կարելի է բերել հանրապետության այլ շրջանների տնտեսություններից։ Շատ տնտեսություններում մեղրի առատ բերք են ստացել նաև 1967 և 1968 թվականներին։

Չնայած տնտեսության այդ ճյուղի զարգացման համար եղած մեծ հնարավորություններին, հանրապետությունում մեղվաբուծության ներկա վիճակն անբավարար է։ Արտադրական վարչությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները վատ են զբաղվում մեղվաբուծության զարգացման հարցերով։ Այդ է պատճառը, որ վերջին տարիներին զգալիորեն կրճատվել է մեղվաընտանիքների թիվը։ Կերի համապատասխան պաշար չստեղծելու և վատ խնամելու պատճառով առանձին տնտեսություններում մեղվաընտանիքները պակասել են 3—4 անգամ կամ նույնիսկ լրիվ ոչնչացվել։

Հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների զգալի մասը դեռևս արդյունավետ չի օգտագործում մեղվաբուծության զարգացման համար եղած հնարավորությունները, ինչպես նաև գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, որի հետևանքով տարեցտարի նվազում է մեղվաընտանիքների թիվը, իջնում մթերատվությունը։ Որոշ տնտեսությունների ղեկավարների անուշադրության և մեղվաբուծության հանդեպ ունեցած անբարյացակամ վերաբերմունքի հետևանքով վերջին տարիներս լուծարքի են ենթարկվել մեղվաընտանիքները։ Այդպիսի դեպքեր են տեղի ունեցել, օրինակ, Արտաշատի շրջանի Նորաշեն, Մուղան գյուղերի կոլտնտեսություններում, Ալավերդու շրջանի Սանահինի սովխոզում։ Բազմաթիվ տնտեսություններ էլ (Մարտունու շրջանի Երանոս, Սևանի շրջանի Մարմարիկ, Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղերի կոլտնտեսությունները մեղվաընտանիքների խնամքը վատ կազմակերպելու



հետևանքով տարիներ շարունակ մեղր չեն ստացել, քիչ չեն նաև այն տնտեսությունների թիվը, որոնք ունեն փոքր, ընդամենը 50—80 մեղվաընտանիքից բաղկացած մեղվանոցներ։ Հասկանալի է, թե ինչու այդպիսի փոքր մեղվանոցներում չեն կարող փոխհատուցվել նույնիսկ կատարված ծախսերը։ Այդպիսի տնտեսություններում, որպես կանոն, շատ բարձր է մեղրի ինքնարժեքը։ Այդ ամենի հետևանքով հանրապետությունում շատ ցածր է մեղվաընտանիքների մթերատվությունը։ Մեղվաընտանիքների թիվը և մթերատվությունը մեծ փոփոխություններ են կրել առանձնապես վերջին 10 տարիներին։

**Մեղվաընտանիքների թիվը և մեղրի արտադրությունը հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ ըստ գոտիների**

| Գոտիներ | 1957 թ. | | | 1967 թ. | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Մեղվաընտանիքներ | Մեղրի համախառն բերք, ց. | Մեկ մեղվաընտանիքից ստացված մեղր, կգ. | Մեղվաընտանիքներ | Մեղրի համախառն բերք, ց. | Մեկ մեղվաընտանիքից ստացված մեղր, կգ. |
| Արարատյան դաշտավայր | 18766 | 2654,4 | 14,0 | 10965 | 1141,8 | 10,4 |
| Զանգեզուր | 15296 | 1584,6 | 10,4 | 13259 | 2036,0 | 15,3 |
| Հյուսիս-արևելյան | 12620 | 401,5 | 3,2 | 7764 | 652,4 | 8,4 |
| Նախալեռնային | 8754 | 801,6 | 9,2 | 4590 | 530,7 | 11,7 |
| Սևանի ավազան | 8318 | 650,0 | 7,8 | 6039 | 594,0 | 9,8 |
| Լոռի-Փամբակ | 7634 | 309,9 | 4,6 | 5256 | 456 | 8,7 |
| Դարալագյազ | 7441 | 1044,1 | 14,0 | 9112 | 1197,0 | 13,1 |
| Շիրակ | 6752 | 554,7 | 8,2 | 4013 | 553,0 | 13,8 |
| Կենտրոնական | 3224 | 228,6 | 7,1 | 688 | 68,0 | 9,9 |
| Ընդամենը | 88805 | 8328,4 | 9,3 | 61686 | 7228,9 | 11,7 |

Բերված տվյալներից երևում է, որ հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների մեղվաընտանիքների թիվը 88805-ից հասել է 61686-ի կամ նվազել է 27119-ով (30 տոկոսով)։ Ընդ որում մեղվաընտանիքների թիվը, որպես կանոն, կրճատվել է բոլոր գոտիներում։ Հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների հաշվետվությունների տվյալներով, մեկ մեղվաընտանիքը գնահատված է, միջին հաշվով, 23 ռուբլի, հետևապես միայն մեղվաընտանիքների կրճատման հետևանքով հանրապետությունը կրել է 407,8 հազար ռուբլու վնաս։ 1967 թ. տվյալներով, հանրապետության կոլտնտեսություններում, սովխոզներում և ուսումնա-փորձնական ու պետական այլ տնտեսություններում, ամբողջությամբ վերցրած, մեղվաընտանիքների թիվը մոտ 65 հազար էր, իսկ մեկ մեղվաընտանիքի մթերատվությունը՝ 12 կգ, 1957 թ. 9,2 կգ փոխարեն։

Հանրապետության 34 շրջաններից միայն Ազիզբեկովի, Եղեգնաձորի և Մեղրու շրջաններում է ավելացել դրանց թիվը, իսկ 31-ում՝ նվազել է։ Ընդ որում, մեղվաընտանիքների թիվը խիստ կրճատվել է Աբովյանի, Ամասիայի, Անիի, Ապարանի, Ախուրյանի, Աշտարակի, Էջմիածնի, Կալինինոյի, Հրազդանի, Նոյեմբերյանի, Շահումյանի և Սևանի շրջաններում, իսկ Ղուկասյանում՝ իսպառ վերացվել է։ Չնայած մի փոքր ավելացել է մեղվաընտանիքների մթերատվությունը, բայց դրանց թվի կրճատման հետևանքով նվազել է մեղրի համախառն արտադրությունը։ 1967 թ. տվյալներով, կոլտնտեսություններում, սովխոզներում և պետական մյուս տնտեսություններում արտադրվել է 7447 ցենտներ մեղր։ Այլ խոսքով, հանրապետության մեկ շնչին ընկնում է 336, իսկ 1968 թ.՝ 432 գրամ մեղր, որ շատ չնչին է։ Դա բացատրվում է նրանով, որ շատ ցածր է մեկ մեղվաընտանիքից ստացվող մեղրը. շրջաններում այն տատանվում է 3—19 կգ սահմաններում։

ճախում դրանց. օրինակ, կարմիր երեքնուկը, վիկան, կորնգանը, առվույտը և այլ ծաղիկներ։ Խոշորացված մեղուների բազմացումը, ոչ միայն կնպաստի մեղրի և մոմի արտադրանքի ավելացմանը, այլև գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը։ Մինչդեռ այդ կարևոր գործը տեղից չի շարժվում։

Մեղվաբուծության զարգացման ասպարեզում կարևոր նշանակություն ունի նաև մեղվարնտանիքները մեղրատու վայրերի փոխադրումը, որը շատ տնտեսություններում գրեթե չի կիրառվում, կամ դա արվում է դեպքից դեպք։

Հանրապետության մեղվաբուծության զարգացումն արգելակող պատճառներից է մեղվապահական գույքի, հատկապես փեթակների, շրջանակների և այլ նյութերի անբավարար մատակարարումը։ Անհրաժեշտ է ավելացնել դրանց արտադրությունը։ Մեղվաբուծության հետագա զարգացման համար պետք է արտադրությունում լայնորեն կիրառել արտասահմանյան և հայրենական գիտության նվաճումներն ու առաջավորների փորձը, բարձրացնել մեղվաբուծական վարման ցածր կուլտուրան։

Մեղվաբուծության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառումներից է այդ ճյուղի մասնագիտացման հետագա խորացումը։ Խաղողագործական, պտղատու, բանջարային և տեխնիկական կուլտուրաներ մշակող կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտեսությունները պետք է ունենան փոշոտող-մթերային, մյուս տնտեսություններում՝ մթերային-փոշոտող և տոհմային ուղղություն։

Ներկայումս մեծ տեղ պետք է տալ գյուղատնտեսական կուլտուրաները մեղուների միջոցով խաչաձև փոշոտելու ագրոտեխնիկական միջոցառումներին։ Դրա համար կոլտնտեսություններն ու սովխոզները ծաղկման ժամանակաշրջանում պետք է բազմամյա տնկարկների յուրաքանչյուր հեկտարում տեղադրեն սեփական կամ վարձու լիարժեք մեղվարնտանիքները։ Այդ նպատակով մեկ հեկտար պտղաբերող այգուն պետք է ունենալ ոչ պակաս 2—2,5, բանջարաբոստանային կուլտուրաներին՝ 0,5, կերային բույսերին՝ 3—4 մեղվարնտանիք։

Գոյություն ունեցող ոչ ճիշտ պրակտիկան (պտղատու այգիներում և գյուղատնտեսական այլ տնկարկներում տեղադրված փեթակների պահպանության ծախսերը ծածկվում են միայն մեղվաբուծության արտադրանքի հաշվին) մեծ վնաս պատճառեցին այդ ճյուղին, որի հետևանքով շատ տնտեսություններ վերացրին իրենց փեթակները, իսկ մյուսները՝ խիստ կրճատեցին։ Կարծում ենք, որ բոլոր գերատեսչությունների համար պետք է սահմանել պարտադիր փոշոտման վարձատրության պայմաններ այն հաշվով, որ փեթակների պահպանության ծախսերը փոխհատուցվեն այն կուլտուրաների եկամուտների հաշվին, որտեղ մեղուները փոշոտում են կատարել։

Մեղվաբուծությունը պետք է արժանի տեղ գրավի հանրապետության գյուղատնտեսության մեջ։ Այդ են պահանջում մեղվաբուծության հետագա զարգացման և հատկապես, ծաղկավոր բույսերի խաչաձև փոշոտման միջոցով գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության արագ բարձրացման շահերը։

**Ա. Ա. ՋՈՒՐԱԲՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ



# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՏՈՒԺԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԱՅԻՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Սոցիալիստական արտադրության վերակառուցման, նրա տեխնիկական հագեցվածության բարձրացման շնորհիվ էապես փոփոխվել է նաև հասարակության սոցիալական կառուցվածքը։ Տեղի է ունենում աշխատուժի բաշխում և վերաբաշխում ինչպես ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև, այնպես էլ դրանց ներսում։ Աշխատանքի բաշխումն ու վերաբաշխումը հասարակության սոցիալական կառուցվածքի փոփոխության պրոցես է, որը սոցիալիստական հասարակարգում արտահայտվում է ամբողջ բնակչության մեջ բանվոր դասակարգի տեսակարար կշռի աճով։ Այսպես, Սովետական Միությունում բանվոր դասակարգի տեսակարար կշիռն ամբողջ բնակչության մեջ 1940 թ. կազմել է 4,3, 1960-ին՝ 8,8, 1965-ին՝ 9,8 տոկոս։ Իսկ ՀՍՍՀ-ում 1939 թ.՝ 6,8, 1959-ին՝ 15,1 տոկոս* (Итоги всесоюзного переписи населения 1939 г. и 1959 г., стр. 34 и 16)։

*Սոցիալիստական արդյունաբերության մեջ բանվորների այսպիսի արագ աճն ունի իր սոցիալական հիմքը։ Նախ՝ սոցիալիստական հասարակության մեջ նրանք ապահովված են մշտական աշխատանքով, երկրորդ, սոցիալիստական արդյունաբերությանը բնորոշ է նրա աննախընթաց վերելքն ու անճգնաժամային զարգացումը։ Դրա շնորհիվ սոցիալիստական հասարակության զարգացման ընթացքում (բացառյալ պատերազմի տարիները) ակնառու է բանվոր դասակարգի քանակական աճը։*

*Արդյունաբերության մասնակի մեքենայացումից անցումն արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, ուղեկցվում է հասարակական արտադրության կառուցվածքի փոփոխությամբ։ Տեխնիկական առաջադիմությունը հանգեցնում է ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքի որոշակի փոփոխության, որի համապատասխան և փոխվում է աշխատուժի բաշխման հարաբերակցությունն այդ ճյուղերի ներսում։ Այսպես, եթե 1960 թ. նյութական արտադրության ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը 81,7 տոկոս էր, ապա 1967-ին այն իջավ 77,2-ի, ոչ նյութական արտադրության ոլորտում զբաղվածների թիվը՝ 18,3-ից՝ 22,8 տոկոսի։ Արդյունաբերական շինարարության մեջ զբաղված աշխատողների տեսակարար կշիռը 1960 թ. 29 տոկոսից՝ 1967 թ. հասավ 35-ի, իսկ գյուղատնտեսության մեջ զբաղվածներինը՝ 44-ից իջավ 30 տոկոսի* (Народное хозяйство Арм. ССР в 1967 г., Статистический сборник)։

*Ժողովրդական տնտեսության մեջ աշխատուժի այսպիսի տեղաշարժերը տեխնիկական առաջադիմության արդյունք են։ Նյութական արտադրության ոլորտում տեխնիկական առաջադիմությունը (արտադրության մեքենայացում ու ավտոմատացում, նոր հարահոս սիստեմների ստեղծում, տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործում) բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, դրանով իսկ պայմաններ ստեղծում մեծացնելու ոչ նյութական արտադրության ոլորտում զբաղվածների թիվը։ 1966 թ. այդ ոլորտում զբաղվածների թիվը, 1929 թ. համեմատությամբ, ավելացել է 15,2 անգամ (այդ թվում՝ առևտրի, հասարակական սննդի, մթերումների, նյութատեխնիկական մատակարարման, բնակարանային կոմունալ տնտեսության մեջ՝ 22 անգամ, առողջապահության մեջ՝ 17, լուսավորության՝ 14,8, գիտության մեջ՝ 35,8 անգամ* (Экономика и культура Армении к 50-летию Великого Октября, 1967, стр. 247)։ *Ոչ նյութական արտադրության ոլորտում զբաղվածների թվի ավելացմամբ կբարձրանա բնակչության սպասարկման մակարդակը։*

*Փոխվել է նաև արտադրության «Ա» և «Բ» խմբերում զբաղված աշխատողների աճի հարաբերակցությունը։ Այսպես, համախառն արտադրանքի աճի ավելի բարձր տեմպերի դեպքում աշխատուժի ավելի ցածր աճ է նկատվում արդյունաբերության «Ա» և հակառակն է կատարվում արտադրության «Բ» խմբի ճյուղերում։ Այս բացատրվում է նրանով, որ տեխնիկական առաջա-*

դիմության բուռն զարգացման պայմաններում բանվորների թվի բացարձակ աճն ուղեկցվում է նրա աճի տեմպերի իջեցմամբ։ Այսպիսով, տեխնիկական առաջադիմության շնորհիվ աշխատուժի աճն արտադրության տարբեր ճյուղերում տարբեր են, ըստ որում, ոչ նյութական արտադրության ոլորտում այն ավելի արագ է աճում, քան նյութական արտադրության ոլորտում։

Տեխնիկական առաջադիմության շնորհիվ բանվորների թվի աճն ուղեկցվում է նաև բանվորների սեռատարիքային փոփոխություններով։

Արտադրության ավտոմատացմամբ ու կոմլեքսային մեքենայացմամբ դյուրանում են աշխատանքային պայմանները, և ավելի շատ կանայք են ներգրավվում հասարակական արտադրության ոլորտը։ Սակայն սոցիալիստական արտադրության մեջ կանանց աշխատուժի կիրառման ոլորտի ընդլայնումը չի պայմանավորված միայն տեխնիկական առաջընթացով։ Դրա հիմքում ընկած են նաև սոցիալական այնպիսի գործոններ, ինչպիսիք են՝ օրինակ, կնոջ և տղամարդու իրավահավասարությունը, կանանց աշխատանքի նորմալ պայմանները։ Արդյունաբերության զարգացման արագ տեմպերը, բնակչության տնտեսական և կուլտուր-կրթական մակարդակի բարձրացումը, ոչ նյութական արտադրության ճյուղերի զարգացումը, ինչպես նաև արտադրության տեխնիկական պայմանների փոփոխությունը մեծացնում են կանանց թիվը հանրային արտադրության ոլորտում։ Այդ տեսակետից, հատկապես բնորոշ են ՀՍՍՀ վերաբերյալ համապատասխան վիճակագրական տվյալները։ Այսպես, եթե 1957 թ. ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ կին բանվոր-ծառայողների տեսակարար կշիռը 38,8 տոկոս էր, ապա 1967-ին այն հասավ 42,3-ի։ Տասը տարվա ընթացքում աճել է ավելի քան 2 անգամ (Итоги единовременного учета численности рабочих и служащих по полу, возрасту и стажу работы на 1/VI 1967 г., стр. 3)։

Կանանց աշխատուժի կիրառման շրջանակների ընդլայնումը բացատրվում է հասարակական մի շարք ճյուղերի ստեղծմամբ և դրանց զարգացման բարձր տեմպերով։ Կանայք սկսեցին աշխատել արտադրության այն ճյուղերում, ուր դրա հնարավորությունները խիստ սահմանափակ էին։ Այսպես, արդյունաբերության մեջ 1950 թ. կանանց աշխատուժի տեսակարար կշիռը կազմել է ամբողջ աշխատողների 36 տոկոսը, իսկ 1967 թ. հունիսի 1-ի տվյալներով, 41,5 տոկոս է (տես նույն տեղը)։

Աշխատուժի կառուցվածքի թվի և ըստ սեռերի եղած փոփոխություններից բացի, տեխնիկական առաջադիմությունը փոխում է նաև աշխատուժի տարիքային կազմը։ Արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը պահանջում են բանվորի տեխնիկական և հանրակրթական ավելի բարձր մակարդակ, իսկ այդպիսին է երիտասարդությունը, որին գրավում են ժամանակակից հաստոցներն ու սարքավորումները։ Այդ տեսակետից առանձնապես բնորոշ են արտադրության նոր ստեղծվող ճյուղերը, որտեղ երիտասարդ աշխատուժի պահանջը մեծ է և դրա օգտագործման լայն հնարավորություններ կան։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ զգալի չափով աճել է մինչև 44 տարեկանների տեսակարար կշիռը։ Նրանք կազմում են ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատուժի ավելի քան $^{2}/_{3}$-ը, արդյունաբերության մեջ՝ $^{3}/_{4}$-ը, մեքենաշինության մեջ մոտ 82 տոկոսը։ Իսկ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ՝ մոտ 79, արդյունաբերության մեջ՝ 83,5 տոկոսը։

ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ զգալի չափով աճել է նաև 18 տարեկանների տեսակարար կշիռը։ Այսպես, եթե 1957 թ. այն ամբողջ զբաղվածների 1,6 տոկոսն էր, ապա 1967 թ.՝ 3։ Այժմ արդյունաբերության մեջ նրանց տեսակարար կշիռը 4,3 տոկոս է։

Արդյունաբերության մեջ աշխատողների միջին տարիքը 33-ն է, իսկ արտադրության ավելի նոր ճյուղերում՝ դրանից ցածր։ Երիտասարդ աշխատուժի շնորհիվ բարելավվում է արտադրության որակը։ Երիտասարդությունն ունի ո՛չ միայն տեսական ավելի բարձր պատրաստականություն, այլև ֆիզիկապես ավելի կարող է և աշխատունակ։ Ապացուցված է, որ աշխատունակության



ամենաարդյունավետ տարիքը 20—44-ն է։ ՀՍՍՀ ժողովրդական տնտեսությունում զբաղվածների ընդհանուր թվի մեջ 1967 թ. այս տարիքի աշխատողները կազմել են 73, իսկ 1957 թ. 69,8 տոկոս (նույն տեղը, էջ 81)։ Սակայն մինչև 18 և մասամբ էլ 18—20 տարեկան բանվորների թվի աճը, հաճախ բացասաբար է ազդում բանվորների որակավորման ընդհանուր մակարդակի վրա, ինչպես նաև մեծացնում է աշխատուժի շարժումը տվյալ ճյուղում։

Տեխնիկական առաջադիմությունն ազդում է ո՛չ միայն աշխատուժի քանակական և կառուցվածքային, այլև որակական կազմի վրա։ Այն մեծացնում է ինչպես երիտասարդ, այնպես էլ որակյալ աշխատուժի նկատմամբ պահանջարկը։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1969 թ. ապրիլին որոշում ընդունեցին «Պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության սիստեմի ուսումնական հաստատություններում որակյալ բանվորների պատրաստումն ավելի բարելավելու միջոցառումների մասին»։ Այդ որոշման համաձայն անհրաժեշտ է պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատություններն աստիճանաբար վերակազմել՝ ուսուցման 3—4-ամյա ժամկետով. ութամյա հանրակրթական դպրոցներն ավարտած երիտասարդներն այստեղ կդառնան միջնակարգ կրթությամբ որակյալ բանվորներ՝ առավել բարդ մասնագիտությունների գծով։ Այս միջոցառումը հնարավորություն կընձեռի բարձրացնելու որակյալ աշխատուժի պատրաստման գործը։ Վերջին տասնամյակներում մեծ չափով ընդլայնվել է պրոֆեսիոնալ տեխնիկական ուսուցման ցանցը։ Եթե 1941—1961 թթ. ֆաբրիկա-գործարանային դպրոցները, ուսումնարանները պատրաստել են 18,2 հազար որակյալ բանվոր, ապա 1961—67 թթ.՝ 42 հազար, այսինքն՝ 2,3 անգամ ավելի, քան անցած քսան տարիներում (Народное хозяйство Арм. ССР, 1967 г., стр. 162)։

Զգալի չափով ընդլայնվել է նաև որակյալ աշխատուժի պատրաստման գործը ձեռնարկություններում։ Այսպես, 1966 թ. մոտ 3 անգամ ավելի շատ բանվորներ են պատրաստվել ձեռնարկություններում, քան 1960 թ., իսկ 1967 թ. 1,7 անգամ ավելի, քան 1960 թ.։ 1967 թ. ձեռնարկություններում իրենց որակավորումն են բարձրացրել մոտ 51 հազար բանվոր։ Երիտասարդների զգալի մասը դպրոցներում, կամ պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարաններում ստանալով համապատասխան կրթություն, որոշ տեխնիկական և հանրակրթական գիտելիքներով գնում են արտադրություն։

Տեխնիկական առաջադիմության շնորհիվ լուրջ տեղաշարժեր են կատարվում նաև աշխատուժի պրոֆեսիոնալ կազմում։ Հետզհետե վերանում են որակավորում չպահանջող մասնագիտությունները, ստեղծվում են այնպիսիներ, որոնք բանվորից պահանջում են տեխնիկական և հանրակրթական հարուստ գիտելիքներ, բարձր որակավորում։ Իրենց ժամանակն ապրած պրոֆեսիաներն ու մասնագիտությունները փոխարինվում են նորով, առաջադիմականով։ Այսպես, 1959—1965 թթ. մամլիչների վրա աշխատող դարբինների թիվն աճել-է 2,2, ավտոմատով դրոշմողներինը՝ 8, ավտո և էլեկտրասայլակների վրա աշխատողներինը՝ 3, կարգավորողներինն ու վերանորոգողներինը՝ համապատասխանաբար՝ 2,2 և 8,5 անգամ (Автореферат диссертации А. Е. Варданяна, стр. 7, 8)։ Նոր մասնագիտությունների առաջացումը, հին, որակավորում չպահանջող շատ մասնագիտությունների վերացումը աստիճանաբար փոխում է աշխատուժի մասնագիտական կառուցվածքը։ Այսպես, մինչև 1959 թ. գոյություն ուներ ավտոմատավորողի մասնագիտություն, 1965 թ. հանրապետությունում այդպիսի մասնագիտությամբ բանվորներ այլևս չկան։ Բայց 1965 թ. հանդես է եկել ապարատավարի մասնագիտությունը։ Այժմ այդ մասնագիտությամբ աշխատում են 3.200 հոգի։ Հանրապետության ձեռնարկություններում ձեռքով կոփող դարբինների թիվը 1959—1965 թթ. իջել է ավելի քան 40, մեքենաշինության և մետաղամշակության մեջ 71,7 տոկոսով։ Մեքենաշինության և մետաղամշակության ձեռնարկություններում աշխատող գազային զոդող բանվորների թիվն ավելացել է 8, էլեկտրազոդողներինը՝ 2,5 անգամ։ Պարզ է, որ նոր տեխնիկայի ներդրման շնորհիվ հետզհետե նվազում է ձեռքի աշխատանքը արտադրության մեջ։

Այսպիսով, մեքենաների և մեխանիզմների օգնությամբ աշխատող որոշ

պրոֆեսիայի բանվորների թիվն աճում է ավելի արագ, քան ձեռքի աշխատանքով զբաղվածներինը։

Կատարելագործված մեքենաներով, ավտոմատներով, սարքավորումներով հագեցած արդյունաբերությունը պահանջում է առաջադիմական պրոֆեսիաների նոր բանվորներ, որոնք կարողանան սպասարկել դրանց։ Տեխնիկական առաջադիմության շնորհիվ շատ հաճախ արմատապես փոխվում է աշխատանքի բնույթը, բովանդակությունը, բայց անվանումը մնում է նույնը։ Այսպես, կարգավորողի մասնագիտությունը եղել է նաև նախկինում։ Սակայն նրա աշխատանքի բովանդակությունը փոխվել է։ Եթե առաջ կարգավորողը կատարում էր օժանդակ բնույթի գործողություններ, այսինքն՝ նախապատրաստում, կարգավորում էր հաստոցը, ապա այժմ նա հիմնական բանվոր է, ղեկավարում ու հսկում է ավտոմատ գծերի ամբողջ արտադրապրոցեսը։ Այս մասնագիտության բանվորների թիվն արագ է աճում հատկապես մեքենաշինության ու մետաղամշակության արդյունաբերության մեջ։

Բանվորների որակավորման մակարդակի բարձրացման գործում մեծ նշանակություն ունի նրա հանրակրթական պատրաստականությունը։ 1939—1959 թթ. հսկայական չափերով աճել է բնակչության կրթական մակարդակը։ Եթե 1939 թ. ՍՍՀՄ-ում (1000 մարդու հաշվով) բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցողները կազմել են 83 հոգի, ապա 1959 թ. այն 281 էր, իսկ 1967 թ.՝ 360։ Այսինքն՝ նրանց թիվը 1967 թ., 1939 թ. համեմատությամբ, աճել է ավելի քան 4,3 անգամ։ Բանվորների հանրակրթական մակարդակի բարձրացումը հնարավորություն է ստեղծում արդյունաբերության մեջ բարձրացնելու բանվորների կրթական մակարդակը՝ ըստ մասնագիտությունների։ Տեխնիկական առաջադիմության պայմաններում աշխատուժի վերարտադրության պրոցեսը ձեռք է բերում մի քանի բնորոշ գծեր։ Փոխվում է աշխատանքային ռեսուրսների կառուցվածքը։ Արտադրության անորակ, ֆիզիկական ծանր և հոգնեցնող աշխատանքներում աշխատուժի նկատմամբ ներկայացվող պահանջարկն իջնում է։ Դրա փոխարեն մեծանում է զբաղվածությունն այն ճյուղերում, ուր պահանջվում են բարձր որակավորում ունեցող աշխատողներ։

Արտադրության մեքենայացման և ավտոմատացման ընդլայնումը մարդու աշխատանքում շատ նորություններ է մտցնում, որոնք արտահայտվում են կենդանի աշխատանքային ծախսումների զգալի կրճատմամբ։ Դրան հակառակ, արտադրության ավտոմատացման պայմաններում, նյութական միջոցների արտադրությունը պահանջում է առարկայացած աշխատանքի մեծ ծախսումներ, որոնց մեծացումն արմատական փոփոխություններ է մտցնում բանվորի աշխատանքի բովանդակության մեջ։ Կենդանի աշխատանքն այժմ կարող է շարժման մեջ դնել ավելի շատ առարկայացած աշխատանք՝ պատրաստի արդյունքի վերածելով դրա ավելի մեծ քանակություն։

Տեխնիկական առաջադիմությունը փոփոխելով մարդկանց պրոֆեսիոնալ մասնագիտացման նյութական հիմքը, նոր պրոֆեսիաներ է ստեղծում։ Այս պրոֆեսիաներին հատուկ է աշխատանքային գործունեության բազմազանությունը, որը համատեղված է աշխատանքային փորձի, արտադրության բարձր կուլտուրայի, տեխնիկական լայն գիտելիքների, մտավոր և ֆիզիկական աշխատանքների միացության հետ։ Այժմ բանվորից պահանջվում է հանրակրթական և տեխնիկական գիտելիքներ, արտադրության բոլոր պրոցեսներն ընկալելու, մեքենաների աշխատանքը հսկելու և ղեկավարելու ունակություն։

Տեխնիկական առաջադիմության շնորհիվ առաջացած լայն պրոֆիլի պրոֆեսիաները, արտադրության ոլորտում հանգեցնում են աշխատողների մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միասնությանը։

Այսպիսով, արտադրության մեքենայացմամբ և ավտոմատացմամբ փոխվել է երկրում աշխատանքային ռեսուրսների որակական կառուցվածքը, դրա բաշխման և վերաբաշխման պատկերը։

МАРИЯ. ԻՍԿՈՒԴԱՐՅԱՆ

ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ և ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Մեր ամսագրի խմբագրությունը դիմեց Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության կոլտնտեսությունների և սովխոզների գործերի գլխավոր վարչության մասնագետ Վ. Ա. Արաքսյանին, խնդրելով հաղորդել, թե հանրապետության կոլտնտեսություններում ինչպիսի՞ առաջարկություններ են արվում կոլտնտեսության (գյուղատնտեսական արտելի) կանոնադրության նախագծի վերաբերյալ։

Նրա հաղորդման համաձայն հրապարակում ենք մի շարք առաջարկություններ ու դիտողություններ։

Ստեփանավանի շրջանի Կողես գյուղի կոլտնտեսության գլխավոր հաշվապահ Վ. Վարդումյանն առաջարկում է կոլտնտեսության ղեկավար անձնակազմին վարձատրել տնտեսության եկամուտների համապատասխան։ Ի տարբերություն ներկայումս գործող սիստեմի, նա հարց է բարձրացնում տնտեսություններում պլանավորված եկամուտները թերակատարելու դեպքում պակասեցնել նաև ղեկավար անձնակազմի վարձատրությունը (համապատասխան չափով)։

Լուրջ առաջարկներ են արվում կոլտնտեսականների ընտանիքներին տրվող տնամերձ հողամասերի վերաբերյալ։ Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության նախագծում ասված է՝ կոլտնտեսականի ընտանիքին (կոլտնտեսային ծխին) որպես բանջարանոց, այգի և այլ կարիքների համար օգտագործման է տրվում տնամերձ հողամաս մինչև 0,50 հեկտար, ներառյալ շինությունների զբաղեցրած հողը, իսկ ջրովի հողերում՝ մինչև 0,20 հեկտար։ Նախատեսված տնամերձ հողամասի չափի վերաբերյալ Գուգարքի շրջանի Բզովդալ գյուղի կոլտնտեսության վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Հ. Պլուզյանը, Գյոզալդարա գյուղի կոլտնտեսականներ Մ. Քյարիմովը, Մ. Միրզաևը առաջարկում են սահմանափակել կոլտնտեսությունից ինքնակամ բացակայող կոլտնտեսականների տնամերձ հողերը։

Այժմ կոլտնտեսականներն իրենց հիմնական եկամուտներն ստանում են կոլեկտիվ տնտեսությունից և պատահական չէ, որ շատ առաջավոր տնտեսություններում նրանց պահանջով պակասեցվում են տնամերձ հողերի չափերը։ Ընդհանրացնելով այդ ասպարեզում եղած փորձը, Շամշադինի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսականները գտնում են, որ տնամերձ հողերի չափն անհրաժեշտ է իջեցնել և այն սահմանել 1000—1200, ջրովի հողերում՝ 750—800 քառ. մետր։

Նույն կարգի առաջարկներ կան կոլտնտեսականի տնտեսության անձնական օգտագործման անասունների քանակի վերաբերյալ։ Կրասնոսելսկի շրջանի Ջիլ գյուղի կոլտնտեսության անդամներ Ա. Ալիևը, Ա. Սադիկովը, Օ. Իբրահիմովը և շատ ուրիշներ առաջարկում են թույլ չտալ անասուններ պահելու նրանց, ովքեր անհարգելի պատճառով չեն աշխատում կոլտնտեսությունում։ Իսկ այդ շրջանի Ամրխեր գյուղի կոլտնտեսականներն առաջարկում են կոլտնտեսությունում չաշխատողներից վերցնել անասուն պահելու վարձ։ Այդ կարգի շատ առաջարկություններ են արել Արարատի և Եղեգնաձորի շրջանների կոլտնտեսականները։

Որոշ կոլտնտեսությունների վարչությունների ղեկավարների կարծիքով, նախագծում նախատեսված պատժի միջոցները լրիվ չեն։ Անհրաժեշտ է նշել, որ կան մարդիկ, որոնց վրա պարսավանքը և նկատողությունը չեն ազդում։ Ուստի առաջարկում են 35-րդ կետում նախատեսված տույժերում ավելացնել՝ «Տուգանել մինչև 5 աշխօրի չափով»։

Նույն հոդվածում այնուհետև նշվում է, որ կոլտնտեսության նախագահին և վերստուգիչ հանձնաժողովի նախագահին, վարչության անդամներին և վերստուգիչ հանձնաժողովի անդամներին տույժ կարող է տալ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը, իսկ գլխավոր հաշվապահին, գլխավոր (ավագ) մասնագետներին և արտադրական ճյուղերի ղեկավարներին ընդհանուր ժողովը կամ կոլտնտեսության վարչությունը։ Կոլտնտեսության ղեկավարները հարմար են գտնում այդ կետը ձևակերպել այսպես. «Կոլտնտեսության վարչության և վերստուգիչ հանձնաժողովի նախագահին տույժ կարող է տալ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը, իսկ վարչության և վերստուգիչ հանձնաժողովի առանձին անդամներին, գլխավոր (ավագ) մասնագետներին, գլխավոր հաշվապահին և արտադրական ղեկավարներին՝ կոլտնտեսության վարչությունը»։ Ի նկատի ունենալով այն, որ դրանով կբարձրացվի կոլտնտեսության վարչության հեղինակությունը։

Արտելի ղեկավարման դեմոկրատիայի հետագա զարգացման վերաբերյալ լուրջ առաջարկություններ են արել նաև Գորիսի և Սպիտակի շրջանների կոլտնտեսականները։ Այդ բոլորն ասում է այն մասին, որ արտելի կարևորագույն հարցերի վճռմանը պետք է մասնակցեն կոլտնտեսականները։ Արտելի գործերի կառավարումից կոլտնտեսականներին հեռու պահելու ամեն մի փորձ կոլտնտեսային դեմոկրատիայի ամենակոպիտ խախտում է, որի դեմ կուսակցությունն ու կառավարությունը մղել և մղում է վճռական պայքար։

Կրասնոսելսկի շրջանի Նոր Բաշգյուղի կոլտնտեսության կուսակցական կազմակերպության քարտուղար Ռ. Ղավալյանը, կոլտնտեսականներ Ա. Ղալեչյանը, Վ. Դալլաքյանը և կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Դանիելյանը հանրային տնտեսության կառավարման դեմոկրատական հիմունքները զարգացնելու իմաստով առաջարկում են կոլտնտեսությունների ղեկավար անձնակազմի ընտրությունը կատարել փակ գաղտնի քվեարկությամբ։

Կոլտնտեսության կառավարման մարմինների և վերստուգիչ հանձնաժողովի ընտրությունների վերաբերյալ այլ առաջարկություններ են արել Շամշադինի շրջանի Չինչին, Կրասնոսելսկի շրջանի Ղարաղայա գյուղերի կոլտնտեսականները։ Նրանք առաջարկում են կոլտնտեսության վարչությունը և վերստուգիչ հանձնաժողովն ընտրել 2—3 տարի ժամանակով, բաց քվեարկությամբ։

Նախագծի 56-րդ կետում նշված է, որ «Կոլտնտեսության վարչության,



նախագահի և վերստուգիչ հանձնաժողովի ընտրությունները կատարվում են բաց կամ գաղտնի քվեարկությամբ՝ կոլտնտեսականների ընդհանուր ժողովի հայեցողությամբ»։ Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ե. Գալստյանի կարծիքով, ընտրությունները կոլտնտեսականների ընդհանուր ժողովի հայեցողությամբ բաց կամ գաղտնի քվեարկությամբ կատարելը շատ դժվարություններ և քաշքշուկներ կստեղծի, նպատակահարմար կլինի կոնկրետացնել այդ կետը։

Աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու համար Շամշադինի շրջանի Մովսես, Այգեձոր և Ջինարի գյուղերի կոլտնտեսականներն առաջարկում են խստացնել չաշխատողների նկատմամբ տույժի միջոցները։ Եթե նրանք անհարգելի պատճառով չեն աշխատում կոլտնտեսությունում, ապա նրանց զրկել տնամերձ հողամաս ունենալու իրավունքից։

Ինչպես հայտնի է, կոլտնտեսականի մասնակցությունը հանրային աշխատանքներում որոշելու համար սահմանվել է աշխօրերի պարտադիր մինիմում։ Այդ կապակցությամբ Իջևանի շրջանի Ջողազ գյուղի կոլտնտեսականներն առաջարկում են կոլտնտեսության օրինակելի կանոնադրության նախագծում մտցնել աշխատանքի պարտադիր մինիմումի կոնկրետ չափը։

Վերջին տարիներին կոլտնտեսությունների մի մասը անհրաժեշտ ուշադրություն չի նվիրում հանրային արտադրության ընդլայնման հարցերին։ Այդպիսի տնտեսություններում մեծանում են վարչակառավարչական ապարատի ծախսերը և ստացված եկամուտը հիմնականում հատկացվում է սպառման նպատակին։ Եղեգնաձորի շրջանի արտադրական վարչության գլխավոր հաշվապահ Հ. Ստեփանյանի կարծիքով նախագծում նշված ձևակերպումը միանգամայն ճիշտ է, սակայն թերի է։ Նա նպատակահարմար է գտնում սահմանել անբաժանելի ֆոնդի մասհանումների համար որոշակի տոկոս, որը կապահովի հանրային արտադրության ընդլայնումը։ Անտեսելով այդ, շրջանի որոշ կոլտնտեսություններում անբաժանելի ֆոնդին բոլորովին հատկացում չեն կատարում, իսկ աշխատանքի վարձատրությունը կազմում է համախառն եկամտի 80—85 տոկոսը։

Կոլտնտեսությունների եկամուտների բաշխման գործում մինչև վերջերս գոյություն ունեցող պրակտիկան հաճախ հանգեցնում էր այն բանին, որ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության մեջ ստեղծվում էր տատանումներ և շատ կոլտնտեսություններում նրանց վաստակը չէր երաշխավորվում։ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների հիման վրա ներկայումս իրագործվում է կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա երաշխավորված վարձատրություն։ Որպեսզի միշտ հնարավոր լինի ապահովել կոլտնտեսականներին վճարվելիք վարձատրության չափը, Արարատի շրջանի Ինտերնացիոնալի անվան կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Ղուկասյանի կարծիքով, անհրաժեշտ է նախագծում սահմանել կոլտնտեսականների վարձատրության համար փոխանցիկ ֆոնդի ստեղծումը։ Այդ տնտեսությունում անցյալ տնտեսական տարում մեկ մարդ-օրվա վարձատրությունը կազմել է 6 ռ. 03 կ.։ Նա գտնում է, որ ճիշտ չի լինի միայն տվյալ տարվա բարձր վարձատրության մասին մտածել. անհրաժեշտ է փոխանցիկ ֆոնդ ստեղծել, որպեսզի մյուս տարում նույնպես վարձատրությունը լինի համաչափ։

# Գիտության աշխարհում

## ԲՅՈՒՐԱԿԱՆԻ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆԸ

### ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Երևանից ընդամենը 35—40 կիլոմետր հեռավորության վրա գտնվող Բյուրականը՝ Արագածի փեշերին փռված այս փոքրիկ գյուղը հեռավոր, մոռացված մի անկյուն էր՝ զուրկ կապի ու հաղորդակցության միջոցներից, կուլտուրայի օջախներից ու քիչ թե շատ կանոնավոր դպրոցից:

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո մեր երկրի և ժողովրդի հետ մեկտեղ վերածնվեց և Բյուրականը: Սակայն նրա իսկական վերելքը տեղի ունեցավ հետպատերազմյան շրջանում, երբ աշխարհահռչակ աստղագետ Վ. Հ. Համբարձումյանը, 1946 թ., իր մի քանի աշակերտների հետ Հայաստանի տարբեր վայրերը զննելուց հետո, Բյուրականը՝ Արագածի լանջին ընկած ջինջ երկնքով, մեղմ ու մաքուր օդ ունեցող այդ կանաչ օազիսն ընտրեց աստղադիտարանի տեղ:

Չանցած երկու-երեք տարի, երբ դեռ չէին տեղադրվել նույնիսկ միջին կարողության աստղադիտակներ կամ ստեղծվել մինիմալ սարքավորումներ ունեցող լաբորատորիաներ, Բյուրականի աստղադիտարանը միջազգային համբավ ձեռք բերեց, իսկ Բյուրական անունը, իբրև գիտության խոշորագույն մի կենտրոն, հայտնի դարձավ աշխարհի բոլոր մասերում:

Տասնյակ և հարյուրավոր տարիների պատմություն, կատարյալ դիտողական գործիքներ, մեծ թվով փորձված աստղագետներ ունեցող աստղադիտարանների կողքին ծնունդ առավ մի նոր աստղադիտարան, միանգամից իր վրա բևեռելով աշխարհի բոլոր աստղագետների ուշադրությունը: Պատահականություն կամ բախտի բերմունք չէր այդ, այլ պարզապես աստղադիտարանի հիմնադրի արտակարգ մեծ տաղանդի, կազմակերպական ու ղեկավարման բացառիկ ձիրքի արդյունք:

Բյուրականի աստղադիտարանում գիտական ամեն մի նոր խնդիր լուծելիս կամ նոր տեսություն մշակելիս կարևոր նշանակություն է տրվում դիտողական տվյալներին և տվյալ երևույթի բուն էությանը՝ նրա ֆիզիկական կողմին. միշտ բարձր են գնահատվում աշխարհի բոլոր աստղադիտարաններում ստացված փաստական տվյալները, դրանք ուսումնասիրվում են բազմակողմանի, օգտագործվում խնամքով ու քննաբար:

Տիեզերական մարմինների դիտումների համար, նախ՝ անհրաժեշտ են կատարյալ աստղադիտակներ և ապա դիտումների նկուն մեթոդներ՝ գործիքների հնարավորություններն առավելագույն չափով օգտագործելու համար: Այդ իսկ պատճառով իր հիմնադրման օրից աստղադիտարանը զինվել է առավել կատարյալ դիտակներով, այնտեղ ստեղծվել են ժամանակակից չափիչ սարքերով հագեցած լաբորատորիաներ, մշակվել դիտումների նորանոր մեթոդներ և, ամենակարևորը՝ ստեղծվել է փորձված դիտողների մի խոշոր կոլեկտիվ:

Աստղադիտարանի կազմակերպման առաջին տարում տեղակայվեց առաջին ոչ մեծ չափերի 5 դյույմանոց աստղադիտակը (1 դյույմը հավասար է 2 մ. 54 սմ)՝ մեծ լուսաուժի կրկնակի աստրոգրաֆը, որի օգնությամբ հնարավոր դարձան փոփոխական պայծառության աստղերի երկգույն ֆոտոգրաֆիկ դիտումները: Մինչև 50-ական թվականների վերջերը տեղակայվեցին մի քանի, նույնպես ոչ մեծ չափերի սարքեր՝ Ցայսի օբյեկտիվ պրիզմայով 6 դյույմանոց աստրոգրաֆ՝ դարձյալ փոփոխական աստղերի երկգույն դիտումների համար, կվարցային պրիզմայով 10 դյույմանոց սպեկտրոգրաֆ (որը հնարավորություն ընձեռեց սկսելու աստղերի սպեկտրոսկոպիկ ուսումնասիրությունները), 8—12 դյույմանոց աստղադիտակ, որի օգնությամբ սկիզբ դրվեց երկնքի ընտրված տիրույթների՝ աստղակույտերի, աստղասփյուռների, իսկ հետագայում նաև մոլորակաձև միգամածությունների սիստեմատիկ ուսումնասիրություններին: Նույն թվականներին տեղակայվեց նաև նեբուլյար (միգամածային) սպեկտրոգրաֆը՝ գազային միգամածությունների սպեկտրոսկոպիկ հետազոտությունների համար: 1950 թ. վերջին շարք մտավ 16 դյույմանոց դիտակը, որի օգնությամբ կատարվում են աստղերի էլեկտրոֆոտոմետրիկ ուսումնասիրություններ:

1954 թ. Լենինգրադի օպտիկա-մեխանիկական միավորման գործարաններում պատրաստվում է Շմիդի սիստեմի 21 դյույմանոց դիտակը, որն ունի կոռեկցիոն ոսպնյակ՝ աստղերի մաքուր պատկերներ ստանալու համար, դրան կցված է օբյեկտիվ պրիզմա, որի շնորհիվ միաժամանակ նկարահանվում են հարյուրավոր աստղերի սպեկտրները: Դիտակը հնարավորություն ընձեռեց սկսելու աստղակույտերի և կոմետար միգամածությունների բարձրորակ ուսումնասիրությունները և այժմ էլ այն աստղադիտարանի հիմնական, ամենագործածական սարքերից է:

Բյուրականի աստղադիտարանում 1961 թ. տեղակայվեց աշխարհի ամենամեծ դիտակներից մեկը՝ 40 դյույմանոց Շմիդի սիստեմի դիտակը: Այն ունի 131 սմ սֆերիկ հայելի և 100 սմ տրամագծով կոռեկցիոն ոսպնյակ, որն ուղղում է լույսի խոտորումը (աբեռացիան) և հնարավորություն ընձեռում ստանալու երկնային մարմինների հստակ պատկերներ: Այդ գործիքի օգնությամբ հնարավոր դարձավ ուսումնասիրել թույլ աստղերը և արտաքին գալակտիկաները՝ սեփական բարձրորակ դիտողական նյութերի հիման վրա:

Ներկայումս աստղադիտարանի կոլեկտիվի հիմնական ուշադրությունը բևեռվել է ժամանակակից հզոր աստղադիտակի՝ 2,6 մ տրամագծով հայելի ունեցող ռեֆլեկտորի կառուցման աշխատանքների վրա: Այդ գործիքը պատրաստվում է Լենինգրադում (նշված միավորման գործարաններում), իսկ հսկա աշտարակը և գմբեթը՝ Բյուրականի աստղադիտարանում և օպտիկա-մեխանիկական լաբորատորիայում: Դիտակի և գմբեթի շարժումները, ինչպես և դիտումների ու նյութերի մշակման պրոցեսը ամբողջովին ավտոմատացված են լինելու: Այս գործիքի միջոցով Բյուրականի աստղագետները կզբաղվեն հեռավոր թույլ գալակտիկաների և ավելի մոտ, այդ թվում և մեր Գալակտիկայի, աստղերի և միգամածությունների բազմակողմանի ու մանրակրկիտ ուսումնասիրությամբ: Դրա շնորհիվ մեր աստղադիտարանը կդառնա աշխարհի ամենաառաջավոր աստղադիտարաններից մեկը նաև դիտողական աստղագիտության բնագավառում:

Բյուրականի աստղադիտարանում 1950 թ. ըսկըսվեցին աշխատանքները աստղագիտության նոր ճյուղի՝ ռադիոաստղագիտության բնագավառում: Առաջին 2—3 տարիների ընթացքում կառուցվեցին 0,5, 1,5 և 4,2 մ ալիքներում աշխատող ոչ մեծ չափերի ռադիոինտերֆերոմետրեր, որոնց օգնությամբ ուսումնասիրվում են տիեզերական հզոր ռադիոաղբյուրները, ինչպես և Արեգակի ռադիոխավարումները: Այդ գործիքների օգնությամբ փորձարկվեցին դիտողական մի շարք մեթոդներ: 1957 թ. ձեռնարկվեցին ավելի մեծ լուծողող ուժի ռադիոինտերֆերոմետրի կառուցման աշխատանքները: 1961 թ. սկզբներին այն գործարկվեց 3.6 մ ալիքի վրա: Սակայն այդ ալիքում երկրային ծագում ունեցող խիստ ռադիոխանգարումների պատճառով հնարավոր չեղավ օգտագործել գործիքի լրիվ հնարավորությունները: Գործիքի լուծողող ուժն ավելի մեծացնելու և դրա հնարավորությունները լիովին օգտագործելու նպատակով հետագա տարիներին գործիքը վերափոխվեց 75 սմ ալիքի համար: Այդ աշխատանքները հիմնականում ավարտված են, և շուտով կգործադրվի միջին հնարավորությունների մի ռադիոդիտակ արտագալակտիկ թույլ ռադիոաղբյուրների ուսումնասիրության համար:

Խոշոր ռադիոդիտակների ստեղծման պրոբլեմն ընդհանրապես և, մասնավորապես մեր աստղադիտարանում դեռ լիովին լուծված չէ: Դժվարությունը նրանում է, որ նույնիսկ միջին լուծողող ուժի ռադիոդիտակի ստեղծումը վերին աստիճանի բարդ ու դժվարին տեխնիկական խնդիր է: Ժամանակակից գործող կամ կառուցվող խոշոր ռադիոդիտակների արժեքները (կախված դրանց չափերից ու ճշգրտության աստիճանից) տատանվում են 10 ÷ 50 միլիոն ռուբլու սահմաններում. համեմատության համար նշենք, որ մեր վերը հիշատակված ռադիոինտերֆերոմետրի կառուցման և վերափոխման վրա ծախսվել է մոտ 60 հազար ռուբլի: Միանգամայն պարզ է, որ փոքր հանրապետությունների համար խոշոր ռադիոդիտակի կառուցումը դժվար գործ է:

Բազմազան պետք է լինեն ժամանակակից աստղագիտության պահանջները բավարարող ռադիոդիտակները, իսկ դրանց անտենաների չափերը, ինչպես նշվեց՝ շատ մեծ: Առանձին անտենաների չափերը պետք է հասնեն հարյուրավոր և հազարավոր մետրերի, իսկ անտենաների միջև եղած հեռավորությունը՝ հարյուրավոր և հազարավոր կիլոմետրերի: Պարզ է, որ մի երկրի (նույնիսկ խոշոր) ուժերով նշված պահանջները լիովին բավարարել գրեթե անհնար է: Ավելի հեռանկարային է համարվում աշխարհի տարբեր մասերում գործող ռադիոդիտակների համատեղ օգտագործումը— ռադիոդիտակների միջազգային միասնական ցանցի ստեղծումը: Մենք ձգտում ենք, որ Բյուրականն ապագայում դառնա այդ ցանցի կայուն հանգույցներից մեկը:

Օպտիմալ մեծ լուծողող ուժի, բազմակողմանի հնարավորություններով օժտված և մինիմալ արժեքի ռադիոդիտակ ստեղծելու հնարավորությունների ուսումնասիրության հետ մեկտեղ Բյուրականի աստղադիտարանն օգտագործում է նաև այլ հնարավորություններ. նա համագործակցում է տարբեր ռադիոաստղագիտական հիմ-

են նախաաստղային գերխիտ նյութի կատաստրոֆիկ տրոհման հետևանքով:

Ինչ վերաբերում է գազային զանգվածների խտացման վարկածին, ապա գալակտիկաների համար ևս այն չի կարելի համարել լուրջ գիտական, քանի որ տիեզերքում չի դիտվում խտացման թեկուզ մի եզակի դեպք, մինչդեռ հաճախ տեղի են ունենում հակառակ երևույթներ՝ նյութի անընդհատ արտահոսք գալակտիկաների կենտրոնական շրջաններից, կամ՝ էլեկտրոնային հսկայական ամպերի պայթյունանման վիժվածքներ: Գալակտիկաների ծագման և զարգացման հարցի պարզաբանման համար շրջադարձային նշանակություն ունեցավ ռադիոգալակտիկաների հայտնաբերումը: Երբ տիեզերական ռադիոճառագայթման հզոր ռադիոաղբյուրներից մեկը՝ Կարապ—Ա-ն նույնացվեց հեռավոր, իրար շատ մոտ դասավորված երկու կորիզներից կազմված գալակտիկայի հետ, ամերիկացի նշանավոր աստղագետներ Բաադեն և Մինկովսկին ենթադրեցին, որ դիտվող ռադիոճառագայթումը երկու գալակտիկաների բախման արդյունք է:

Ժխտելով գալակտիկաների բախման մեխանիզմի վարկածը, Բյուրականի աստղագետները գտան, որ գալակտիկայի կենտրոնական շրջանում տեղի է ունենում վիթխարի պայթյուն, որի հետևանքով նրա միջուկը տրոհվում է կամ նրանից դուրս են մղվում նյութի համեմատաբար փոքր զանգվածներ, որոնք կոսմիկական մասշտաբով կարճ ժամանակամիջոցում վեր են ածվում ոչ ստացիոնար աստղերի, միջաստղային գազի ու մեծ արագության էլեկտրոնային ամպերի, որոնք և ապահովում են դիտվող ռադիոճառագայթումը: Հաշվումները ցույց են տալիս, որ այս պրոցեսը տևում է մոտ մեկ միլիոն տարի: Նշանակում է «ռադիոգալակտիկա» փուլը գերհսկա գալակտիկայի ներքին զարգացման ընդհանուր ժամանակամիջոցի համեմատությամբ մի կարճատև փուլ է, որը, հավանաբար, ապրում են բոլոր գերհսկա գալակտիկաները:

Այսպիսով, գալակտիկաների առաջացման հարցը, ինչպես տեսնում ենք, անմիջապես կապվում է ռադիոգալակտիկաների ծագման հարցի հետ, որն իր հերթին առնչվում է գալակտիկաների միջուկներում տեղի ունեցող հզոր, ոչ ստացիոնար պրոցեսների հետ: Վ. Հ. Համբարձումյանի՝ գալակտիկաների էվոլյուցիայի մասին նոր գաղափարների հիմնավորումից մի քանի տարի անց գալակտիկայի միջուկի պայթյունի ուղղակի ապացույց հայտնաբերեց ամերիկացի աստղագետ Սանդեյջը, ցույց տալով, որ M—82 գալակտիկայի կենտրոնական շրջաններից մեծ արագությամբ դուրս են ժայթքում նյութի հսկայական զանգվածներ:

Վերջին տասը տարվա ընթացքում Բյուրականի աստղադիտարանի մի խումբ աստղագետների սիստեմատիկ ուսումնասիրությունները նոր հետաքրքրական արդյունքներ տվեցին գալակտիկաների կորիզների ակտիվության վերաբերյալ: Այդ ուսումնասիրություններից մասնավորապես պարզվեց, որ մի շարք սֆերիկ գալակտիկաների շուրջը կան ոչ մեծ չափերի գալակտիկաներ, որոնք շիթերով կապված են կենտրոնական գալակտիկայի հետ: Այդ արբանյակ գալակտիկաների գույնը խիստ տարբերվում է կենտրոնական գալակտիկայի գույնից. դրանք կապույտ են և կոչվեցին «կապույտ գալակտիկաներ»: Հավանաբար, այս դեպքում ևս տեղի են ունեցել նախաաստղային նյութի ժայթքումներ կենտրոնական գալակտիկայի միջուկից:

1963 թ. հայտնաբերվեցին նոր տիպի օբյեկտներ, որոնք ամենահետաքրքրականն են մինչև այժմ դիտված տիեզերական մարմիններից: Արտագալակտիկական ռադիոաղբյուրներից մի քանիսը նույնացվեցին շատ փոքր չափեր ունեցող օբյեկտների հետ, որի պատճառով դրանք կոչվեցին քվազիաստղային (աստղանձև) ռադիոաղբյուրներ կամ ուղղակի քվազարներ: Ներկայումս դիտված քվազարների թիվը մոտ հարյուրի է հասնում: Դրանք անասելի փոքր չափեր ունեն և ճառագայթում են աներևակայելի մեծ հզորության էներգիա, այնքան, որքան կստացվի, օրինակ, եթե մոտ տասը միլիարդ արեգակնային զանգված ունեցող նյութը ակնթարթորեն ձևափոխվի միջուկային էներգիայի: Այդպիսի ճառագայթում կարող է տեղի ունենալ, եթե քվազարներում նյութի խտությունն արտասովոր մեծ լինի:

Ինչպես տեսնում ենք, նորից հանգում ենք նախաաստղային նյութի գոյության հարցին: Քվազարները, հավանաբար, նախաաստղային նյութի այն գերխիտ կենտրոններն են, որոնցում հենց նոր սկսվել են այն բուռն պրոցեսները, որոնց ուղեկցում է գալակտիկաների առաջացումը: Բավականաչափ տվյալներ կան ենթադրելու, որ քվազարները, ռադիոգալակտիկաները և կորիզներում ակտիվություն ցուցաբերող սեյֆերտյան ու Մարգարյանի գալակտիկաները միևնույն երևույթի տարբեր մասշտաբների կամ փուլերի դրսևորումներն են:

Բյուրականի աստղադիտարանում հետևողականորեն ձևավորվել է մի ամբողջական տեսություն աստղերի ու գալակտիկաների առաջացման և էվոլյուցիայի մասին, որն անմիջականորեն կապվում է նյութի գոյության նոր վիճակի՝ նախաաստղային նյութի գոյության և դրա ակտիվության պրոբլեմի հետ: Գիտական կոլեկտիվն այստեղ հիմնականում ուսումնասիրում է աստղերում և գալակտիկաներում տեղի ունեցող անկայուն պրոցեսները, լավ գիտակցելով դրա խոշոր նշանակությունը տիեզերքի առաջացմանն ու էվոլյուցիային վերաբերող բարդ հարցերի պարզաբանման համար:

Միջաստղային նյութի դրսևորումների ուսումնասիրությունը, որի հետ կապվում է տիեզերքի էվոլյուցիայի պրոբլեմը, հանդիսանում է ժամանակակից աստրոֆիզիկայի, մասնավորապես Բյուրականի աստղադիտարանի գիտական գործունեության առաջնային խնդիրներից մեկը:

Վերջին տարիներին այստեղ անսպասելի արդյունքներ ստացվեցին գերնոր աստղերի վերաբերյալ: Դրանք սովորական թզուկ աստղեր են, որոնք հանկարծակի բռնկվում են, և այդ ժամանակ նրանց պայծառությունը հարյուրավոր միլիոն և միլիարդ անգամ մեծանում է և ապա տարիների ընթացքում աստիճանաբար մարում: Յուրաքանչյուր գալակտիկայում 300 տարվա ընթացքում միջին թվով տեղի է ունենում մեկ գերնորի բռնկում: Իսկ NGC—2276 համարի արտաքուստ սովորական պարուրաձև գալակտիկայում վերջին 6 տարում, նույնիսկ ոչ-պարբերաբար դիտումների դեպքում, դիտվել են երեք գերնոր աստղ, որոնցից երկուսը՝ միայն 1968 թ.: Դա գերնորերի բռնկման անսպասելի մեծ հաճախություն է և վկայում է, որ այդ գալակտիկան «անհանգիստ» է:

Վերջին մեկ-երկու տարում աստղագիտության համար հերթական անակնկալը թբթխող ռադիոաղբյուրների (պուլսարների) հայտնաբերումն էր: Դրանք ճառագայթման բնական աղբյուրներ են և, հավանաբար, գտնվում են մեր Գալակտիկայի սահմաններում: Այդ աղբյուրներն ուշագրավ են նրանով, որ դրանց ռադիոճառագայթումը տեղի է ունենում կարճատև և ընդամենը մի քանի վայրկյան հաստատուն պարբերությամբ իմպուլսներով:

Կարելի է թվել բազմաթիվ այլ օրինակներ, որոնք ցույց են տալիս, թե որքան նորագույն խնդիրներ են դրված աստղագիտության՝ գիտության այդ հնագույն ճյուղի առջև, որոնք առաջնակարգ նշանակություն ունեն ո՛չ միայն աստրոֆիզիկայի, այլև նորագույն ֆիզիկայի, տիեզերագնացության ու գիտության այլ բնագավառների հետագա առաջընթացի համար:

***

Բյուրականի աստղադիտարանի գիտական ուսումնասիրությունների արդյունքներն ըստ արժանվույն գնահատվել են: Տիեզերական մարմինների առաջացման վերաբերյալ նրա առաջադրած գաղափարներն ընդհանուր ճանաչում են գտել գիտության մեջ, որը մեծագույն գնահատականն է գիտական կոլեկտիվի համար: Տարեցտարի նվազել է Համբարձումյանի և նրա կոլեկտիվի գաղափարական հակառակորդների բանակը, որի կազմում կային սովետական ու արտասահմանյան շատ ճանաչված աստղագետներ: Բավական է նշել, որ ամենամոլի և հետևողական հակառակորդը, ակրեցիայի և գրավիտացիոն կոլապսի հեղինակ անգլիացի Հոյլը մեկ տարի առաջ ստիպված եղավ հրաժարվել իր դիրքերից և ընդունել բյուրականյան հիմնական գաղափարները: Աստղերում և գալակտիկաների կորիզներում ընթացող անկայուն պրոցեսների վերաբերյալ Բյուրականի աստղադիտարանում ստացված արդյունքները ելակետային նշանակություն ունեն նաև նորագույն ֆիզիկայի, հատկապես միջուկային ֆիզիկայի բարդ պրոցեսները հասկանալու համար, ուստի և դրանք մեծ հետաքրքրություն են հարուցել նաև ֆիզիկոսների շրջանում:

Բյուրականի աստղադիտարանի ծառայությունները բարձր գնահատվեցին նաև կուսակցության ու կառավարության կողմից: 1967 թ. Աստղադիտարանը պարգևատրվեց Լենինի շքանշանով, իսկ մեկ տարի անց նրա ղեկավարին, որ մինչև այդ երկու անգամ արժանացել էր պետական բարձր մրցանակի, շնորհվեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Սակայն աստղադիտարանի հաջողությունների բարձր գնահատականը, ինչպես Վ. Հ. Համբարձումյանն է նշել, միայն կանխավճար է հետագա աշխատանքների համար: Իսկ անելիքներ, տիեզերական մարմինների առաջացման և էվոլյուցիային վերաբերող չլուծված գիտական պրոբլեմներ, դեռևս շատ կան:

Աստղագիտությունը մեծագույն վերելք է ապրում: Նրա այսօրվա տվյալներն առավել հետաքրքրական են, քան երեկվանը, իսկ վաղվա հայտնագործություններն անհամեմատ ավելի հետաքրքրական կլինեն:

Բյուրականի աստղադիտարանը, անկասկած, դեռևս շատ անելիքներ ունի այդքան խորհրդավոր ու գրավիչ տիեզերքի գաղտնիքների բացահայտման գործում:

Վ. Ա. ՍԱՆԱՄՅԱՆ

*Ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու Բյուրականի աստղադիտարանի ռադիո-աստղագիտության բաժնի վարիչ:*



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԵՐԵՔ ԱՆՈՒՆՆԵՐՈՎ

1903 թվականի աշնանային մի երեկո Պետերբուրգի աղյուսե ոչ-մեծ տան դարպասից դուրս եկավ մի երիտասարդ։ Դանդաղ քայլերով անցնելով մի քանի մութ նրբանցքներ՝ նա կանգ առավ վառ լուսավորված փողոցում։ Կաշվե հնամաշ կուրտկան, սապոգների մեջ խրած գործատեղի անդրավարտիքը, բարձր հովարով գլխարկը ասում էին, որ նա արհեստավոր է։ Արտաքինից դատելով, կարելի էր ասել, որ նա քսան տարեկանից փոքր-ինչ ավելի է։ Խիտ հոնքերը ստվերարկում էին անհանգիստ աչքերը, վերին շուրթի վրա ցցվել էին սև բեղերը։ Մի պահ նա կանգ առավ խաչմերուկում, ապա աղայական հարուստ շքամուտքից արագ ներս մտավ։

Քառորդ ժամ անց տանը մոտեցավ մարդակառքը։ Շքամուտքից դուրս եկավ պճնազեղ հագնված, ձեռնափայտը ձեռքին, շլյապավոր մի պարոն։

— Նևսկի՛,— հրամայեց նա կառապանին։ Ձիերը դոփեցին թաց սալահատակի վրա։ Քաղաքի մոդայիկ սրճարաններից մեկում կառապանը կանգնեցրեց կառքը, և ուղևորը հեշտությամբ թռչելով ոտնատեղից, լայն բացված դռներից ներս մտավ։ Շքազգեստ հագած դռնապանը խոնարհեց գլուխը։

Դահլիճում ծուխ էր, աղմուկ, ուրախություն։ Իրար մոտեցրած սեղանների առջև նստել էին ուսանողներ և ուսանողուհիներ, երիտասարդ սպաներ ու չինովնիկներ, դերասաններ ու գրական գործիչներ։ Հյուրը նոր էր ոտք դրել դռան շեմին, երբ ամեն կողմից բացականչեցին.

— Բրավո՜, Վերմիշը եկավ։ Սաշա՜, մեզ մոտ արի՛։

Մի քանի երիտասարդներ ու օրիորդներ տեղներից վեր թռչելով, բռնեցին նրա ձեռքերից և քաշեցին իրենց սեղանի կողմը։ Վերմիշևի դեմքը ժպիտից լայնացավ։ Նա զուր փորձում էր դիմադրել, բայց հասկանալով, որ անօգուտ է, նստեց աթոռին։

— Եվ այսպես, պարոննե՛ր, կովկասյան նոր անեկդոտ... Թիֆլիսի քաղաքապետի մոտ եկավ կինտոն...

Սեղանի շուրջը ծիծաղ պայթեց։ Հետո նա վերցրեց գիթառը և սկսեց կուպլետներ երգել։ Զվարճացողների խումբը ձնագնդի պես մեծանում էր։ Ոչ մեկի մտքով չէր անցնում, որ այդ զվարճասերն ու կատակաբանը, ընկերների ու պրոֆեսորների սիրելին, մի ժամ առաջ Պուտիլովյան գործարանի բանվորների շրջանում մարքսիստական խմբակի պարապմունք է անցկացրել, որ Սանկտ-Պետերբուրգի համալսարանի այդ փայլուն ուսանողը ՌՍԴԲԿ կազմակերպության և մարտական դրուժինայի անդամ է։



Վերմիշևի անունն առաջին անգամ ես լսեցի տասը տարի առաջ. «Комсомольская правда»-ն ինձ ուղարկել էր նրա տղայի՝ Ալեքսանդրի նամակը, որն այժմ ապրում է Բաշկիրական ԱՍՍՀ-ի Օկտյաբրսկ քաղաքում։ Նամակին կցված էին Ա. Վերմիշևի *Կարմիր ճշմարտություն* պիեսը, ֆելիետոններ, պամֆլետներ, նկարներ և *Դարբնոցում* բանաստեղծությունների շարքը, տարօրինակ ստորագրությամբ՝ «Sa-ve»։

Sa-ve։ Ի՞նչ է նշանակում։ Գրական կեղծանո՞ւն, թե՞ կուսակցական մականուն։ Հանկարծ հիշեցի, որ այդպիսի ստորագրության ինչ-որ տեղ արդեն հանդիպել եմ։ Մի քանի տարի առաջ Անդրկովկասի գրադարաններում ծանոթանում էի մինչհեղափոխական թերթերի արխիվներին, Լև Նիկոլաևիչ Տոլստոյի մահվան առթիվ տպագրված արձագանքներին։

Հիշեցի 1910 թ. նոյեմբերի 14-ին «Բաքու» թերթում տպագրված *Տոլստոյը չի մեռել* բանաստեղծությունը, որի տակ ստորագրված էր՝ «Sa-ve»։

Եվ ահա ես նորից Բաքվում եմ։ Հետաքրքրությամբ թերթում եմ «Բաքու» և «Кавказская копейка» լրագրերի դեղնած թերթերը։ Ու գրեթե ամեն համարում՝ հրապարակախոսական կըրքոտ հոդվածները, հրատապ տեսությունները, ֆելիետոնները, բանաստեղծությունները պատկանում էին նույն Sa-ve-ի գրչին։

Գրադարակից վերցնում եմ Մասանովի *կեղծանունների բառարանը*։ Այստեղ 334-րդ էջում գրված է. «Sa-ve»— Վերմիշև Ալեքսանդր Ալեքսանդրովիչ, նա ինքը՝ Ա. Սավիցկի։ Ուսումնասիրում եմ կենսագրական նյութերը, փորփրում Բաքվի, Լենինգրադի, Սարատովի, Մոսկվայի արխիվները և պարզում. Sa-ve-ն կոմունիստընդհատակյա գործչի կուսակցական կեղծանունն է, Ա. Սավիցկի-Վերմիշևի երկրորդ կեղծանունը, որի տակ նա թաքնվել է հետաքրքրասեր ընթերցողներից... պահնորդական բաժնից և ոստիկանական վարչությունից։

Բազմազան է հեղինակի շոշափած հարցերի շրջանակը։ Նա հասարակայնության ուշադրությունն ուղղում է Բաիլովի նավթագործ բանվորների թշվառ վիճակի վրա, ռեակցիոն հարձակումներից պաշտպանում Լ. Ն. Տոլստոյի և Ա. Մ. Գորկու ստեղծագործությունները, մերկացնում կապիտալիստական մոնոպոլիաները և արտասահմանյան կոնցեսիաների քաղաքականությունը Ռուսաստանում, ցասումնալից հոդվածներ գրում քաղաքական աքսորականների կյանքի, ցարիզմից կեղեքված Բելոռուսիայի, Ֆինլանդիայի, Լեհաստանի ժողովուրդների մասին։

1910 թ. *ժամանակակից վիճակագրությունը* անմեղ, փոքրիկ հոդվածում հեղինակը, ասես պատահաբար, տեղեկացնում է. «Մեկ տարվա ընթացքում Ռուսաստանում 447 մահվան վճիռ է կայացվել, փակված են ավելի քան 200 արհեստակցական և լուսավորական կազմակերպություններ ու հիմնարկություններ, տուգանվել են 232 հրատարակչություններ, իսկ դրանց մեծ մասը լիովին ճզմվել են...»։

Հենց այդտեղ էլ, Բաքվում, երիտասարդ Վերմիշևը տարբեր ժամանակներում գրել է հինգ գործողությամբ *Սուրհանդակներ* պիեսը, *Կյանքի մրուրը* սոցիալական դրաման, մի քանի կատակերգություններ ու վոդևիլներ, որտեղ սուր ծաղրով մերկացնում է բուրժուական հասարակությանը։

Արտասովոր և ռոմանտիկական է այս մարդու կենսագրությունը[1]։ Նրա՝ ուսնոր ծնողների տղայի համար իրավաբանական փայլուն կարիերայի լայն ճանապարհ էր բացված։ Այդ նա փոխարինեց երեք հեղափոխությունների փոթորկածուփ ալիքներով, պրոֆեսիոնալ հեղա-

[1] *Հետաքրքրական է և նրա ազգանվան պատմությունը։ XVIII դարի վերջում վրաց ժողովուրդը ազատագրական պայքար էր մղում թուրքերի դեմ։ Մարտերից մեկում աչքի ընկավ Թելավիում ապրող մի հայ զինվոր՝ Ամբակոն և նրա ջոկատը։ Եվ երբ Ամբակոն պարտվածների դրոշը նետեց Իրակլի II-ի ոտքերի առաջ, հիացած թագավորը գոչեց.*

*— Ինչո՞վ կարող եմ շնորհակալ լինել։*

*— Ոչինչ ինձ պետք չէ։ Ապրի՛ր ի բարօրություն ժողովրդի, և ես լավ կլինեմ,— պատասխանեց Ամբակոն։*

*— Շեն թվիս վերվիշովի (հազվագյուտ գլուխ, կամ՝ չտեսնված գեղեցիկ հոգու տեր մարդ),— ասաց թագավորը։*

*Այդ օրվանից էլ Ամբակոյին կոչեցին Վերվիշովի, թոռներին՝ Վերվիշև, ապա՝ Վերմիշև։*

*Ահա այս հայ Ամբակոյի թոռներից մեկի՝ Անտառային ինստիտուտի ուսանող Ալեքսանդր Ավակումովիչի և Մարիա Ալեքսանդրովնա Սավիցկայայի որդին էր Ալեքսանդր Վերմիշևը։*

*Ի դեպ, խմբագրության պատվերով գրված այս ակնարկի հերոսի մասին առաջին անգամ գրել է ՄԼԻ հայկական ֆիլիալի կրտսեր գիտական աշխատող Վալենտինա Աբրահամյանը՝ Գրող-հեղափոխականը վերնագրով (տե՛ս ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, 1959 թ., № 9)։*

*1968 թ. Լենինգրադում լույս է տեսել առաջին գիրքը քաղաքացիական կռիվների հերոսի, բոցաշունչ բոլշևիկի, ժուռնալիստի, պոետի և հեղափոխության առաջին դրամատուրգներից մեկի՝ Ա. Ա. Վերմիշևի մասին— Յա. Լ. Սուխոտինի* **Песню расстрелять нельзя**, *որի հայերեն հրատարակությունը ցանկալի է և անհրաժեշտ։*

փոխականի տառապալից ու վտանգալի կյանքով: Ժամանակը և իրադարձությունները նրա անունը ջնջել են մարդկանց հիշողությունից: Անցյալի այն հեռավոր տարիներին իսկ քչերը գիտեին, որ առեղծվածային Sa-ve կեղծանվամբ մարդը, գրող Ա. Սավիցկին և կարմիր բանակի լեգենդար կոմիսար, սովետական առաջին դրամատուրգ Ա. Վերմիշևը նույն անձնավորությունն է:

Ծնվել է նա 1879 թ., օգոստոսի 29-ին, Սանկտ-Պետերբուրգում: Կյանքի առաջին տարիներն անց է կացրել Անդրկովկասում, ուր նրա հայրը՝ կոլեգիական խորհրդական, Բաթումի, Սվանի, Օզուրգեթի գավառների անտառապետն էր: Վերմիշևի ընտանիքը մտերիմ էր Մայակովսկու հետ, նրանք բարեկամություն էին անում, հաճախ հանդիպում միմյանց: Ապագա կոմիսարի ու դրամատուրգի պատանեկությունն անցել է Ինգուր և Քուռ գետերի ափին, Արևմտյան Վրաստանի անտառներում ու լեռներում, Աբխազիայի ոսկեզօծ մարգագետիններում, Բաքվի նավթաշտարակների շրջապատում: Արդեն հասուն տարիքում, ավարտելով Բաքվի գիմնազիան, նա սկզբում ընդունվում է Պետերբուրգի համալսարանի պատմա-ֆիլոլոգիական, ապա իրավաբանական ֆակուլտետը:

Դեռևս առաջին կուրսերում Ա. Վերմիշևը մասնակցում է ուսանողական հուզումներին, երկու անգամ կանգնում պրոֆեսորական կարգապահական դատարանի առջև և հեռացվում համալսարանից: Իրավաբանական կրթությունը շարունակում է բավական ուշ, Յուրևի համալսարանում, երբ արդեն պրոֆեսիոնալ հեղափոխական էր. այդտեղ նրան հաջողվեց ընդունվել իր հուսալիության մասին կեղծ փաստաթղթեր ձեռք բերած ազգականների աջակցությամբ:

Մի ամբողջ տարի պահնորդական բաժինը փնտրում էր Պետերբուրգի կողմերում հանգիստը խռովող, Sa-ve տարօրինակ կեղծանվամբ կուսակցական խորհրդավոր ագիտատորին: Գործակալներից ոմանք պնդում էին, թե այդ անվան տակ թաքնված է պուտիլովյան բանվոր, ուրիշները տեղեկացնում էին, որ Sa-ve-ն հեռագրիչ է Նիկոլաևյան ճանապարհից, երրորդները՝ թե դա աքսորից փախած քաղաքական հանցագործ է:

Ընդունակ ու հանդուգն կոնսպիրատորը մատների վրա վարպետորեն խաղացնում էր մայրաքաղաքային փորձառու խուզարկուներին: Մի անգամ, երբ ոստիկանությունը բռնել էր Վերմիշևին, թռուցիկների կապոցը նա ճարպկորեն խոթել էր գորոդովոյի գրպանը: Ժանդարմական սպան երիտասարդին խուզարկելուց հետո բաց էր թողել: Մի ուրիշ անգամ նա խուզարկուի պիջակին երկտող է փակցնում. «Մարդը, որին դուք փնտրում եք, ծառայում է ժանդարմական վարչությունում»:

Եվ, այնուամենայնիվ, նրա հետքերը գտնվեցին: Նրան գտան մի տարի անց, իբրև ուսանողական հուզումների մասնակցի, չիմանալով, որ ուսանող Վերմիշևը և Sa-ve-ն նույն անձնավորությունն է: Այդ հանգամանքը հնարավորություն ընձեռեց նրան 1904 թ. փրկվել, միայն ոստիկանության հսկողությամբ ծնողների բնակավայրը՝ Թիֆլիս ուղարկվելով: Բայց վտարանդի ուսանողը երկար չմնաց Վրաստանում: Նա գաղտնի վերադարձավ մայրաքաղաք, ուր ապրում էր ծպտյալ: Ու մինչ Պետերբուրգի հասարակական անվտանգության պահնորդական բաժինը նրա մասին հարցում արեց Թիֆլիս, իսկ Թիֆլիսի պահնորդները հետաքրքրվեցին, թե որտեղ է ապրում նա Պետերբուրգում, Վերմիշևի խումբը հրատարակեց ու բանվորների շրջանում տարածեց մարքսիստական գրականություն և «Պետերբուրգի կայազորի զինվորներին» ու «Ընկեր զինվորներ» թռուցիկները:

1905 թ. ռուսական առաջին հեղափոխության օրերին Ալեքսանդր Վերմիշևը Վիբորգյան շրջանի բարիկադներում էր: Զինված ապստամբությանը մասնակցելու համար նրան նետում են Պետերբուրգի քաղաքական բանտը՝ «Кресты»: Այնտեղ, բանտի մենախցում (№ 525), նա գրում է *Հանուն ճշմարտության* իր անդրանիկ պիեսը՝ նվիրված հունվարի 9-ի արյունոտ դեպքերին:

Բանտից դուրս գալուն պես, հեղինակն իր սեփական միջոցներով առանձին բրոշյուրով հրատարակում է պիեսը և ուղարկում Ռուսաստանի տարբեր քաղաքների գրախանութները և առանձին մարդկանց:

Թերթում եմ 1911 թ. *Ռուսաստանի մամուլի վերաբերյալ տեղեկագիրքը: Արգելված գրքեր* բաժնում Մարքսի, Էնգելսի, Լաֆարգի, Կրոպոտկինի, Լենինի, Պլեխանովի, Լունաչարսկու, Լև Տոլստոյի, Ստեպնյակ-Կրավչինսկու ստեղծագործությունների կողքին կարդում եմ. «Վերմիշև Ալեքսանդր. *Հանուն ճշմարտության,* դրամատիկական էտյուդ, վեց պատկերով, հրատարակություն «Новый мир», ՍՊԲ, 1908 թ.»:

Թե ինչ է իրենից ներկայացնում այդ դրամատիկական էտյուդը, վկայում է «Столичная почта» թերթի 1908 թ. փետրվարի № 15-ի գրախոսականը: Պիեսի գլխավոր հերոսը,— նշում է հեղինակը,— բանվոր դասակարգն է: Այնտեղ ցուցադրված է 1905 թ. հունվարի 9-ի պատմական մեծ դրաման: Դրանից անմիջապես հետո, պետերբուրգյան այլ թերթեր, լրագրային խրոնիկայում հայտնում են, որ ուսանող Ա. Վերմիշևին դատական պալատը կրկին բանտարկության է դատապարտել, որովհետև նրա *Հանուն ճշմարտության* դրամատիկական էտյուդում մի քանի գործող անձինք կոչ էին անում տապալել իշխանությունը:



Սակայն արդեն 1910 թ. Ռուսաստանի մյուս ծայրում՝ Բաքվում, Թիֆլիսում, Բաթումում տարբեր հրատարակություններով երևան են գալիս ցարական փտած կարգերը մերկացնող, պայքարի կոչող սուր հրապարակախոսական հոդվածներ, պամֆլետներ, ֆելիետոններ: «Sa-ve» կեղծանվան հետ մեկտեղ այդ աշխատությունները ստորագրվում են և այլ անուններով՝ Ա. Սավիցկի, «Ն. Ռ.», «Դիտող»: «Բաքու» և «Кавказская копейка» թերթերը, ուր տպագրվում էին Sa-ve-ի գործերը, բազմիցս տուգանվել են, կամ իշխանությունների կողմից ընդհանրապես արգելվել: Վերմիշևին հաճախ դժբախտությունից ազատել է հարազատ հորեղբայրը՝ «Բաքու» թերթի հրատարակիչ ու խմբագիր, դեմոկրատ ու լիբերալ Քրիստափոր Վերմիշևը:

Թաքնվելով ոստիկանությունից, նա ներկայանում է իբրև մի ֆինն ազնվատոհմիկի քարտուղար, վրացական պայծառափայլ իշխան, հայ գրավաճառ կամ Վարշավայի առևտրական ֆիրմայի կոմիվոյաժոր: Դրան նպաստում էր նրա օտար լեզուների, ինչպես նաև վրացերենի, հայերենի, ադրբեջաներենի գերազանց իմացությունը:

1912 թ. Ալեքսանդր Վերմիշևն ընդմիշտ անհետանում է Անդրկովկասից: Թիֆլիսի ժանդարմերիան քրեական նոր գործ է հարուցում նրա վերաբերյալ (ո՞րերորդ անգամ), հետաքննում հակապետական արարքները, գրվում է նրա ձերբակալության օրդերը:

Այդ ժամանակ Պետերբուրգի մեծ պողոտայի վրա գտնվող № 69-ա տանը հայտնվեց մի համեստ, փոքրիկ ցուցանակ՝ «Մասնավոր երդվյալ հավատարմատար՝ Ա. Ա. Վերմիշև»: Երդվյալ հավատարմատարի փաստաթղթերը հուսալի են, նրան հովանավորում են իշխանուհի Դոլգորուկայան, քեռու՝ իշխան Աբամելիքի կինը, որոնց հետ նա հաճախ հայտնվում է Մարինյան թատրոնի օթյակներից մեկում, և այլ նշանավոր անձինք: Իհարկե, դա նրան միշտ չէր պահպանում ոստիկանության հսկողությունից, այդուհանդերձ նա կարողանում էր միջոցներ գտնել և դատավարության ընթացքում պաշտպանել քաղաքական բանտարկյալներին, պետական դումայում իրավաբանական կոնսուլտացիաներ կազմակերպել ձեռնարկատերերի դեմ բանվորների հարուցած հայցերի առթիվ:

Կուսակցությանն անհրաժեշտ էին գաղտնի բնակարաններ և հանդիպատեղեր: Եվ ահա պահնորդների քթի տակ, քաղաքի կենտրոնում, հայտնվում է *Բնակարան վարձողների ընկերությունը,* որի տերն ու տնօրենները՝ Ա. Վերմիշևն ու Ս. Լուկաշինը, այն օգտագործում էին անլեգալ գրականության հրատարակման ու տարածման նպատակով:

Շուտով քաղաքի մյուս ծայրում, հայկական եկեղեցուն կից, ստեղծվում է նոր ընկերություն: Եվ դարձյալ մի անմեղ ցուցափեղկ՝ *Կովկասյան հայրենակցական ընկերություն:* Այստեղ Վերմիշևն ու Լուկաշինը բացարձակ լեգալ անդամներ են, մեկը եկեղեցու ավագն է, երկրորդը եկեղեցական խորհրդի անդամ: Այս «սուտծո մարդիկ» օգնում էին քաղաքական կալանավորներին, կազմակերպում նրանց փախուստները բանտերից, անց կացնում Ֆինլանդիա և Թուրքիա, կապ պահպանում եվրոպական երկրների կուսակցական էմիգրանտական կենտրոնների հետ: Ավելի ուշ նրանք ստեղծում են մի ընկերություն ևս՝ *Զգաստության ընկերությունը:* Այստեղ հեղափոխականների գաղտնի զինանոցն էր:

1917 թվական, փետրվար... Պետերբուրգի անհանգիստ փողոցներով սլանում է զինված դրուժիննիկներով լի բեռնատար ավտոմեքենան: Առջևում Sa-ve-ն է: Հրացանն առաջ թեքած, նա ջոկատն առաջնորդում է ոստիկանական վարչություն, գրավում այն և ոչնչացնում բոլշևիկներին վերաբերող հետաքննական նյութերը: Վերմիշևի ջոկատը բանտից ազատում է քաղաքական բանտարկյալներին, մարտի բռնըվում կայսերական հեծելազորային դպրոցի յունկերական հեծելավաշտի հետ: Հոկտեմբերյան ահեղ օրերին Վերմիշևը զինվորների և բանվորների հետ գրոհում է Ձմեռային պալատի վրա: Նիկոլայ Պոդվոյսկու և Սերգեյ Նևսկու հանձնարարությամբ նրա ջոկատը ոչնչացնում է Էրմիտաժի կողմերում գտնվող յունկերական առաջապահ զորամասերը և նետվում Ձմեռային: Օր ու գիշեր դադար չկար: Վերմիշևը կազմակերպում է կարմիր գվարդիայի կամավորների ցուցակագրումը, ոչնչացնում բանդիտներին ու անարխիստներին: Ապա կարմիր կուրսանտներին գրոհի է տանում Պետերգոֆի և Ստրելնյայի տակ՝ պաշտպանելով Պիտերը Յուդենիչից և սպիտակ ֆիններից, պաշտպանում է Դոնի Չերտկովո բնակավայրը՝ պատժիչ կազակներից, մեկնում Միլերովո կայարան՝ որպես սովետական առաջին պարետ:

Հեղափոխության վերջնական հաղթանակից հետո կուսակցությունը Վերմիշևին Աշխատանքի և պարենավորման կոմիսարիատում պատասխանատու գործ է հանձնարարում, նշանակում կենտրոնական քրեական քննչական հանձնաժողովի անդամ: Այնուհետև նա դառնում է Պետրոկոմունայի տրանսպորտի բաժնի պետ, Պետրոգրադի շրջանի բանվորների և զինվորների դեպուտատների խորհրդի քարտուղար: Այդպիսի իրադարձություններում, անքուն գիշերներին Վերմիշևը գրում է իր նոր, *Կարմիր ճշմարտություն* պիեսը, այն ժամանակվա ամենահրատապ թեմայի՝ քաղաքացիական կռիվների մասին: Պիեսը նա ուղարկում է Լենինին՝ կարծիքի:

Սովետական առաջին ռեժիսյորներից մեկի, Վերմիշևի մտերիմ ընկերոջ՝ Ալեքսանդր Մհբե-

րովի վկայությամբ, կարդալով դրաման, Լենինը շապիկի վրա մակագրում է. «Անհրաժեշտ է ժողովրդական մասսաներին՝ որպես ագիտացիոն գործ»:

*Կարմիր ճշմարտության* առաջին գրախոսը Մաքսիմ Գորկին էր. հեղափոխական պիեսների մրցույթում պաշտպանելով այն, ձեռագրի վրա նա գրել է. «Ոչ թե մելոդրամա է, այլ ժամանակակից թեմատիկայով ագիտացիոն կենցաղային պիես: Կան կերպարներ— Իպատը, Գանյան...»: *Կարմիր ճշմարտության* մասին ջերմ է արտահայտվել լուսավորության առաջին ժողկոմը՝ Մ. Վ. Լունաչարսկին, պոետ Դեմյան Բեդնին, դրամատուրգ Ալեքսանդր Վիշնևսկին:

Ժողովրդական այս դրաման բեմահարթակ բարձրացավ հեղինակի զոհվելուց հետո միայն: Առաջին անգամ այն բեմադրվեց 1919 թ. նոյեմբերին, Սմոլնիի դահլիճում, Ալեքսանդր Մհբերովի կողմից, Պետրոգրադի առաջին հեղափոխական հերոսական թատրոնի ուժերով: *Կարմիր ճշմարտությունը* դիտեցին նաև մոսկովյան Սպասկու զորանոցի մարտիկները, Տուլայի, Պերմի, Խարկովի բանվորներն ու զինվորները:

1920 թ. «Пролетарская культура» ամսագիրը գրել է. «Կասկածից վեր է, որ եթե ամենաանգիտակից և թունդ սպիտակգվարդիականը դիտեր այս պիեսը, ապա ակամա կհասկանար բուրժուական հասարակարգի գարշելիությունն ու սնանկությունը...»:

Այդպիսին էր հեղափոխության երգչի ներգործուն ուժը: Բայց այդ նրա մահից հետո էր... Իսկ այն օրերին, երբ սովետական երիտասարդ հանրապետությունը թշնամական շրջապատման մեջ էր, Ալեքսանդր Վերմիշևը դիմում է ՌԿԿ(բ) Կենտկոմին, խնդրում, որ իրեն անհապաղ ճակատ ուղարկեն: Նա հարավ մեկնեց կարմիր հրապարակում կայացած միտինգից անմիջապես հետո, որտեղ կամավորներին հաջողություններ բարեմաղթեց Վ. Ի. Լենինը:

Կոմունիստ Վերմիշևի գրպանում է «Դոնի սովետական իշխանության կազմակերպչի» և ՌԿԿ(բ) Դոնկոմում՝ ՌԿԿ(բ) Կենտկոմի լիազորի մանդատը: Մինչ նա կհասներ նշանակված վայրը, Ռոստովում տիրություն էին անում սպիտակները: Վերմիշևը կարմիրբանակայինների հետ և վերջապահ զորքերում կռվում է որպես հասարակ զինվոր: Բանակի հրամանատար Յան Ֆաբրիցիուսը Վերմիշևին (որին նա ճանաչում էր դեռևս Պիտերից) նշանակում է Միլերովո կայարանի պարետ, իսկ հետո՝ գումարտակի հրամանատար:

1919 թ. ամռան վերջն էր: Դենիկինը հարձակվում էր Մոսկվայի վրա: Սպիտակ դրոշի տակ հեծում էին Կուրսկը, Օրյոլը, Վորոնեժը: Թշնամին մոտենում էր Տուլային... Լռել, կծկվել էր նաև մերձճակատային Ելեց փոքրիկ քաղաքը: Գիշեր-ցերեկ չէին բացվում տների պատուհանները: Ելեցի բնակիչներն արթնանալուն պես հուսով նայում էին տեղական սովետի վերնաճակատի մուրճ ու մանգաղակիր կարմիր դրոշին: Քաղաքը հեղեղել էին հարևան գավառի սարսափահար փախստականները: Հրետանային կրակոցները ցնցում էին գետինը: Տաք քամին օդում տրտմորեն պտտեցնում էր ակացիայի և բարդու տերևները: Ջարդված աղյուսով և թափված ավազով լեցուն փողոցներով գլխիկոր անցնում էին վիրավորները: Քաղաքային հրապարակում շտապ զինվարժություններ էին կատարում կարմիրբանակայինները:

*Բոլորը Դենիկինի դեմ:*

Այդ պայքարը մղվում էր հրացանով ու գրչով, պարենմասնատրմամբ և ագիտատորի խոսքով: Կուսակցությունը ճակատ ուղարկեց 30 հազար կոմունիստ: Կենտկոմի հայտարարած կուսակցական շաբաթի շնորհիվ ճակատ մեկնեց ևս 200 հազար երիտասարդ կուսակցական՝ բանվոր ու գյուղացի:

Հարավային ճակատում մարտնչող կոմունիստ պիտերցիների մեջ էր նաև XIII բանակի պահեստային հատուկ գումարտակի կոմիսարը, РОСТА-ի հատուկ թղթակից Ալեքսանդր Վերմիշևը: 39-ամյա կոմիսարը 1905 և 1917 թվականների բարիկադային մարտերի փորձ ուներ:

Մարտերի ընթացքում, հազվադեպ ընդմիջումներին, Ելեցի կայազորի կարմիրբանակային շրջիկ ագիտթատրոնում նոր ներկայացման փորձերն էին: Ռեժիսորն էր քաղկոմիսար Վերմիշևը: Եվ միայն նրան մոտ մարդիկ գիտեին, որ խիզախ կոմիսարը ո՛չ միայն ռեժիսորը, այլև *Կարմիր ճշմարտության* հեղինակն է:

Գլխավոր փորձի եռուն պահին, դա օգոստոսի 31-ն էր, կոմիսարին մոտեցավ լրաբերը:

— Մամոնտովը թիկունքո՛ւմ է:

Տագնապալի լուրն անցավ բերնե-բերան: Մամոնտովի սպիտակ հեծելազորն անակնկալ արշավով մտավ հարավային ճակատի թիկունքը, իր հետևից թողնելով փլատակներ ու հրդեհ:

— Փորձը հետաձգվում է: Ի զե՛ն: Գումարտա՛կ, պաշտպանական դիրք գրավել կայարանի շենքի մոտ: Իմ հետևի՛ց:

Անհավասար մարտը շարունակվեց մի քանի ժամ: Սպիտակ հրետանին գնդակոծում էր կայարանը: Մարտում ընկան Վերմիշևի գումարտակի գրեթե բոլոր մարտիկները, իսկ նրանց վիրավոր, արյունաքամ կոմիսարին գազանացած մամոնտականները գերեցին: Հարբած կոզակներն արդեն կախաղաններ էին պատրաստել Ելեց կայարանում...

Ողբերգական այդ օրերին Ելեցի ճակատամասում գտնվող «Красный воин» թերթի թղթակիցը գրում է. «Քաղկոմիսար ընկ. Վերմիշևի *Կարմիր ճշմարտությունը* պիեսը պետք է բեմադրվեր Ելեցում, սովետական պրոպագանդայի օրը, սեպտեմբերի 1-ին: Նա ինքն էր ղեկավարում փորձերը: Հիշում եմ իր պիեսն առաջին անգամ բեմում տեսնելու նրա ուրախությունն ու հրճվանքը: Սիրելի ընկեր, չվիճակվեց քեզ վայելել երջանկության այդ պահերը: Դահիճները գազանաբա՛ր տանջեցին քեզ: Երդվում ենք քո թարմ շիրմի առաջ, վրեժ լուծել հերոսական մահվանդ համար: Հանգիստ ոսկորներիդ...»:

Սակայն կոմիսար Վերմիշևի մահվան մանրամասները հայտնի դարձան ավելի ուշ, աշնանը, երբ կարմիր բանակը մասսայական հակագրոհով Դենիկինի զորքերը շպրտեց Օրյոլի շրջանները, իսկ Բուդյոննու հեծելազորը Վորոնեժի տակ գլխովին ջախջախեց Շկուրո-Մամոնտովի լավագույն զորամասերի կորպուսները: Կոմիսար Վերմիշևին մատնել էին դավաճանները— Ելեցի կարմիրբանակային թատրոնի դերասան, նախկին փոխկապիտան Վորոնովը և յասաուլ Կալմիկովը, դենիկինյան հետախուզության ագենտները:

Սարսուռով են կարդացվում 1919 թ. «Орловская известия»»-ի համարներից մեկի զուսպ տողերը:

«...Հենց այնտեղ, մարտի դաշտում կազակները ուշագնացության աստիճան ծեծեցին ընկ. Վերմիշևին, կապեցին թամբին և քարշ տվին քաղաք: Գեներալ Մամոնտովի զբաղեցրած տան առջև նրանք ընկ. Վերմիշևին դաժանորեն տանջեցին, կտրատեցին մատները, քիթը, ականջները և մարմնի մյուս անդամները: Ապա գլխիվայր կախեցին ցանկապատից և, երեքժամյա կտտանքից հետո, սրախողող արին: Սպիտակների բոլոր հարցերին ընկ. Վերմիշևը ոչինչ չէր պատասխանում և երբ զգաց, որ վերջն է, աղաղակեց. «Կեցցե՛ կարմիր բանակը և նրա նվաճումները: Կեցցե՛ սովետական իշխանությունը: Կեցցե՛ ընկեր Լենինը: Անիծված լինեք, դահիճներ... Այդ ժամանակ ընկ. Վերմիշևի գլխին հասցրին սրի վերջին՝ մահացու հարվածը»:

Այդպես մեռավ 1903 թ. ՌՍԴԲԿ անդամը, անվեհեր կոմիսարը, սովետական առաջին դրամատուրգը և *Կարմիր բանակայինի երդման* առաջին բանաստեղծական տողերի հեղինակը:

Ալեքսանդր Վերմիշևն ապրել է ընդամենը 39 տարի, բայց ինչպիսի՜ հետք թողեց: Նրան ճանաչում էր Լենինը: Առաջին անգամ Sa-ve-ն Լենինին տեսավ Ֆինլանդիայում, ուր նա մեկնել էր որպես կուսակցության կապավոր: Ավելի ուշ՝ Ֆինլանդական կայարանում՝ Լենինին դիմավորելիս նրան պահպանող ջոկատում էր: Կոմիսարի համար Սարգիս Լուկաշինի գրած մահախոսականը, որ լույս տեսավ 1919 թ. «Правда»-ի «Еженедельник»-ի № 13-ում, երկար ժամանակ դրված էր Իլյիչի գրասեղանին:

Բնորոշ է, որ Լենինի անվան հետ կապված առաջին բանաստեղծություններից մեկը պատկանում է Վերմիշևի գրչին:

Պետրոգրադում և Կովկասում Վերմիշևը ջերմ բարեկամ էր նշանավոր հեղափոխականներ Ա. Բադաևի, Ն. Նարիմանովի, Ա. Բուբնովի, Ա. Ենուկիձեի, Ն. Սեմաշկոյի, Ի. Ստալինի, Ս. Շահումյանի, Մ. Ազիզբեկովի, Ա. Ջափարիձեի, Ա. Մյասնիկյանի, ինչպես նաև սովետական զինպետեր՝ Ն. Պոդվոյսկու, Յան Ֆաբրիցիուսի, Ա. Դիբենկոյի հետ:

Sa-ve-ն բազմակողմանի գիտելիքների տեր էր: Նրա արխիվում գտնվել են մոտ 20 պիես, բանաստեղծություն ու երգ, նա լավ հրապարակախոս էր, տեխնիկական մի շարք նորարարությունների հեղինակ: Նա լավ երգում էր, գիթառ և դաշնամուր նվագում, պլակատներ նկարում Роста-ի համար, գրում սեփական բանաստեղծությունների երաժշտությունը, խաղում էր բեմում, փայլուն տիրապետում գրիմյորության արվեստին, որը նրան օգնում էր ծպտվել ու թաքնըվել հետապնդողներից:

Ալեքսանդր Վերմիշևը հավատարիմ մնաց իր սկզբունքին: Նա չարատավորեց իր մարտական անունը, իր ողջ կարճատև կյանքում երկու զենքով— հրացանով ու գրչով նվիրվեց ժողովրդի երջանկության, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարին:

Գ. Օ. ՕՍԻՊՈՎ
*Մոսկվա*

# Ժուռնալիստի ՆՈԹԵՐ

## ՀԱՄԱՅՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՏՈՒՂՆԵՐԸ



Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Նորադուզի կոլտնտեսության նախագահ

Նորադուզում կա մի հանդամաս, որը մինչև այսօր էլ կոչվում է «Խամուր քյասան» (հայերեն նշանակում է՝ «խմոր կտրող»)։ Ասում են, որ անցյալում գյուղացին այդ հողամասում ինչ հատիկ որ ցանել է, ծիլերը հողից չըբարձրացած թոշնել են կամ, լավագույն դեպքում, խղճուկ բերք տվել։ Նվազ է եղել նաև մյուս հանդամասերի պտղատվությունը։ Ռամիկները արորով են վարել հողը, ձեռքով ցանել սերմը, մանգաղով ու գերանդիով հնձել արտը։ Նրանք հիմնականում մշակել են տարեկան (չավդար) ու գարի։ Ընչազուրկ գյուղացին աշխատել է արևածագից արևմուտ, դառը քրտինք է թափել, բայց աննշան արդյունքի հասել՝ հեկտարից 5—6 ցենտներ բերք ստացել։ Նա կարոտ է մնացել նույնիսկ տարեկանի ու գարու հացին։

Մարդիկ ապրել են գետնի երեսին հազիվ նշմարվող հողածածկ խրճիթներում, ուր լույսի շողքն ու արևի ճառագայթը թափանցել են միայն երդիկից։ Այդ խրճիթների հետքերը Նորադուզում մինչև մեր օրերն էլ կան, կարծես թանգարանային նմուշներ լինեն։

Աշխատավոր գյուղացու այդ չարքաշ կյանքը տևական կլիներ, եթե մեծ Հոկտեմբերի ազատարար դրոշը չծածանվեր հայկական լեռնաշխարհի վրա, եթե Վ. Ի. Լենինի գաղափարները չթափանցեին հայ ժողովրդի կյանքում։ Երկրում հաստատվեցին սովետական կարգեր, ազգայնացվեց հողը, ինչպես բոլոր գյուղացիները, այնպես էլ նորադուզցիները ստացան շնչապատկան հողամաս։ Բայց դա թշվառությունից դուրս գալու սկիզբն էր միայն։ Գյուղացին հողին տեր դառնալով, այն մշակում էր հասարակ գործիքներով և անհրաժեշտ արդյունք չէր ստանում։

Եվ ահա հարկավոր էին Վ. Ի. Լենինի հեռատեսությունը, նրա մարգարեական խորհուրդները աշխատավոր գյուղացիությանը։

— Եթե մենք առաջվա նման մնանք մանր տնտեսություններում՝ թեկուզ որպես ազատ քաղաքացիներ, ազատ հողի վրա, մեզ այնուամենայնիվ անխուսափելի կորուստ է սպառնում։

— Այդ դրությունից դուրս գալու միակ ելքը՝ գյուղատնտեսական նորագույն տեխնիկայով և համայնական ձևով հողը մշակելն է։

## ԼԵՆԻՆԻ ՊԱՏԳԱՄՆԵՐՈՎ

Կոմունիստական կուսակցությունը հավատարիմ մնալով Վլադիմիր Իլյիչի պատգամներին, մեր երկրի աշխատավոր գյուղացիությանը տարավ նրա ցույց տված ճանապարհով, նրանց զըրկանքից դուրս բերելու, ունևոր կյանք վարելու ուղիով։ Նորադուզցիներն էլ ընթացան այն ուղիով։

Այդ 1928 թվականին էր։ Մեր լայնարձակ հայրենիքի միլիոնավոր գյուղացիների պես Նորադուզում էլ մի խումբ չքավորներ ու բատրակներ հիմնադրեցին կոլտնտեսություն։ Դրանից հետո քառասունմեկ գարուն է անցել, շատ իրադարձություններ են տեղի ունեցել երկրի և Նորադուզի կյանքում, շատ փաստաթղթեր են տեղից տեղ փոխադրվել կամ ոչնչացվել, բայց կոլտնտեսության վարչության արխիվում սրբությամբ պահպանվում է մի հին, խունացած մատյան, որում գրառումներ կան գյուղատնտեսական արտելի կազմակերպման տարեթվի, նրա անդրանիկ անդամների և ունեցվածքի մասին։ Գյուղում նոր կյանքի համար առաջին խիզախողներն էին Արամայիս Գրիգորյանը (կոլտնտեսության անդրանիկ նախագահ), Հայկազ Ավետիսյանը, Սարգիս Բաղկոյանը, Դավիդ և Խաչիկ Գրիգորյանները, Բաղիշ և Պետրոս Կարապետյանները, Աղասի Համբարձումյանը, Գևորգ և Ստեփան Հայրապետյանները, Գարեգին Հարությունյանը, Վարազդատ Հովակիմյանը, Հարություն Հովհաննիսյանը, Հունան և Սարիբեկ Նազարյանները, Ռուստամ և Վաղարշակ Պետրոսյանները, Գաբրիել և Լյուդվիգ Սարգսյանները։ Նրանք համայնացրել են իրենց շնչապատկան հողը, խոշոր եղջերավոր անասունները, արորն ու գութանը և սերմացուն։ Ընդամենը 24 զույգ եզ, 6 գութան, 3 արոր, 8 սայլ։ Ամբողջ ունեցվածքի արժեքը գընահատվել է 6.800 ռուբլի։

Ռոտք դնելով նոր կյանքի ուղին, նորադուզցիները սկսեցին մաքառել հաղթահարելու իրենց առաջընթացի արգելքները։ Իսկ դրանք քիչ չէին։ Ճիշտ է, կոլտնտեսությունը հետզհետե աճում էր, բայց նրա հակառակորդներն ու թշնամական տարրերը ամեն տեսակի զրպարտանք էին տարածում գյուղացիության մեջ, հրկիզում խոտի դեզերը, մանրացրած ապակի խառնում անասունների կերի հետ։ Թշնամու չարագործություններն ապարդյուն անցան, նորադուզցիները փորձով համոզվեցին, որ ունևոր կյանքին հասնելու միակ ելքը դա Լենինի նշած ուղին է։ Հետագայում նրանք իրենց գյուղատնտեսական արտելը կոչեցին՝ Իլյիչի պատգամներով։

Կոլտնտեսությունը հիմնադրվելուց մի քանի տարի անց նրա մեջ ընդգրկվեցին գյուղի ծխերի 80 տոկոսից ավելին։ Նախկին փոքրիկ հողակտորների փոխարեն՝ ստեղծվեցին լայն տարածություններ՝ մեքենաների աշխատանքի համար հարմար հողամասեր։ Հանրային դաշտերում արդեն հռնդում էին մեքենա-տրակտորային կայանի տրակտորներն ու կոմբայնները, մանգաղին ու գերանդուն փոխարինել էին հնձիչ մեքենաները, շաղացանին՝ շարքացանը։ Արտադրությունից գրեթե դուրս էր մղվել տարեկանը, ըզգալիորեն նվազել գարու ցանքը, որոնց փոխարինել էր արժեքավոր ցորենը։ Հացահատիկավոր կուլտուրաներից բացի, կոլտնտեսությունը մշակում էր ծխախոտ, կաղամբ, ճակնդեղ, ցանովի խոտաբույսեր՝ անասունների համար կերի կայուն բազա ստեղծելու նպատակով։

1940 թվականին Նորադուզի գյուղատնտեսական արտելն ուներ 4000 հեկտար (պետական ակտով ամրացված) հողատարածություն և մի շարք մեքենաներ։ Մի քանի տարում կոլտնտեսությունը բռնեց ունևոր կյանքի ուղին։

Կոլտնտեսության ընդհանուր եկամուտի աճի շնորհիվ կոլտնտեսականների ընտանեկան բյուջեում մեծ չափով ավելացավ հանրային ֆոնդից ստացած դրամական ու մթերային մասը։ Այդ կոլտնտեսականներին հնարավորություն տվեց բարելավել իրենց վիճակը, ձեռնամուխ լինել նոր բարեկարգ բնակարանների կառուցման։ Աշխատավոր գյուղացիները սկսել էին վայելել համայնական աշխատանքի պտուղները,

երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը։

## ՆՈՐԱԴՈՒԶԸ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆՈՒՄ

Մի քանի հարյուր նորադուզցի մեկնեցին ռազմաճակատ։ Նրանք մարտնչում էին Մոսկվայի մատույցներում, Լենինգրադի տակ, Ստալինգրադում, Հյուսիսային Կովկասում, հետո մասնակցեցին Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Հարավսլավիայի, Հունգարիայի ազատագրմանը, Բեռլինի հաղթական գրոհին։ Ինչպես բոլոր հայ ռազմիկները, այնպես էլ նորադուզցիները գիտակցում էին, որ Կովկասյան նախալեռներում, Վոլգայի ափին ու Դոնի գետագալարներում, Ուկրաինայի տափաստաններում, Բելոռուսիայի ճահիճներում մարտնչելով գերմանական զավթիչների դեմ, գոտեմարտում են Սովետական Հայաստանի անկախության, հայ ժողովրդի ազատության և երջանկության համար։ Նորադուզցիներից շատերը՝ տանկիստ Ղևոնդ Թովմասյանը, կապիտան Օնիկ Հարությունյանը, եղբայրներ Օհան և Սերգո Օհանյանները, Անդրանիկ Գրիգորյանը (գյուղսովետի նախկին նախագահ) և ուրիշներ հերոսաբար զոհվեցին կռվի դաշտում։ Միլիոնավոր ռազմիկների հետ նրանք նահատակվեցին այն բանի համար, որ մեկընդմիշտ խաղաղության դրոշը ծածանվի հայրենիքի վրա, որ սովետական արևի տակ մարդիկ ազատ ու խաղաղ ապրեն, իրենց որդիներն ու թոռները կրթություն ստանան, հասարակության համար պիտանի մարդիկ դառնան։ Իսկ շատերը (Սուրեն Հայրապետյանը, Ավետիս Պետրոսյանը, Զանիբեկ Հակոբյանը և ուրիշներ) վիրավոր վերադարձան հայրենի գյուղ։ Դրանց թվումն էր Սաշիկ Կարապետյանը։ Նա առաջիններից մեկն էր, որ ոտք էր դրել փոքր հողում (Նովոռոսիյսկի մատույցներում) մասնակցել գիշեր ու ցերեկ տեղի ունեցած արյունալի մարտերին։ Կռվի դաշտից սանիտարները նրան դուրս են բերել գիտակցությունը կորցրած, այդ վիճակում ուղարկել թիկունքային հոսպիտալ։ Ապաքինվելուց հետո հյուծված նա վերադարձել է Նորադուզ։ Համագյուղացիները կոլտնտեսությունը վստահել են Կարապետյանին, նրան ընտրել իրենց նախագահ։ Եվ ահա արդեն 20 տարուց ավելի է, ինչ նա ղեկավարում է Իլյիչի պատգամներով կոլտնտեսությունը, որն իր ցուցանիշներով օրինակելի է ոչ միայն Կամոյի շրջանում, այլ հանրապետությունում։ Երկարամյա, անբասիր աշխատանքի, հանրային դաշտերից բարձր բերք ստանալու համար Ս. Կարապետյանին շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում։

Հայրենիքին, սովետական իշխանությանը, կոլտնտեսային կարգերին սպառնացող այդ վտանգի պահին պայքարի ելան բոլոր նորադուզցիները՝ ամեն ինչ ռազմաճակատին, ամեն ինչ հաղթանակի համար նշանաբանով։ Պատերազմի դաշտ գնացողներին փոխարինեցին ծերերը, կանայք ու պատանիները, որոնք իրենց աշխատանքային սխրանքներով կոփում էին հաղթանակը ռազմաճակատում։ Այդ ծանր տարիներին, 1942 թ. ձմռանը կանայք բահ ու բրիչներով փոխեցին Գավառագետի հունը, չորացրին ավելի քան 250 հեկտար ճահիճ, որը դարձավ կոլտնտեսության ամենաբերրի հողային զանգվածը։ Ծերունիներն ու պատանիներն էին վարում ու ցանում արտերը, իսկ կանայք մանգաղով ու գերանդիով հունձ անում, դիզում։ Մինչև այսօր էլ չեն մոռացվում Պարգիկ Ասոյանի, Սիրուն Ասատրյանի (որոնք հետագայում արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման) նվիրական գործերը, հիշում Արաքսյա Կարապետյանի աշխատանքային սխրանքները։ Պատերազմի տարիներին կոլտնտեսությունը Կարմիր բանակի ֆոնդին հատկացրել է 8.000 ցենտներ հացահատիկ, 2.200 ցենտներ միս։ Կոլտնտեսականները գտնվելով դրկանքի մեջ, այդ նպատակի համար իրենց սուղ միջոցներից հավաքել են ավելի քան մեկուկես միլիոն ռուբլի, նրանք ծանրոցներով ռազմաճակատի մարտիկներին ուղարկել են տաք հագուստ, բրդյա գուլպաներ և այլ իրեր։

## ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

Կոլտնտեսության ավագ հաշվապահ Թ. Հովհաննիսյանը շատ թվեր գիտի անգիր, բայց երբ նրան դիմում ես գյուղատնտեսական արտելին վերաբերող առօրյա հարցերով, նա առանց համրիչի օգնության քեզ չի պատասխանում։

— Արտելի հողերի տարածությունը



5.300 հեկտար է,— ասում է նա,— որից վարելահող մոտ 2.400 հեկտար։

Բայց կարևորը ոչ միայն այդպիսի ընդարձակ (Հայաստանի պայմաններում) հողատարածություն ունենալն է, այլ հողագործությունը կուլտուրական ձևով վարելը։ Դրա համար կոլտնտեսությունը ստեղծել է իր արտադրական տեխնիկական բազան. մեքենայական պարկն ունի 16 տրակտոր, 6 կոմբայն, 21 ավտոմեքենա, բազմատեսակ ու բազմաթիվ գյուղատնտեսական մեքենաներ։ Կառուցված է մեքենաների վերանորոգման արհեստանոց, որն ունի խառատի հաստոց, էլեկտրազոդիչ, հյուսնոց, դարբնոց, էլեկտրասղոցարան։ Կոլտնտեսությունն ունի 2 էլեկտրաաղաց, որից մեկը՝ անասունների կերը մանրացնելու համար։ Կառուցվել են բազմաթիվ արտադրական օբյեկտներ։ Էլեկտրիֆիկացվել ու մեքենայացվել են արտադրական շատ պրոցեսներ՝ գոմաղբը գոմերից դուրս հանելը, սերմի զտելը, ոչխարի խուզը, բրդի ու ծղոտի հակավորումը և այլն։ Անցյալ տարի գյուղում ծախսված 1,2 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիայից 720 հազարը օգտագործվել է արտադրական նպատակներով։ Հանրային հողատարածություններից ոռոգվում է 250 հեկտար, որն օգտագործվում է ծխախոտ ու բանջարա-բոստանային կուլտուրաներ մշակելու համար։ Վերջին տարիներին տարեկան միջին հաշվով դաշտ է փոխադրվել 500 տոննա հանքային, 4.000—4.500 տոննա տեղական պարարտանյութ. կոլտնտեսությունում լրիվին մեքենայացման է ենթարկված վարը, հասկավոր կուլտուրաների ցանքն ու բերքահավաքը, խոտհունձը, շարահերկ կուլտուրաների միջշարային տարածությունների մշակումը։ Այդ ամենը նպաստել են հանրային դաշտերի բերքատվության բարձրացման, անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը։

Բայց ամենահիմնականը աշխատանքի ճիշտ կազմակերպումն է, կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների ազնիվ ու նվիրական աշխատանքը, վարձատրության առաջավոր ձևերի կիրառումը։ Մարդկանց նյութական ու բարոյական խրախուսման, վարձատրության պարգև-հավելման մեթոդի կիրառման շնորհիվ նույնիսկ դաշտային աշխատանքի ամենաեռուն ժամանակաշրջանում կոլտնտեսությունը աշխատող ձեռքերի պակաս չի զգում։ Յուրաքանչյուրը ձգտում է մասնակցել խոտհունձին, որովհետև հնձի առաջադրանքը 100 տոկոսով կատարելիս, հավաքված խոտի 10 տոկոսը հատկացվում է կոլտնտեսականին։ Նույնանման կարգ է սահմանված նաև արտադրության մյուս ճյուղերում։ Երանուհի Աթեյանը անցյալ տարի խնամել է 14 կով, յուրաքանչյուրից կթել 2.041 կգ կաթ։ Հիմնական վարձատրությունից բացի, նա լրացուցիչ ստացել է 3.200 կգ կաթ։ Դուխիկ Աթեյանն իր խնամած յուրաքանչյուր կովից ստացել է 2.167 կգ կաթ։ Դրա համար պարգև-հավելում է ստացել 3.724 կգ կաթ։ Թռչնաբուծական ֆերմայում աշխատող Թամարա Սիմոնյանն իր տարվա առաջադրանքը 130 տոկոսով կատարելու համար լրացուցիչ վարձատրություն է ստացել 4000 ձու և 80 կգ մսի արժեքը։

Կոլտնտեսությունում աճել են օրինակելի ծխախոտագործներ, բարձր բերքի վարպետներ։ Եթե քառասնական թվականներին հեկտարից միջինը ստացվել է 4—5 ցենտներ բերք, ապա անցյալ տարի Սիրուն Կակոյանի ղեկավարած օղակը այն հասցրեց 23,4, իսկ Վերգուշ Ալոյանի օղակը՝ 20 ցենտների։ Միայն ծխախոտագործությունից կոլտնտեսությունն ստացել է 271.000 ռուբլու եկամուտ։

Գովեստի է արժանի մեխանիզատոր Վաչական Բադոյանը։ Նա տրակտորիստ է, միաժամանակ վարում է կոմբայնը, իսկ եթե հարկ է լինում, գործի է դնում նաև անձրևացնցուղ սարքը։ Իր գործին հմտորեն է տիրապետում մեխանիզատոր Վաղարշակ Սիմոնյանը։ Գովասանքի է արժանի նաև բրիգադավար Շահվալադ Դավթյանը, որը մոտ 200 հեկտար տարածության (գրեթե անջրդի պայմաններում) յուրաքանչյուր հեկտարից ստացել է 12,3 ցենտներ հացահատիկ։ Այսպիսիները շատ են Նորադուզի կոլտնտեսությունում, որոնք աշխատանքը համարելով փառքի և պատվի գործ, ավելացնում են հանրային հարստությունը։ Դրա շնորհիվ է, որ կոլտնտեսությունն անցյալ տարի արտադրել է հացահատիկ՝ 13300 ցենտներ, կաթ՝ 8580, միս՝ 1500, ծխախոտ՝ 1300, բանջարեղեն՝ 2322, բուրդ՝ 130 ցենտներ, ձու՝ մոտ 63000 հատ. դրամական եկամուտ է ստացվել ավելի քան

330 հազար ռուբլի։ Կոլտնտեսության այս տարվա սկզբի հաշվեկշռով ամբողջ ունեցվածքը գնահատվում է 2,386 հազար ռուբլի, 1940 թ. 850 հազար ռուբլու (այն ժամանակվա գներով) դիմաց։

Այստեղ յուրաքանչյուր կոլտնտեսական գիտակցում է, որ կոլտնտեսության հանրային հարստությունը իր բարեկեցության բարձրացման հիմնական աղբյուրն է։ Դրանում նրանք համոզվել են գործնականում։ Այսպես. ծխախոտագործների ամսական միջին վարձատրությունը (մշակման ու բերքահավաքի ժամանակաշրջանում) 100 ռուբլուց անցնում է։ Այն կոլտնտեսականները, կոլտնտեսուհիները, որոնք աշխատում են անասնապահության բնագավառում (մշտական) կամ մեխանիզատորներ են՝ մեկ ու կես, երկու անգամ ավելի են վաստակում։ Մեխանիզատոր Վ. Բադոյանը, որն արտադրական առաջադրանքները կատարում է 140—150 տոկոսով, ամսական ստացել է 320 ռուբլի։ Շատերի ընտանիքները միայն գյուղատնտեսական արտելի ընդհանուր ֆոնդից տարեկան ստանում են 2.500—3.000 ռուբլի։ Դ. Աթեյանի ընտանիքն անցյալ տարի վաստակել է 4.000 իսկ Շ. Այվազյանինը՝ 4.500 ռուբլի։ 1968 թ. կոլտնտեսությունն իր անդամների կատարած աշխատանքի դիմաց որպես վարձատրություն վճարել է 600 հազար ռուբլի։ Բազմաթիվ ընտանիքների առանձին անդամներ մշտական կամ սեզոնային աշխատանք են կատարում գյուղից դուրս, հիմնարկ-ձեռնարկություններում և լրացուցիչ եկամուտ բերում ընտանիքին։

## ԱՆՀԵՏԱՑԵԼ Է ՀԻՆԸ

Վերջին երկու տասնամյակում լրիվին փոխվել է Նորադուզի տեսքը։

— Բոլոր գյուղացիները,— ասում է գյուղսովետի նախագահ ընկ. Ղևոնդ Ղազարյանը,— կառուցել են նոր, հարմարավետ բնակարաններ, գյուղում կառուցվել է բաղնիք, կենցաղ-սպասարկման տաղավար, ջրմուղ։ Գործում են մանկապարտեզ, երկու դպրոց և հիվանդանոց։ Կա հացի փուռ, ճաշարան, ունիվերմագ և մթերային խանութ։ Ըստեղծվել է այն ամենը, ինչ անհրաժեշտ է բնակչության համար։

Իմ ընտրությամբ ընկ. Ղազարյանի հետ մտանք առաջին իսկ հանդիպած նորակառույց տունը։ Այդ Վ. Ստեփանյանի բնակարանն էր՝ բաղկացած երեք սենյակից՝ իր հարմարություններով։ Ստեփանյանը բակում խոտ էր դիզում, իսկ կինը, որ երկար տարիներ եղել է կթվորուհի, կարգի էր բերում սենյակը։ Նոր էր սկսվել զրույցս Պայծառի հետ, երբ ներս մտավ ամուսինն ու մեզ հրավիրեց սեղանի շուրջը։

— Ունենք կահույք,— ասում է Ստեփանյանը, գազօջախ, հեռուստացույց, ռադիոընդունիչ, լվացքի մեքենա...

— Եվ այդ ամենը,— լրացնում է Պայծառը,— հիմնականում գնել ենք կոլտնտեսությունից ստացած միջոցներով։

Վ. Ստեփանյանի ընտանիքը եզակի չէ Նորադուզում, գրեթե բոլորն ունեն ռադիոընդունիչ, 400 ընտանիք՝ հեռուստացույց, ծխերի 50 տոկոսը՝ հեղուկ գազօջախներ։ Դաշնամուրն էլ զարդի, երաժշտության կլասիկների հմայիչ մեղեդիների ուսուցման ու կատարման միջոց է դարձել գյուղում, որի բնակիչները ոչ վաղ անցյալում նույնիսկ չէին երազում այդ մասին։ Կոլտնտեսականներն ունեն անձնական 18 ավտոմեքենա և մոտ 50 մոտոցիկլետ։ Յուրաքանչյուր ընտանիք ստանում է թերթ ու ամսագիր։ Լույս է տեսնում «Իլյիչի պատգամներով» կոլտնտեսային բազմատիրաժ թերթը։ Առաջ մարդիկ այն համոզմունքին էին, որ Նորադուզում պտղատու ծառեր չեն աճի, բայց այժմ այդ կարծիքը փարատված է։ Այդ բանին մեծ չափով նպաստեց Հայրենական մեծ պատերազմի մասնակից, գյուղսովետի նախագահ Ղ. Ղազարյանի նախաձեռնությունը։ Մի քանի տարի առաջ նա Կրասնոդարի երկրամասի Ստարոմինսկայայից բերեց մեծ քանակությամբ խնձորի ու տանձի տնկիներ, որոնք հիանալի աճել են կոլտնտեսականների պարտեզներում ու տվել են առաջին պտուղները։

Կոլտնտեսային գյուղում տեղի ունեցած ամենանշանակալից փոփոխություններից մեկը՝ նոր մասնագիտությունների երևան գալն է։ Դրանք տրակտորիստներ են, կոմբայնավարներ, զոոտեխնիկներ, ավտովարորդներ, խառատներ, զոդողներ, անասնաբույժներ, գյուղատնտեսներ։ Նորադուզում դրանց թիվը 50-ից անցնում է։ Գյուղում կան 40 մանկավարժ, երկու բժիշկ, 6 բուժքույր։ Տարբեր բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 50 նորադուզցիներ, երկուսը գիտությունների թեկնածու են։ Հղի կանայք ծննդաբերությունից առաջ և հետո ըստանում են 56-ական օր արձակուրդ, ավելի քան 300 կոլտնտեսական ստանում են կենսաթոշակ։ Նորադուզի օրինակը վառ կերպով վկայում է, որ իրագործվում է Վ. Ի. Լենինի պատգամը, հետզհետե անհետանում է քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունը։

Նորադուզում կոմունիստական բջիջ հիմնադրել է Գրիգոր Դադիկյանը 1919 թվականին, որին 1920 թ. դաշնակ-մաուզերիստները խոշտանգել ու գնդակահարել են։ Բայց այդ բջիջն այսօր դարձել է գաղափարապես կոփված 85 կոմունիստների մի կուռ կազմակերպություն։

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ԱՌԱՋԻՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Կոլտնտեսության կուսկոմիտեն, (քարտուղար Վ. Գրիգորյան) կոմունիստները, գլխավորելով ողջ կազմակերպական-քաղաքական աշխատանքը, օգնում են արտելի ղեկավարությանը ճիշտ ընտրել և դասավորել կադրերին, լրիվ կարողությամբ օգտագործել մեքենա-տրակտորային պարկը, առավել խելացի գործադրել մարդկանց նյութական ու բարոյական խրախուսման ձևերը։ Այստեղ կուսակցական կազմակերպությունը աշխատավորական զանգվածներին պարզաբանելով ՍՄԿԿ քաղաքականությունն ու որոշումները, միաժամանակ բոլորի ուժերը մոբիլիզացնում է արտադրական առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։ Աշխատանքի բոլոր, հատկապես վճռական բնագավառներում կոմունիստները ցույց են տալիս լավագույն օրինակներ։

Շատ կոլտնտեսություններում խուսափում են կազմակերպել թռչնաբուծական ֆերմա՝ պատճառաբանելով, թե այն վնասաբեր է։ Բայց Նորադուզի օրինակը ցույց է տալիս, որ այդ պատճառաբանությունը հիմք չունի։ Այստեղ կոմունիստ Սիրուն Գրիգորյանի ղեկավարած թռչնաբուծական ֆերման ունի ավելի քան 5.000 ածան հավ, երկու թխսամեքենա (ինկուբատոր), հիանալի հավանոցներ։ Թռչունների կերակրելն ու խնամքը լավ կազմակերպելու շնորհիվ անցյալ տարի ֆերման արտադրել է մոտ 630 հազար ձու, ավելի քան 120 ցենտներ թռչունի միս։ Ֆերմայի ընդհանուր եկամուտը եղել է 65 հազար ռուբլի, որից զուտ շահույթ՝ 14 հազար ռուբլի։ Սիրունը ոչ միայն արտադրության խելացի կազմակերպիչ է ու հըմուտ տնտեսվար, այլև հիանալի մայր։ Նրա ամուսինը զոհվել է Հայրենական մեծ պատերազմում։ Հոգ տանելով որդու դաստիարակության ու կրթության մասին, նա ամեն ջանք գործադրել է, որպեսզի տղան՝ Գուրգենը ստանա բարձրագույն մասնագիտական կրթություն։ Այժմ Գ. Գրիգորյանը Նորադուզի անասնաբուժական կետի վարիչն է։ Սիրունը մի այլ առավելություն էլ ունի։ Նա սովորել է ավտոմեքենա վարելու մասնագիտությունը և երբ հարկ է լինում, ինքն է նստում ղեկի մոտ։ Հայրենիքը բարձր գնահատելով Սիրուն Գրիգորյանի մատուցած ծառայությունը, նրա կուրծքը զարդարել է աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

Կոմունիստ Շահուն Հակոբյանը ղեկավարում է մանր եղջերավոր անասունների ֆերման, որն ունի մոտ 5500 ոչխար։ Գիտության նվաճումները և արտադրության առաջավորների փորձը ոչխարաբուծության մեջ ներդնելու շնորհիվ, այս տարի յուրաքանչյուր 100 մաքից ստացվել ու պահպանվել է 81 գառ, իսկ ամեն մի ոչխարից խուզվել է 2,7 կգ բուրդ։ Ֆերմայի արտադրած մսի ու բրդի ինքնարժեքը պետական գնման գնից ցածր է։

Կոլտնտեսությունում համեստ գործ է կատարում կոմունիստ Լևոն Ստեփանյանը։ Նա հորթապահ է և մեծ պատասխանատվություն ցուցաբերելով իրեն վստահված գործի նկատմամբ, բոլոր ջանքերը գործադրում է մատղաշների խնամքն ու արոտը լավ կազմակերպելու համար, որի շնորհիվ յուրաքանչյուր հորթի օրվա քաշաճը հասնում է 800 գրամի։ Անասնապահության բնագավառում առաջավոր լինելու և իր խնամած կովերի կաթնատվության առաջադրանքը գերակատարելու համար կոմունիստ Արաքսյա Սարգսյանը պարգևատրվել է Լենինի շքանշանով։ Ջանասիրաբար է գործում կոմունիստ Աշոտ Նավոյանը, որի ղեկավարած ֆերմայի նախիրներում անասունների գլխաքանակը հասնում է մոտ 1.500-ի։

Կուսակցական կոմիտեի քարտուղարը գովեստով է խոսում կոմունիստ մեխանիզատոր Իսաբեկ Թովմասյանի մասին, որն անցյալում եղել է տրակտորիստ: Տարեցտարի կատարելագործվելով իր մասնագիտության մեջ, նա այժմ վարում է տեխնիկ-մեխանիկի պաշտոն: Թովմասյանն իր հմտությունն ու գիտելիքները գործադրում է, որպեսզի կոլտնտեսության մեքենայական պարկն անխափան աշխատի:

Կուսակցական կոմիտեն, տեղամասային կուսկազմակերպությունները լայն աշխատանք են ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նախապատրաստվելու ուղղությամբ: Լենինյան թեմաներով հասարակության համար դասախոսություններ են կարդում «Գիտելիք» ընկերության անդամները:

Դաշտավարական բրիգադներում, անասնապահական ֆերմաներում ու մեքենայական պարկում ծավալվել է սոցիալիստական մրցությունը՝ արտադրական բարձր ցուցանիշներով Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը դիմավորելու համար: Այդ մրցությունում կոմունիստներն ապահովելով իրենց ավանգարդային դերը, լավագույն օրինակ են ցույց տալիս արտադրական առաջադրանքները կատարելու գործում: Կոլտնտեսությունը գերակատարել է մսի, կաթի վաճառքի կիսամյա, բրդի վաճառքի տարեկան պլանը: Ձնայած այս տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, 1760-ի փոխարեն կուտակված է 2111 տոննա կորնգան, գերակատարված են նաև կերի մյուս տեսակների կուտակման առաջադրանքները:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի միլիոնավոր գյուղացիների հետ նորադուզցիք այսպես են իրագործում Լենինի պատգամները:

* * *

Մարքսիզմ-լենինիզմի հակառակորդները նենգափոխելով մեր երկրի կոլտնտեսային կարգերի նվաճումները, փորձում են ծուռ հայելու մեջ ցույց տալ այն: Իրենց հակակոմունիստական պրոպագանդայում նրանք կաշվից դուրս են գալիս ապացուցելու, որ իբր թե մեր գյուղատնտեսության համայնավարական սիստեմն իրեն չի արդարացնում: Նորադուզի կոլտնտեսականների գործերն ու ապրելակերպը ցույց է տալիս հակառակը:

Այն վառ կերպով վկայում է, որ սովետական գյուղը դուրս է եկել աղքատությունից ու խավարից և բռնել տնտեսական ու կուլտուրական առաջընթացի ճանապարհը: Բայց Նորադուզը եզակի չէ մեր իրականությունում, այդպիսիք բյուր են:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Օգոստոս, Նորադուզ

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

Սովետական իշխանության տարիներին հսկայական առաջընթաց են ապրել գիտությունը, տեխնիկան: Առանց դրա դժվար էր պատկերացնել ժողովրդական տնտեսության, մշակույթի այն հումկու վերելքը, որ ապրեց սովետական ժողովուրդը կեսդարյա պատմության ընթացքում: Գիտությունն այսօր միայն մի խումբ գիտնականների զբաղմունքը չէ, այն դարձել է ժողովրդական զանգվածների սեփականությունը:

Դժվար է գերագնահատել այն վիթխարի նշանակությունը, այն մեծ դերը, որ ունի Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի գիտատեխնիկական ինֆորմացիայի կոմիտեի և տեխնիկատնտեսական հետազոտությունների գիտահետազոտական ինստիտուտի պարբերականը՝ «Գիտություն և տեխնիկա» ամսագիրը: Այն փաստը, որ ինֆորմացիոն ժողովածուն տարիների ընթացքում վեր է ածվել մասսայական հանդեսի ու լայնորեն տարածվել, վկայում է, որ իրոք աճել է մեր ժողովրդի հետաքրքրասիրությունը գիտության ու տեխնիկայի նկատմամբ:

Գիտական հայտնագործությունների, հայրենական և արտասահմանյան տեխնիկայի նորույթների մասին լուրերն ու կարճ հաղորդումները, ֆիզիկայի, աստղագիտության, երկրագործության, բժշկության ու ճարտարապետության և կյանքի այլ բնագավառներին վերաբերող պրոբլեմատիկ հոդվածները պարբերականը դարձրել են գիտության աշխարհը մարդկանց մոտեցնող, նրանց այդ աշխարհին հաղորդակից դարձնող մի կատարյալ կամուրջ:

Արևմտյան քաղաքագետները խոստովանել են, որ սոցիալիզմի ու կապիտալիզմի մրցության մեջ կհաղթի նա, ով ժողովրդին ավելի մեծ հնարավորություններ ունի գիտությամբ զինելու: Այդ քաղաքագետները չեն թաքցնում իրենց տագնապը, թե այսօր գիտական կադրերի պատրաստման, գիտությունը լայն զանգվածների սեփականությունը դարձնելու գործում առջևից ընթանում է սոցիալիզմը:

Եվ իրոք, այժմ գիտության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ կիբեռնետիկան ու էլեկտրոնիկան, տիեզերագիտությունն ու օվկիանոսաբանությունը, հետաքրքրում են հազարների, միլիոնների, և ճիշտ է վարվում «Գիտություն և տեխնիկա» պարբերականը՝ այդքան մեծ տեղ հատկացնելով նշված բնագավառներին: Հետաքրքրական մտքեր է հարուցում պարբերականի Տիեզերական բուսաբուծություն հոդվածը (№ 9, 1968 թ.), որի հեղինակն է գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Մ. Բաբախանյանը: Պատմելով տիեզերական բուսաբուծության զարգացման հեռանկարների մասին՝ հեղինակը հանգամանորեն վերլուծում է դրա նշանակությունը տիեզերագնացության զարգացման համար: Որքան հեռանում են, երկարում միջմոլորակային թռիչքների տարածությունները, այնքան մեծանում է տիեզերանավի բեռը (սնունդ, ջուր, թթվածին), ընդհանրապես և դրա ոչ օգտակար մասը՝ մանավորապես: Եվ այստեղ օգնության է հասնում բուսաբուծությունը՝ ջանալով ստեղծել տիեզերագնացներին սնունդ և օդ մատակարարող յուրահատուկ ֆաբրիկաներ: Ուրախալի է, որ գիտության վաղվա օրվան նվիրված այդ հետաքրքրական հոդվածը միաժամանակ ընթերցողներին է ներկայացնում այն մեծ գործը, որն արդեն այսօր տարվում է Հայաստանում: Հիդրոպոնիկա, աէրոպոնիկա... ահա բուսաբուծության այն ձևերը, որոնք հեռավոր թռիչքներում «կընկերակցեն» տիեզերագնացին: Նման նյութերի նշանակությունը չի կարելի սահմանափակել միայն ճանաչողական շրջանակներում: Դրանք միաժամանակ թև են տալիս մարդու երևակայությանը, ծնում նոր մտքեր, առիթ դառնում նոր մտահղացումների:

Պարբերականի էջերում հաճախ կարելի է հանդիպել ինչպես հանրապետության, այնպես էլ Միության ու արտասահմանյան գիտնականների ուսումնասիրություններին: Կալիֆոռնիայի համալսարանի պրոֆեսոր Ջ. Պիմենթելը պատմում է այն նվաճումների մասին, որոնք ձեռք են բերվել լազերների ուղղությամբ (Քիմիական լազերներ, № 8, 1968 թ.): Լազերները գիտա-տեխնիկական վերջին նվաճումներից են և ունեն զարգացման լայն հեռանկարներ: Դրանք հսկայական հնարավորություններ են բացում աստղագիտության բնագավառում, կարող են դառնալ տիեզերագնացի օգնականը, հետազոտել քիմիական ռեակցիան: Ուստի և թե՛ սովետական և թե՛ աշխարհի շատ ու շատ գիտնականներ ջանում են այնպես անել, որ լազերի հզորությունն ավելի մեծ չափով ու լայնորեն կիրառվի գիտական լաբորատորիաներում, տնտեսության մեջ:

Հոդվածը բովանդակում է ո՛չ միայն պրոֆեսոր Պիմենթելի անձնական ուսումնասիրություններն ու մտքերը, այլև հետաքրքրական տեղեկություններ տալիս լազերի ծագման, նրա էության մասին: Սակայն ամսագիրը շահած կլիներ, եթե, խոսք բացելով լազերի մասին, իր էջերում պատմեր նաև սովետական (ինչպես և հայ) ֆիզիկոսների հաջողությունների, հատկապես Լենինյան ու Նոբելյան մրցանակների դափնեկիր Նիկոլայ Բասովի և նրա լաբորատորիայի մասին, որին, թերևս, պատկանում է և լազերյան վիթխարի էներգիայի ստացման նախապատվությունը:

Բազմազան են ամսագրի նյութերը. դրանք վերաբերում են գիտական տարբեր հարցերի, տարբեր պրոբլեմների: Խմբագրական կոլեգիան ջանում է որքան հնարավոր է շատ բնագավառներ ընդգրկել, բազմազան խնդիրների մասին արտահայտվել: Եվ պատահական չէ, որ լազերային էներգիայի մասին գրված գրավիչ ու հետաքրքրական հոդվածներից հետո ընթերցողը նույն կլանվածությամբ կարդում է Պահպանենք տղամարդկանց (№ 8, 1968 թ.) հանրամատչելի հոդվածը:

Տնտեսագիտության դոկտոր Բ. Ուռլանիսի այդ հոդվածը բովանդակում է թե՛ տնտեսագիտական, թե՛ սոցիոլոգիական, թե՛ բժշկական վերլուծություն: Պայքար ալկոհոլի և նիկոտինի, առողջությունը քայքայող ամեն բանի դեմ: Ահա հիմնական հարցերն այս հոդվածի, որը լի է հեղինակի հետաքրքրական խորհուրդներով ու խոհերով: Պատմելով աշխարհում տղամարդկանց ու կանանց թվի տարբերության մասին, նա առաջարկում է պայքար ծավալել տղամարդկանց մահացության բարձր տոկոսի դեմ: Բնակավայրերում ստեղծված կոնսուլտացիաները պետք է ո՛չ միայն խորհուրդներ տան այցելուներին, այլև զբաղվեն պրոֆիլակտիկայով, ուսումնասիրեն հատկապես տղամարդկանց, երիտասարդների մասնագիտական կարողությունները: Թերևս այս հոդվածը տպագրելուց հետո, պարբերականը կարող էր կոնկրետ գործի անցնել, դիմելով հանրապետության առողջապահության օրգաններին՝ իրենց խոսքն ասելու այս ուղղությամբ: Քանի որ հարցի կարևորությունը միայն առանձին մարդկանց առողջությանը չի վերաբերում, այլ՝ ողջ ժողովրդին, տնտեսության մեջ ուժերի ճիշտ տեղաբաշխմանը, տղամարդու մտավոր ու ֆիզիկական ներդաշնակ զարգացմանը՝ թե՛ արտադրության մեջ և թե՛ ընտանիքում: Վատ չէր լինի, եթե բուժական օրգաններն ուսումնասիրեին և խորհուրդներ տային հանրակրթական դպրոցների բարձր դասարանցիներին, բուհերի

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԾԵՓԱԳՈՐԾԻ ՕԳՆԱԿԱՆԸ

*Գարնանը Լեյպցիգի միջազգային տոնավաճառում ոսկե մեդալ շահեց* ATM—30S *մակնիշի սվաղող ագրեգատը, որը պատրաստված է Լեհաստանի Պողնան քաղաքում: Այն հնարավորություն է տալիս արագ ավարտելու կառուցվող շենքի պատերի վերջնական հարդարումը: 3 վայրկյանում պատրաստում է 150 լիտր սվաղի շաղախ, մաքրում և հատուկ պոմպի միջոցով մինչև հարյուր մետր հեռավորության և 30 մետր բարձրության վրա տեղափոխում այն:*

## ՔԱՄԱԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ

*Աշխարհի բոլոր տեսակի էլեկտրակայանները գտնվում են Երկրի վրա: Սակայն սովետական մի խումբ ինժեներների կողմից նախագծվող նոր կայանը ամուր հենարան չի ունենալու: Այն կախվելու է ատմոսֆերայի և ստրատոսֆերայի սահմանագծում, ուր անդադար փչում են քամիները, 100 մետր երկարությամբ աէրոստատի օգնությամբ կայանը կհասցվի 10—11 հազար մետր բարձրության վրա և դրա միջոցով էլ կպահվի այնտեղ: Նախնական հաշվարկներով էներգիայի այս նոր կայանի ընդհանուր քաշը կլինի 30 տոննա: Նման ծանրությունը հնարավոր չէ պահել պողպատյա ճոպանով, այն կկտրվի ծանրությունից: Այդ նպատակով հարկ կլինի ունենալ առավել ամուր ու շատ թեթև նյութ: Ընդ որում, և՛ ճոպանը, և՛ կաբելը պաշտպանված պետք է լինեն ամպրոպից ու սառցակալումից:*

## ԱՆԺԱՊԱՎԵՆ ԳՐԱՄԵՔԵՆԱ

*Անժապավեն գրամեքենան այնքան փոքր է, որ տեղավորվում է գծագրող սարքի քանոնի վրա, ունի 60 նիշ՝ տառ, թիվ և նշաններ: Մեքենան տպագրում է գծագրերում և աղյուսակներում եղած նշումները, հեշտ ու հարմար է օգտագործման համար: Անժապավեն գրամեքենայի համար ստեղծված է հատուկ ներկ, իսկ նիշերի մաքրման համար քսայուղ: Այդ նոր գրամեքենան ստեղծվել է համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում, որի արտադրությունը հանձնարարված է Բլագովեշչենսկի* «Амур электроприбор» *գործարանին:*

## ՈՒՆԻԿԱԼ ՎԻՐԱՀԱՏՈՒԹՅՈՒՆ

*Սոֆիայի բժշկական բարձրագույն ինստիտուտի օպերատիվ խիրուրգիայի ամբիոնի կոլեկտիվը պրոֆեսոր Ռ. Ռայնովի գլխավորությամբ հինգ տարի է, ինչ զբաղվում է շան կերակրափողի պատվաստմամբ: Վերջին երկու տարում այդ բնագավառում գիտնականները հասել են լուրջ հաջողության: Մի շուն մեկ տարուց ավելի է, ինչ ապրում է պատվաստված կերակրափողով: Ընդ որում հյուսվածքապատվաստ կատարելու համար կերակրափողը պահածոյացվել է վիրահատությունից 15 օր առաջ: Կենդանին իրեն նորմալ է զգում:*

## ԻՆՉՈ՞Ւ Է ԵՐԿԻՐԸ ՑՆՑՎՈՒՄ

*Մեր մոլորակի պտույտի և երկրաշարժի միջև կապ կա՞ արդյոք: Կանադայի գիտնականներ Լ. Մանզինը և Դ. Սմայլը, զբաղվելով Երկրի շարժման ուսումնասիրությամբ, գտան, որ Երկրի բևեռների շարժումը հաճախ փոփոխվում է մեծ երկրաշարժերից 5—20 օր առաջ: Նրանց կարծիքով, այդ երևույթի բացահայտումը կօգնի հետագայում կարգավորելու երկրաշարժերը: Կոլումբիայի համալսարանից մի այլ հիպոթեզ է առաջ քաշում դոկտոր Ջեյմսը: Նրա կարծիքով մեր մոլորակի շարժման առանցքի տատանումները ո՛չ թե հետևանք, այլ երկրաշարժերի պատճառ են: Նա գտնում է նաև, որ այդ տատանումներն առաջացնում են կլիմայի փոփոխություն, լեռնագոյացումներ և այլն: Բայց նա անպատասխան է թողնում այն հարցը, թե ինչից են առաջանում առանցքի տատանումները:*

## ԻՐ ՏԵՍԱԿԻ ՄԵՋ ՄԻԱԿԸ

*ՍՍՀՄ մետաղահատ հաստոցների փորձարարական գիտա-հետազոտական ինստիտուտի մասնագետները և* «Станконструкция» *գործարանի կոլեկտիվը ստեղծել են մի բացառիկ խառատային կիսաավտոմատ: Այն ունի հատման արագության կարգավորիչ և ծրագրային կառավարում: Գործիքի փոխարինումը նույնպես կատարվում է առանց բանվորի միջամտության: Կիսաավտոմատի արտադրողականությունը 4—5 անգամ բարձր է խառատային հաստոցների արտադրողականությունից:*